ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

5

ՄԱՅԻՍ

ԵՐԵՎԱՆ 1959

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 5
ՄԱՅԻՍ
1959 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVI
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ



### ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԱՌԱՋԱՎՈՐ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



---

## СОДЕРЖАНИЕ






11-59

# ՈԳԵՎՈՐԻՉ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐ, ՄԵԾ ԱՆԵԼԻՔՆԵՐ

*Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թթ. յոթնամյա պլանը մեր երկրի աշխատավորների շրջանում առաջ է բերել քաղաքական և աշխատանքային խանդավառության մեծ ալիք։ Օրըստօրե երկրում ծավալվում է համաժողովրդական սոցիալիստական մրցությունը կոմունիստական շինարարության՝ պարտիայի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար։ Մեր երկրի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունն ու ինտելիգենցիան հանդես են գալիս նոր նախաձեռնություններով, գտնում աշխատանքի նոր ձևեր ու մեթոդներ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերն է՛լ ավելի արագ զարգացնելու, կոմունիստական աշխատանքի բրիգադայի, հարվածային կոլեկտիվի կոչման արժանանալու համար։*

*1959 թվականի առաջին եռամսյակի պետական պլանները կատարելու մասին ՍՍՌՄ Մինիստրների Սովետին առընթեր Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունում նշված է, որ ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման ընթացիկ տարվա առաջին եռամսյակի պլանը կատարված է 105 տոկոսով, 1958 թվականի առաջին եռամսյակի համեմատությամբ արդյունաբերական արտադրանքի ծավալը մեծացել է 11 տոկոսով։ Սոցիալիստական արդյունաբերությունը և, հատկապես, ծանր արդյունաբերությունը զարգանում է այնպիսի տեմպերով, ինչպիսին չի եղել, չկա և չի լինի կապիտալիստական ոչ մի երկրում։ Դա սոցիալիստական սիստեմի առավելության արտահայտությունն է կապիտալիստականի նկատմամբ։*

*Միայն 1959 թվականի առաջին եռամսյակում ՍՍՌՄ-ում արտադրվել է այնքան չուգուն, որքան ամբողջ 1934 թվականի ընթացքում, պողպատ և գլանվածք այնքան, ինչքան 1936 թվականին, նավթ՝ այնքան, ինչքան 1938 թվականին։ Պլանից ավելի են արտադրվել լայն սպառման ապրանքները։ 1958 թվականի առաջին եռամսյակի համեմատությամբ ավելի է արտադրվել գործվածք՝ 66 միլիոն քառակուսի մետր, կաշվե կոշկեղեն՝ 8 միլիոն զույգ, շաքարավազ՝ 426 հազար տոննա։*

*Գյուղի աշխատավորները նույնպես ունեն խոշոր հաջողություններ։ Ոգևորված գյուղատնտեսական վերելքի հոյակապ հեռանկարներով, նրանք է՛լ ավելի կազմակերպված սկսեցին գարնան գյուղատնտեսական աշխատանքները և լարված պայքար են ծավալել ստանձնած պարտավորությունները պատվով կատարելու համար։*

*Անասնաբուծական մթերքների պետական ռեսուրսների աճի շնորհիվ 1959 թվականի առաջին եռամսյակում, անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, բնակչությանը ավելի է վաճառվել միս*

և մսեղեն՝ 125 հազար տոննա, յուղ՝ 15,2 հազար տոննա, վաճառվել է 600 հազար տոննա կաթ և կաթնամթերքներ։

Առաջին եռամսյակում զգալիորեն բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության, շինարարության, ինչպես և գյուղատնտեսության մեջ։

Սովետական ժողովուրդը մեծ գոհունակությամբ ընդունեց Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունն այն մասին, որ միութենական բոլոր ռեսպուբլիկաների արդյունաբերությունը, ամբողջությամբ վերցրած, կատարել է համախառն արտադրանքի կարևորագույն տեսակների մեծ մասի թողարկման եռամսյակային պլանը։ Ժողովրդական տնտեսության խորհուրդներին ենթակա ձեռնարկություններն արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման եռամսյակային պլանը կատարել են 105 տոկոսով, ընդ սմին առաջին եռամսյակի պլանը կատարել և գերակատարել են բոլոր ժողտնտխորհները։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու համար ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ լավագույն արդյունքների հասավ նաև մեր ռեսպուբլիկայի աշխատավորությունը։ Հայկական ՍՍՌ արդյունաբերության աշխատողները ժամկետից շուտ կատարեցին համախառն արտադրանքի 1959 թվականի առաջին եռամսյակի պլանը, տալով երկրին մի քանի տասնյակ միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ 1959 թվականի առաջին եռամսյակում արդյունաբերական արտադրանքի ծավալը, 1958 թվականի առաջին եռամսյակի համեմատությամբ, մեծացել է 10 տոկոսով։

Աշխատանքային ավելի բարձր ցուցանիշների են հասել Երևանի Ս. Մ. Կիրովի, Ձերժինսկու անվան, ալյումինի, հիդրոտուրբինների, կոմպրեսորների գործարանները, Կիրովականի քիմիական կոմբինատի, Զանգեզուրի հանքվարչության և մի շարք այլ ձեռնարկությունների կոլեկտիվները։

Այս տարվա առաջին եռամսյակում հատկապես լավ արդյունքների հասան ռեսպուբլիկայի ժողտնտխորհի Մեքենաշինության և հաստոցաշինության, ինչպես նաև Սննդարդյունաբերության վարչությունները, որոնք նույնպես գերակատարեցին եռամսյակային պլանները։

Յոթնամյակի առաջին տարվա պլանների կատարման և գերակատարման համար ծավալված սոցիալիստական մրցությունը համակել է նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողներին, որոնք հասել են որոշակի հաջողությունների։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը, 1958 թվականի ապրիլի մեկի համեմատությամբ, մինչև 1959 թվականի ապրիլի մեկը ավելացել է 11,1 հազար գլխով։ Նույն ժամակաշրջանում, 1958 թվականի առաջին եռամսյակի համեմատությամբ, կաթի արտադրությունն ավելացավ 6,5 տոկոսով, մսինը՝ 27,7 տոկոսով, ձվինը՝ 22,3 տոկոսով։ Անասնաբուծության մթերքների արտադրության ավելացման գործում լավագույն հաջողությունների են հասել հատկապես Եղեգնաձորի, Կիրովականի, Վեդու և այլ շրջանների մի շարք կոլտնտեսություններ։

Յոթնամյակի առաջին տարվա անցած ամիսների արդյունքները ցույց են տալիս, թե ինչպիսի մեծ ռեզերվներ կան մեր ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, թե ինչպես ՍՄԿԿ XXI համագումարի որոշումները



մեծ ուժ են տալիս և թևավորում մեր ժողովրդին՝ յոթնամյա պլանը 5—6 տարում կատարելու համար։

Հանրագումարի բերելով անցած ամիսների աշխատանքի արդյունքները, յուրաքանչյուր ձեռնարկության, կառույցի, կոլտնտեսության և սովետական տնտեսության կոլեկտիվ, յուրաքանչյուր սկզբնական պարտիական կազմակերպություն պետք է տեսնի նաև անցած ամիսների աշխատանքներում տեղ գտած թերությունները, մշակի և իրագործի միջոցառումներ դրանք վերացնելու, եղած հնարավորությունները ավելի լավ օգտագործելու համար։

Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության առանձին ճյուղեր, առանձին ձեռնարկություններ առաջին եռամսյակում չապահովեցին պետական պլանների կատարումը։ Եռամսյակային պլանը թերակատարեցին ժողտնտխորհի Լեռնահանքային արդյունաբերության և Գունավոր մետալուրգիայի, Մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության վարչությունները։ Ժողտնտխորհի սիստեմի մեջ մտնող ձեռնարկություններից 34-ը չեն կատարել պետական պլանները, երկրին պարտք մնալով 16 միլիոն ռուբլու արտադրանք։

Մի շարք ձեռնարկություններ չապահովեցին արդյունաբերական արտադրանքի որոշ տեսակների պլանների կատարումը։ Առաջին եռամսյակում չկատարվեցին ուժային տրանսֆորմատորների, ժամացույցների, փափուկ կաշվի, կաթնամթերքների, երշիկեղենի և ապրանքների այլ տեսակների արտադրության պլանները։

Այս տարվա առաջին եռամսյակում անբավարար աշխատեցին և չապահովեցին պետական պլանների և իրենց վերցրած սոցիալիստական մրցության պարտավորությունների կատարումը՝ Քաջարանի և Դաստակերտի պղնձամոլիբդենային կոմբինատները, Լենինականի հեծանիվի և ապակու գործարանները, Երևանի Կույբիշևի անվան կահույքի ֆաբրիկան, դպրոցական պիտույքների գործարանը և այլ ձեռնարկություններ։

Այդ ձեռնարկություններում պլանների չկատարման պատճառն այն է, որ ինչպես ռեսպուբլիկայի ժողտնտխորհը, այնպես էլ նրա ճյուղային վարչությունները դեռևս բավարար չափով չեն զբաղվում ետ մնացող ձեռնարկությունների հարցով։ Վերոհիշյալ ձեռնարկությունների ղեկավարները և պարտիական կազմակերպությունները ժամանակին չեն լուծում արտադրության նորմալ ընթացքի խնդիրները։

Պլանների կատարումն ապահովելու առաջին նախապայմանը աշխատանքի արտադրողականության բարձրացումն է։ Սակայն շատ ձեռնարկություններում տեխնիկական պրոգրեսի, նորագույն տեխնիկայի ներդրման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման հարցերը մղված են հետին պլանի վրա։ Այդ է պատճառը, որ 1959 թվականի առաջին եռամսյակում ժողտնտխորհի 10 ճյուղային վարչություններից 5-ը՝ էներգետիկայի, Գունավոր մետալուրգիայի և լեռնաքիմիական, էլեկտրատեխնիկական արդյունաբերության ու սարքաշինության, Շինանյութերի, Անտառային և փայտամշակման արդյունաբերության վարչությունները չկատարեցին աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման վճռական պայմանն է։ Դրա համար անհրաժեշտ է ապահովել ձեռնարկությունների համաչափ աշխատանքը, մեծ ուշադրություն նվիրել նորարարական և ռացիոնալիզատորական աշխատանք-

ների կազմակերպմանը, լայնորեն ուսումնասիրել, ընդհանրացնել և արտա-
դրության մեջ ներդնել առաջավոր փորձը, սարքավորումները և մեխանիզմ-
ները օգտագործել նրանց լրիվ կարողությունների սահմաններում, լրջորեն
զբաղվել բանվորների տեխնիկական ուսուցման կազմակերպման, նրանց
կուլտուրական մակարդակի բարձրացման հարցերով: Աշխատանքի արտա-
դրողականության բարձրացման պլանի կատարումը ամեն մի ձեռնարկու-
թյան, կառույցի ղեկավարների, պարտիական և արհմիութենական կազմա-
կերպությունների առաջնահերթ խնդիրն է: Այդ նպատակին պետք է ուղղված
լինի պարտիական կազմակերպությունների քաղաքական և կազմակերպչա-
կան աշխատանքը:

Ձեռնարկությունների համաչափ աշխատանքն ապահովելու, պետական
պլանները բարձր տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով կատարելու, աշ-
խատանքի արտադրողականությունը բարձրացնելու հետ միասին անհրաժեշտ
է ուշադրության կենտրոնում պահել արտադրանքի որակի և ինքնարժեքի
իջեցման հարցերը: Շատ հաճախ, նույնիսկ առաջավոր համարվող ձեռնար-
կություններում, խախտում են պետական կարգապահությունը և թողարկում
վատորակ ապրանքներ, դրանով իսկ վնասելով ձեռնարկության կոլեկտիվի
հեղինակությանը: Ահա թե ինչու բոլոր ձեռնարկություններում հասարակա-
կան լայն կարծիք պետք է ստեղծել խոտանարարների, արտադրական կար-
գապահությունը խախտողների նկատմամբ:

Արտադրանքի որակի բարելավումը, արտադրության մեջ հումքի ծախ-
սման գործակիցների կրճատումը և, ամենագլխավորը՝ աշխատանքի արտա-
դրողականության բարձրացումը հնարավորություն կտան ապահովել յոթ-
նամյա պլանով նախատեսված արտադրանքի ինքնարժեքի իջեցման առա-
ջադրանքները և վերացնել այդ ուղղությամբ ռեսպուբլիկայի արդյունաբերա-
կան մի շարք ձեռնարկությունների աշխատանքում գոյություն ունեցող խոշոր
թերությունները:

Յոթնամյակում մեր կազմակերպությունների առջև խնդիր է դրված ոչ
միայն ավելացնել արտադրանքի քանակական թողարկումը, այլև ապահովել
բարձր որակի և ցածր ինքնարժեքով ապրանքների թողարկումը: Դա պատ-
վավոր խնդիր է, որի կատարմանը պետք է ուղղված լինեն արդյունաբերու-
թյան աշխատողների բոլոր ջանքերը:

Գոհացուցիչ չեն յոթնամյակի առաջին տարվա անցած ամիսների աշ-
խատանքի արդյունքները կապիտալ ներդրումների պլանների կատարման
ուղղությամբ: Ռեսպուբլիկայի շինարարական կազմակերպությունների ան-
բավարար աշխատանքի հետևանքով խիստ կերպով թերակատարվեցին այդ
պլանները: Ռեսպուբլիկայում յոթնամյակի տարիներին կապիտալ ներդրում-
ները կկազմեն 12,5 միլիարդ ռուբլի: Շինարարական կազմակերպությունները
մտնելով սոցիալիստական մրցության մեջ՝ պարտավորություններ են վերցրել
1959 թվականի կապիտալ ներդրումների պլանը ժամանակին կատարելու,
արտադրական նորակառույց օբյեկտները և բնակելի շենքերը նախատեսված
ժամկետում, իսկ որոշ օբյեկտներ ու շենքեր ժամկետից շուտ շահագործման
հանձնելու համար: Այդ հանգամանքը պարտավորեցնում է մեր շինարարա-
կան կազմակերպություններին, նրանց ղեկավարներին, սկզբնական պարտիա-
կան, արհմիութենական կազմակերպություններին՝ ձեռք առնել բոլոր միջոց-



ները շինարարական աշխատանքի բարձր տեմպեր վերցնելու և պլանների
կատարումն ապահովելու համար:

Յոթնամյակի առաջին գյուղատնտեսական տարվա խնդիրները և վերց-
րած բարձր պարտավորությունները կատարելու համար դեռ շատ անելիքներ
ունեն մեր ռեսպուբլիկայի գյուղական պարտիական կազմակերպությունները:
Այժմ այնպիսի մի ժամանակաշրջան է, երբ կազմակերպչական, քաղաքա-
կան մասսայական աշխատանքն անհրաժեշտ է կատարել դաշտում, այնտեղ,
որտեղ որոշվում է բարձր բերքի ստացումը: Ճիշտ են վարվում այն պարտիա-
կան կազմակերպությունները, որոնք դաշտավարական բրիգադաներն են
ուղարկում իրենց լավագույն ուժերին, նպատակ ունենալով ավելացնել ար-
տադրության մեջ անմիջապես աշխատող կոմունիստների և կոմերիտական-
ների թիվը, որը հնարավորություն է տալիս բրիգադայում, ֆերմաներում ստեղ-
ծել պարտիական, կոմերիտական խմբեր:

Սակայն մի շարք պարտիական կազմակերպություններ դեռևս անբա-
վարար են զբաղվում գյուղատնտեսության հարցերով: 1958 թվականի առա-
ջին եռամսյակի համեմատությամբ, 1959 թվականի առաջին եռամսյակում
խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը պակասել է Աղինի, Ալավեր-
դու, Ախուրյանի, Իջևանի, Նոյեմբերյանի, կովերի գլխաքանակը՝ Ալավերդու,
Նոյեմբերյանի, խոզերինը՝ Աշտարակի, Գորիսի, Կոտայքի, Մեղրու, Թալինի
շրջաններում: Մսի արտադրությունը նվազել է Ղուկասյանի, Սևանի, Սիսիա-
նի, կաթի արտադրությունը՝ Ղուկասյանի, Կալինինոյի, Ստեփանավանի
շրջաններում: Այս տարվա անցած չորս ամիսների ընթացքում զգալի չափերի
հասան խոշոր և մանր եղջերավոր անասունների կորուստները: Մի շարք
շրջաններ չկատարեցին մսի, կաթի գնումների առաջադրանքը:

Պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է՝ ապա-
հովել վերցրած պարտավորությունների կատարումը, վերջ տալ առանձին
աշխատողների մոտ նկատվող վնասակար բարեհոգությանն ու ինքնագոհու-
թյանը: Անհրաժեշտ է, որպեսզի յուրաքանչյուր կոլտնտեսությունում և սով-
տական տնտեսությունում սահմանվի ամենօրյա հսկողություն վերցրած
պարտավորությունների կատարման վրա:

Գյուղատնտեսական աշխատանքների ժամանակին կատարումը բարձր
բերքի ստացման ամենակարևոր նախապայմանն է: Դրա համար անհրաժեշտ
է լուրջ ուշադրություն հատկացնել աշխատանքի կազմակերպման, աշխատող
ուժի և գյուղատնտեսական մեխանիզմների լրիվ օգտագործման, աշխատան-
քի առաջավոր մեթոդներն արտադրության մեջ ներդնելու հարցերի վրա:
Պետք է ապահովել գյուղատնտեսական կուլտուրաների մշակման առաջավոր
եղանակների կիրառումը, որը կնպաստի արտադրվող մթերքների ինքնարժեքի
իջեցմանը:

Պարտիայի գյուղական շրջանային կոմիտեները, աշխատավորների դե-
պուտատների շրջսովետների գործադիր կոմիտեները, կոլտնտեսությունների
և սովխոզների սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է
վերացնեն տնտեսության ղեկավարման գործում եղած թերությունները, հայ-
տաբերեն և լրիվ օգտագործեն գյուղատնտեսական կուլտուրաների բերքա-
տվության ու անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու
խոշոր ռեզերվները:

Սոցիալիստական մրցությունը վիթխարի ուժ է և կոմունիստական շինա-

բարության փորձված մեթոդ։ Այդ մրցության գլխավոր նպատակն է՝ հասնել
աշխատանքի բարձր արտադրողականության, ապահովել կոմունիստական
շինարարության բարձր տեմպեր։ Պարտիական, պրոֆմիութենական, կոմե-
րիտական և տնտեսական կազմակերպությունների խնդիրն է՝ գլխավորել
մասսաների աշխատանքային խանդավառությունը, բարելավել մրցության ղե-
կավարումը, հոգ տանել, որպեսզի մրցողների համար ստեղծվեն բոլոր պայ-
մանները ստանձնած բարձր պարտավորությունները կատարելու և գերակա-
տարելու համար։ Պետք է պաշտպանել արտադրության առաջավորների, գյու-
տարարների և նորարարների ստեղծագործական նախաձեռնությունը, պրո-
պագանդել, տարածել և առանց ձգձգելու արտադրության մեջ ներդնել նրանց
աշխատանքի առաջավոր մեթոդներն ու արված առաջարկությունները։ Պետք
է արմատապես վերջ տալ սոցիալիստական մրցության ղեկավարման գործում
մի շարք կազմակերպություններում դեռևս գոյություն ունեցող բյուրոկրա-
տիզմին ու ձևականությանը։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում պահանջվում է
բոլոր միջոցներով բարձրացնել պարտիական կազմակերպությունների, հատ-
կապես սկզբնական պարտիական կազմակերպությունների աշխատանքի մա-
կարդակը։

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի պլենում գումարելու մասին մեր մամուլում
հրապարակված հաղորդագրությունն առաջ է բերել քաղաքական ակտիվու-
թյուն և արտադրական խանդավառություն ինչպես ամբողջ սովետական ժո-
ղովրդի, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի աշխատավորության շրջանում։
Արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվներ, սովետական տնտե-
սությունների աշխատողներ և կոլտնտեսություններ պարտավորվել են արտա-
դրական նորանոր հաջողություններով դիմավորել մեր պարտիայի և երկրի
կյանքում տեղի ունեցող այդ կարևոր իրադարձությունը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումա-
րում ընկեր Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ յոթնամյա պլանի հաջողությունները
կլուծվեն անմիջապես ձեռնարկություններում ու կառույցներում, կոլտնտե-
սություններում ու սովետական տնտեսություններում, գիտական հիմնարկնե-
րում։ Հետևապես սկզբնական պարտիական կազմակերպությունների խնդիրն
է՝ մասսաների մեջ կատարվող ամենօրյա կենդանի կազմակերպչական-քա-
ղաքական, դաստիարակչական աշխատանքի ուժեղացման միջոցով մոբիլի-
զացնել նրանց ուժերը յոթնամյա պլանի հոյակապ խնդիրների կատարումն
ու գերակատարումն ապահովելու համար։

---

# ՅՈԹՆԱՄՅԱԿԻ ԻՆԴՈՒՍՏՐԻԱԼ ԲԱԶԱՆ

## Մ. ՔՈԹԱՆՅԱՆ

Մեր երկրում սոցիալիստական շինարարության բոլոր էտապներում,
ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի արագ զարգացման պայման-
ներում առավել արագ տեմպերով է զարգացել ծանր ինդուստրիան։ Ծանր
ինդուստրիայի ստեղծումը և առաջնահերթ զարգացումը հանդիսացավ Սովե-
տական Միության ժողովրդական տնտեսության սոցիալիստական վերակա-
ռուցման, սոցիալիստական հասարակարգի կառուցման գրավականը։ Առանց
ծանր ինդուստրիայի առաջնահերթ զարգացման անհնարին էր մեր երկիրը
ագրարային երկրից վերածել ինդուստրիալ տերության, անհնարին էր գյու-
ղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը, հետևապես անհնարին
կլիներ սոցիալիզմի կառուցումը և սոցիալիզմից կոմունիզմին անցումը։

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ արտադրության զարգացումն
ու փոփոխությունը միշտ սկսվում է արտադրողական ուժերի և, առաջին հեր-
թին, արտադրության գործիքների զարգացումից ու փոփոխությունից։ Ար-
տադրության գործիքների մակարդակով է պայմանավորված այս կամ այն հա-
սարակական ֆորմացիայի զարգացման աստիճանը։ «Տնտեսական դարաշրջան-
ներն իրարից տարբերվում են ոչ թե նրանով, թե ինչ է արտադրվում, այլ
նրանով, թե ինչպես, աշխատանքի ինչ միջոցներով է արտադրվում,—գրում է
Կարլ Մարքսը։— Աշխատանքի միջոցները ոչ միայն մարդկային աշխատու-
ժի զարգացման չափանիշն են, այլև հասարակական այն հարաբերությունների
ցուցանիշը, որոնցում կատարվում է աշխատանքը» (Կապիտալ, հ. 1, Երևան,
1954 թ. էջ 191)։ Ուրեմն, նոր հասարակարգի հաղթանակի համար վճռական
նշանակություն ունի աշխատանքի միջոցների զարգացման մակարդակը։

Աշխարհում առաջին սոցիալիստական պետության հիմնադիր Վ. Ի.
Լենինը, զարգացնելով մարքսիզմը, հիմնավորելով մեկ երկրում սոցիալիզմի
կառուցման հնարավորությունը, ցույց տվեց, որ առանց առաջավոր տեխնի-
կայի վրա հիմնված ծանր արդյունաբերության առկայության, որն ընդու-
նակ է վերակառուցելու ամբողջ ժողովրդական տնտեսությունը, հնարավոր
չէ կառուցել սոցիալիզմ։ «Սոցիալիզմի միակ նյութական հիմքը կարող է լի-
նել խոշոր մեքենայական արդյունաբերությունը, որն ընդունակ է վերակա-
ռուցելու նաև հողագործությունը»,— ասում էր Վ. Ի. Լենինը (Երկեր, հ. 32,
էջ 591)։

Ղեկավարվելով մարքսիզմ-լենինիզմով, Սովետական Միության Կոմու-
նիստական պարտիան մինչպատերազմյան հնգամյակների տարիներին ծանր
ինդուստրիայի առավել զարգացման միջոցով ստեղծեց սոցիալիզմի նյութա-
տեխնիկական բազան։

Երկրի ինդուստրացման քաղաքականության իրականացման շնորհիվ
ստեղծվեցին ժողովրդական տնտեսության տեխնիկական բազան վերակա-
ռուցող ծանր ինդուստրիայի այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են ավտոմեքենա-
ների, տրակտորների, կոմբայնների, էլեկտրաքարշերի, ջերմաքարշերի, դար-
բնոցամամլիչ մեքենաների արտադրությունը: Մեծ չափով զարգացան նաև
ծանր ինդուստրիայի մյուս ճյուղերը: Ծանր ինդուստրիայի առավել զարգաց-
ման բազայի վրա մեր ամբողջ ժողովրդական տնտեսության հումկու վերելքը
հետպատերազմյան տարիներին մեծ չափով ամրապնդեց սոցիալիզմի նյու-
թա-տեխնիկական բազան և վճռական քայլ հանդիսացավ սոցիալիզմից աս-
տիճանաբար կոմունիզմին անցնելու ճանապարհին:

Ինչպես ՍՄԿԿ XXI համագումարում նշեց ընկ. Խրուշչովը, այժմ սով-
տական ժողովուրդը, համախմբված իր Կոմունիստական պարտիայի շուրջը,
հասել է այնպիսի բարձունքների, կատարել այնպիսի վիթխարի վերափոխում-
ներ, որոնք մեր երկրին հնարավորություն են տալիս թևակոխելու իր զար-
գացման նոր կարևորագույն ժամանակաշրջանը՝ կոմունիստական հասարա-
կարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը: Այդ ժամանակաշրջանի
գլխավոր խնդիրները հանդիսանում են կոմունիզմի նյութա-տեխնիկական
բազայի ստեղծումը, մեր Հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզո-
րության հետագա ամրապնդումը և միաժամանակ սովետական ժողովրդի
նյութական և հոգևոր հարաճուն պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բա-
վարարումը: Դա վճռական էտապ կլինի կապիտալիստական աշխարհի հետ
մրցության մեջ, երբ գործնականում պետք է լուծվի բնակչության մեկ
շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ առավել զարգացած կապի-
տալիստական երկրներին հասնելու և նրանցից անցնելու պատմական
խնդիրը:

Սոցիալիզմից կոմունիզմին անցումը առաջին հերթին պահանջում է կո-
մունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծում: Կոմունիզմի նյութա-
տեխնակական բազան հանդիսանում է այն խոշոր արտադրությունը, որը
հիմնված է ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիայի, արտադրության պրոցեսների
ավտոմատացման և քիմիացման, ժողովրդական տնտեսության մեջ ատոմա-
յին էներգիայի կիրառման վրա: Դրան համապատասխան էլ կոմունիզմը են-
թադրում է արտադրության բազմակողմանի կրթված, բարձրորակ և կուլտու-
րապես զարգացած աշխատողներ:

Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան ստեղծվում է սոցիալիզմի
նյութա-տեխնիկական բազայի բազմակողմանի զարգացման վրա: Միայն
ծանր ինդուստրիայի առավել զարգացումը, որը տալիս է արտադրության
նոր միջոցներ, նորագույն տեխնիկա, կարող է ապահովել կոմունիզմի նյութա-
տեխնիկական բազա, արտադրողական ուժերը հասցնել այնպիսի մակարդա-
կի, որտեղ մեծ չափով բարձրանում է հասարակական աշխատանքի արտա-
դրողականությունը և ստեղծվում նյութական բարիքների առատություն: Կո-
մունիստական հասարակարգի կառուցման կարևոր պայմանը արտադրության
պրոցեսների մեքենայացման, ավտոմատացման, տելեմեքենայացման, քի-
միացման և էլեկտրիֆիկացման միջոցով աշխատանքի մեծ չափով թեթևա-
ցումն է: Պետք է վերանան արտադրության այն պրոցեսները, որոնք բա-
ցասաբար են անդրադառնում մարդու օրգանիզմի վրա: Արտադրության տեխ-
նիկական բազայի մեծ չափով փոփոխության հետևանքով աշխատանքն այն-



քան պետք է թեթևանա, որ այն դառնա հաճույք, առողջ օրգանիզմի կենսա-
կան պահանջ: Արտադրության տեխնիկական բազայի այդ մակարդակին
հասնելու համար անհրաժեշտ է առանձնապես զարգացնել ծանր ինդուս-
տրիայի բոլոր ճյուղերը:

Կոմունիստական հասարակարգի կառուցման համար պետք է զգալի չա-
փով կրճատել աշխատանքային օրը, որպեսզի հասարակության անդամներն
իրենց հոգևոր և կուլտուրական պահանջմունքների բավարարման ժամանակ
ունենան: Դրա համար առաջին հերթին անհրաժեշտ է մեծ չափով բարձրաց-
նել հասարակական աշխատանքի արտադրողականությունը:

Ամբողջ հասարակական արտադրության անընդհատ զարգացումը, ար-
տադրության միջոցների արտադրության առավել արագ զարգացումը մեզ
մոտ տեղի է ունենում ինչպես արտադրության տեխնիկական բազայի աճի,
այնպես էլ հասարակության գլխավոր արտադրողական ուժի՝ բանվորների
արտադրական որակավորման բարձրացման միջոցով: Արտադրության տեխ-
նիկական աճը և աշխատավորների որակավորման բարձրացումը հանդիսա-
նում են հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման
վճռական պայմանը: Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ աշխատանքի
արտադրողականությունը, վերջին հաշվով, ամենագլխավորն է, ամենահիմ-
նականը նոր հասարակարգի հաղթանակի համար:

Կոմունիստական հասարակարգը ենթադրում է մտավոր և ֆիզիկական
աշխատանքի միջև եղած էական տարբերությունների վերացում: Որպեսզի
վերացնենք այդ տարբերությունները, աշխատանքային օրվա զգալի չափով
կրճատման հետ միասին պետք է մեքենայացնել և ավտոմատացնել արտա-
դրության բոլոր պրոցեսները:

Կոմունիստական հասարակարգի կառուցման համար անհրաժեշտ է
վերացնել քաղաքի և գյուղի, բանվոր դասակարգի և գյուղացիության միջև
եղած որոշ տարբերությունները: Իսկ դրա համար առաջին հերթին անհրա-
ժեշտ է մեծ չափով ընդլայնել գյուղատնտեսության տեխնիկական բազան,
այն մոտեցնել արդյունաբերության տեխնիկական բազային:

Կոմունիստական հասարակարգի կառուցումը պահանջում է որակական
փոփոխություններ մտցնել հասարակական արտադրության տեխնիկական
բազայի մեջ՝ անցնելով արտադրության պրոցեսների կոմպլեքսային ավտո-
մատացման: Արտադրության պրոցեսների ավտոմատացման պայմաններում
փոխվում է աշխատանքի բնույթը, բարձրանում է աշխատողի կուլտուր-
տեխնիկական մակարդակը, պայմաններ է ստեղծվում մտավոր և ֆիզիկա-
կան աշխատանքի, քաղաքի և գյուղի միջև եղած էական տարբերությունների
վերացման համար: Առանց արտադրության պրոցեսների մեքենայացման,
ավտոմատացման, տելեմեքենայացման, քիմիացման, անհնարին է մեծ չա-
փով թեթևացնել աշխատանքը, կրճատել աշխատանքային օրը, աշխատանքը
դարձնել առողջ օրգանիզմի կենսական պահանջ, ստեղծել նյութական բա-
րիքների լիակատար առատություն և մթերքները բաշխել ըստ պահանջի: Ար-
տադրության պրոցեսների մեքենայացում, ավտոմատացում, տելեմեքենայա-
ցում, քիմիացում անհնարին է առանց ծանր արդյունաբերության բազմակող-
մանի և առավել արագ զարգացման:

Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման, կոմունիզմի
նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում կարևոր քայլ է ՍՍՌՄ

ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թթ. յոթնամյա պլանը, որը կապահովի էկոնոմիկայի բոլոր ճյուղերի հետագա հզոր վերելք՝ ծանր ինդուստրիայի առավել աճման բազայի վրա, երկրի տնտեսական պոտենցիալի զգալի ուժեղացում այն հաշվով, որպեսզի ապահովվի ժողովրդի կենսամակարդակի անընդհատ բարձրացումը։

Ինչպես XXI արտահերթ համագումարում նշեց ընկ. Ն. Ս. Խրուշչովը, «յոթնամյակի հիմնական խնդիրը հաջողությամբ լուծել կարելի է միայն նոր տեխնիկայի լայն արմատավորման, արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում մասնագիտացման և կոոպերացման հիման վրա»։

Ելնելով ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի գլխավոր խնդիրներից, նախատեսվում է արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացնել մոտավորապես 80 տոկոսով, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը («Ա» խումբ)՝ 85—88 տոկոսով և սպառման առարկաների արտադրությունը («Բ» խումբ)՝ 62—65 տոկոսով։ Առանձնապես արագ տեմպերով կզարգանան ծանր ինդուստրիայի ճյուղերը։

Ժողովրդական տնտեսության բնագավառում յոթնամյակի խնդիրների իրականացման ու կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում առաջնությունը պատկանում է մեքենաշինությանը։ Հայրենական մեքենաշինությունը պետք է տա այնպիսի մեքենաներ, մեխանիզմներ, սարքեր և սարքավորումներ, որոնց միջոցով հնարավոր լինի լրիվ չափով մեքենայացնել և ավտոմատացնել արտադրության բոլոր պրոցեսները։

Անցումն արտադրության պրոցեսների մասնակի ավտոմատացումից ավտոմատ մեքենաների սիստեմի և տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատ կառավարման, հանդիսանում է կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի տեխնիկական պրոգրեսի հիմնական բովանդակությունը։ Այժմ հատուկ ուշադրություն է դարձվում արդյունաբերության այնպիսի ճյուղերի զարգացման վրա, ինչպիսիք են ծանր մեքենաշինությունը, սարքաշինությունը, ռադիոէլեկտրոնիկան, հաստոցաշինական արդյունաբերությունը։ Անհրաժեշտ է մեքենայացնել ու ավտոմատացնել մեքենաշինական ձեռնարկությունները, որտեղ մինչև օրս ձեռքի աշխատանքը կազմում է ամբողջ աշխատանքի կեսը։ Այդ բնագավառում խոշոր քայլ կկատարվի յոթնամյակի տարիներին։

1959—1965 թթ. արմատապես կբարելավվի մեքենաշինական ձեռնարկությունների արտադրական տեխնոլոգիան։ Դա հիմնականում կկատարվի սարքավորումների լայն փոխարինման և մոդեռնացման, ինչպես նաև մեքենայացման ու ավտոմատացման զգալի ընդլայնման միջոցով։ Յոթնամյակի տարիներին կգործարկվեն 1300 ավտոմատ գծեր, կարտադրվեն հատուկ ու բազմադիրք հաստոցներ և ավտոմատ ծրագրային կառավարմամբ օժտված հաստոցներ, դրոշմիչ ու հատիչ մամլիչներ և այլն։

Յոթնամյակի վերջին տարում ՍՍՌՄ-ում արտադրվելու է 190—200 հազար մետաղահատ հաստոց, այդ թվում 38 հազար հատուկ, մասնագիտացված և ագրեգատային հաստոց, 36,2 հազար դարբնոցամամլիչ մեքենա, 280—300 կոմպլեկտ ավտոմատ և կիսաավտոմատ գծեր, 18,5—19,2 միլիարդ ռուբլու սարքեր։ Բացի դրանցից, մեծ քանակությամբ մեքենաներ և սարքավորումներ կարտադրվեն ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի համար։



Օրինակ, 180—220 հազար տոննա տեխնոլոգիական սարքավորումներ պետք է արտադրվեն ցեմենտի արդյունաբերության համար, 2550—2700 մագիստրալային էլեկտրաքարշեր և ջերմաքարշեր, 750—856 հազար ավտոմեքենաներ և այլն։

Մեքենաշինության այդպիսի բարձր տեմպերով առաջընթացը պահանջում է իր նյութական հիմքի՝ մետալուրգիայի, հատկապես սև մետալուրգիայի մեծ չափով զարգացում։ Նախատեսվում է առաջիկա 15 տարում երկաթահանքի տարեկան հանույթը հասցնել 250—300 միլիոն տոննայի, չուգունի ձուլումը՝ 75—85 միլիոն տոննայի, պողպատինը՝ 100—120 միլիոն տոննայի։

Յոթնամյակի վերջում ձուլվելու է 65—70 միլիոն տոննա չուգուն կամ 64—77 տոկոսով ավելի, քան 1958 թվականին, 86—91 միլիոն տոննա պողպատ, 1958 թվականի 55 միլիոն տոննայի դիմաց, 65—70 միլիոն տոննա գլանվածք կամ 53—63 տոկոսով ավելի, քան 1958 թվականին, 150—160 միլիոն տոննա ապրանքային երկաթի հանքաքար։

Սև մետալուրգիայի նոր ձեռնարկությունները նախատեսվում է կառուցել արդի գիտության և տեխնիկայի վերջին նվաճումների հիման վրա։ Կվերակառուցվեն և նոր տեխնիկայով կհագեցվեն գործող մետալուրգիական գործարանները։ Յոթնամյակում մեզ մոտ կկառուցվեն աշխարհում խոշորագույն դոմնային վառարաններ՝ 2000 և 2286 խորանարդ մետր ծավալով, մարտենյան վառարաններ, էլեկտրավառարաններ, որոնք հագեցված կլինեն ժամանակակից տեխնիկայի վերջին նվաճումներով։ Արտադրության մեջ կդրվեն մեքենայացված և ավտոմատացված մետալուրգիական հուժկու ագրեգատներ, բարձր արտադրողական գլանման և խողովակային հաստոցներ, հաղորդող ագրեգատներ և ուրիշ շատ մեքենաներ ու սարքավորումներ, որոնք զգալի չափով կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման կենթարկեն մետալուրգիական արդյունաբերության ձեռնարկությունները։

Մեքենաշինության հետագա զարգացման համար մեծ նշանակություն ունի ալյումինի արտադրության ընդլայնումը։ Արդի արդյունաբերության զարգացումը գնում է այն ուղղությամբ, որ աստիճանաբար պողպատն իր տեղը զիջում է ալյումինին և այլ թեթև ձուլվածքներին ու պլաստմասսային։ Ուստի, այժմ հատուկ ուշադրություն է դարձվում դրանց արտադրության ընդլայնման վրա։ Յոթնամյակում նախատեսվում է ալյումինի արտադրությունն ավելացնել 2,8—3 անգամ։

Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, հասարակության բազմակողմանի պահանջմունքների բավարարման գործում կարևոր դեր է խաղալու քիմիական արդյունաբերության հետագա զարգացումը և արտադրության պրոցեսների քիմիացումը։ Քիմիական արդյունաբերության առավել արագ տեմպերով զարգացումը հնարավորություն կտա մեծ չափով օգտագործել մեր երկրի բնական հարստությունները, բարձրացնել ժողովրդական տնտեսության ճյուղերի տեխնիկական մակարդակը։ Այժմ, ինչպես մեքենաշինության և ծանր ինդուստրիայի այլ ճյուղերի, այնպես էլ թեթև և սննդի արդյունաբերության զարգացումը պահանջում է առաջավոր տեխնիկայով զինված, բազմաճյուղ քիմիական արդյունաբերություն։ Քիմիական արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալը յոթնամյակում մեծանալու է երեք անգամ։ Լայն զարգացում պետք է ստանա սինթետիկ նյութերի արտադրությունը. քիմիական թելանյութերի արտադրությունը կավելանա 4 անգամ,

դրանցից առավել արժեքավորները՝ 12—13 անգամ, իսկ պլաստմասսաներինը և սինթետիկ նյութերինը՝ ավելի քան 7 անգամ։ Պլաստմասսաներն ավելի ու ավելի են փոխարինում պղնձին, ցինկին, պողպատին, կապարին, կաուչուկին, կաշվին և այլ նյութերի։ Հետագայում պլաստմասսաները լայն չափով կօգտագործվեն շենքերի պատրաստի կոնստրուկցիաների, տրանսպորտային միջոցների, կահույքի, սառնարանների և այլնի արտադրության մեջ։ Հաշվումները ցույց են տալիս, որ յուրաքանչյուր 100 հազար տոննա պլաստմասսա (համապատասխան ասորտիմենտի) կարելի արդյունաբերության մեջ փոխարինում է 80 հազար տոննա կապարի, 5 հազար տոննա թելի, 13 հազար տոննա կաուչուկի և տալիս է 1,2 միլիարդ ռուբլու տնտեսում։

Պլաստմասսաները մեծ դեր են կատարելու մեքենաշինության, էլեկտրոնիկայի, ռադիոտեխնիկայի, ռեակտիվ և ատոմային տեխնիկայի, շինարարական ինդուստրիայի մեջ ժամանակակից տեխնիկական բազմաթիվ խնդիրներ լուծելու գործում։ Սինթետիկ նյութերի արտադրության այդպիսի չափերով ավելացման համար ստեղծված է համակողմանիորեն զարգացած արդյունաբերություն՝ նավթի հանույթի զուգահեռ գազերի օգտագործման բազայի վրա։

Սինթետիկ նյութերի խոշոր մասշտաբներով արտադրությունը պայմաններ կստեղծի բավարարելու աշխատավորների պահանջները բարձրորակ և էժան սպառման առարկաների նկատմամբ և մեծ չափով բարձրացնելու ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական մակարդակը։

Յոթնամյակում կառուցվելու է 140 խոշորագույն քիմիական ձեռնարկություն և վերակառուցվելու է 130 ձեռնարկություն, որոնք հագեցված կլինեն նորագույն տեխնիկայով։

Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման համար վճռական նշանակություն ունի երկրի էլեկտրիֆիկացումը։ Առաջիկա 15 տարում էլեկտրաէներգիայի արտադրությունը ՍՍՌՄ-ում նախատեսված է հասցնել 800—900 միլիարդ կիլովատժամի, այսինքն, 1958 թվականի համեմատությամբ այն ավելանալու է 3,3—4 անգամ։ 1965 թվականին նախատեսվում է էլեկտրաէներգիայի արտադրությունը հասցնել 500—520 միլիարդ կիլովատժամի։ Դա 1958 թվականի համեմատությամբ ավելի է 2—2,2 անգամ։ Մեր էներգետիկ բազայում գնալով իր ուրույն տեղն են գրավում ատոմային էլեկտրակայանները։ Արդեն կառուցվում են 400—600 հազար կիլովատ հզորության մի շարք ատոմային էլեկտրակայաններ տարբեր տիպի ռեակտորներով։ Հատուկ ուշադրություն է դարձվելու էլեկտրամեքենաշինության զարգացման վրա։ Մեծ չափով կընդլայնվի տուրբինների, գեներատորների, էլեկտրաշարժիչների և այլ մեքենաների արտադրությունը։

Արդյունաբերության հետագա էլեկտրիֆիկացման հետ միասին լրիվ չափով կէլեկտրիֆիկացվեն սովետական տնտեսությունները, նորոգման-տեխնիկական կայանները, կոլտնտեսությունները և բանվորական ավանները։

Յոթնամյակում մեծ թափ կստանա ջերմաէլեկտրակայանների կառուցումը, որը կկատարվի էժան ածխի, բնական գազի և մազութի բազայի վրա։

Առաջիկա 15 տարում նախատեսվում է նավթի տարեկան հանույթը հասցնել 350—400 միլիոն տոննայի, իսկ գազինը՝ 270—300 միլիարդ խորանարդ մետրի։ Ներկա էտապում վառելիքային արդյունաբերության մեջ առավել բարձր տեմպերով կզարգանա նավթի և գազի արտադրությունը, որի



շնորհիվ յոթնամյակի վերջին տարում վառելիքային արդյունաբերության ընդհանուր ծավալի մեջ նավթի և գազի տեսակարար կշիռը կհասնի 51 տոկոսի, 1958 թվականի 31 տոկոսի փոխարեն։ Նավթի հանույթը 1965 թվականին կհասնի 230—240 միլիոն տոննայի, 1958 թվականի 113 միլիոն տոննայի դիմաց, այսինքն կավելանա ավելի քան 2 անգամ։ Գազի արդյունահանումը 1965 թվականին կհասնի 150 միլիարդ խորանարդ մետրի, 1958 թվականի 30 միլիարդ խորանարդ մետրի դիմաց, կամ կավելանա 5 անգամ։ Արդյունահանվող գազի ավելի քան 80 տոկոսը նախատեսվում է օգտագործել արդյունաբերության մեջ։ Ածխի հանույթը, 1958 թվականի 496 միլիոն տոննայի փոխարեն 1965 թվականին կկազմի 600—612 միլիոն տոննա։

Արդյունաբերության և ընդհանրապես ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյակի առաջադրված խնդիրները հաջողությամբ իրագործելու համար մեծ է շինարարական ինդուստրիայի և շինանյութերի արդյունաբերության դերը։ Առաջիկա յոթնամյակում շինանյութերի արտադրությունը պետք է հասնի այնպիսի մակարդակի, որպեսզի հնարավոր լինի լիովին բավարարել ինչպես պետական կապիտալ շինարարության, այնպես էլ կոլտնտեսային ու անհատական բնակարանային շինարարության պահանջմունքները։ Այդ նպատակով էլ հատուկ ուշադրություն է դարձվում ցեմենտի, հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաների, շիֆերի և այլ նյութերի արտադրության ձեռնարկությունների կառուցման, գործող ձեռնարկությունների ընդլայնման և տեխնիկական վերակառուցման վրա։

Ցեմենտի արտադրությունը յոթնամյակի վերջին տարում նախատեսվում է հասցնել 75—81 միլիոն տոննայի, որը 2,2—2,4 անգամ ավելի է, քան 1958 թվականին, երկաթ-բետոնե կոնստրուկցիաներինը՝ 42—45 միլիոն խորանարդ մետրի կամ 2,5 անգամ ավելի, քան 1958 թվականին, շիֆերինը՝ 6 միլիարդ պայմանական սալիկի, կամ 2,5 անգամ ավելի, քան 1958 թվականին և այլն։

Ծանր արդյունաբերության առավել արագ զարգացումը պայմաններ է ստեղծում ժողովրդական սպառման առարկաների արտադրության հետագա զարգացման և նորագույն տեխնիկայի բազայի վրա նրա վերակառուցման համար։ Յոթնամյակի վերջին տարում տեքստիլ արդյունաբերության համար կարտադրվեն 2,5 միլիարդ ռուբլու տեխնոլոգիական սարքավորումներ, որը 2,2 անգամ ավելի է, քան 1958 թվականին, 3,8—4,1 միլիարդ ռուբլու տեխնոլոգիական սարքավորումներ սննդի և ալրաղաց-էլևատորային արդյունաբերության համար, որը 2,1—2,3 անգամ ավելի է, քան 1958 թվականին։

Ծանր արդյունաբերությունը հանդիսանում է գյուղատնտեսական արտադրության տեխնիկական պրոգրեսի հիմքը։ Յոթնամյակի ընթացքում գյուղատնտեսությունը կստանա ավելի քան մեկ միլիոն տրակտոր, 400 հազար հացահատիկային կոմբայն և այլ մեքենաներ ու սարքավորումներ։ Գյուղատնտեսության մեջ էլեկտրաէներգիայի սպառումը յոթնամյակում ավելանալու է 4 անգամ։

Յոթնամյակում նախատեսվում է հանքային պարարտանյութերի թողարկումն ավելացնել մոտավորապես 3 անգամ։ Մեծ չափով կավելացվի խտացրած հանքային պարարտանյութերի, գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների և հիվանդությունների դեմ պայքարելու առավել արդյունավետ ֆոսֆորա-օրգանական պրեպարատների, ինչպես նաև մոլախոտերի դեմ պայքարելու միջոցների արտադրությունը։

Գյուղատնտեսության արտադրության պրոցեսների հետագա մեքենայացման, էլեկտրիֆիկացման և քիմիացման բազայի վրա միայն հնարավոր կլինի մեծ չափով թեթևացնել գյուղատնտեսական աշխատանքը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, իջեցնել գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը և ստեղծել գյուղատնտեսական մթերքների լիակատար առատություն։

Ծանր ինդուստրիայի առավել զարգացման բազայի վրա յոթնամյակում մեծ չափով կզարգանա և տեխնիկական արմատական վերակառուցման կենթարկվի երկաթուղային տրանսպորտը։ Շոգեքարշերը մեծ չափով կփոխարինվեն էլեկտրաքարշերով և ջերմաքարշերով, որոնք տնտեսապես ավելի էֆեկտիվ են։ Մինչև 1965 թվականը էլեկտրական և ջերմային քարշի կփոխադրվեն բոլոր հիմնական մագիստրալները՝ 100 հազար կիլոմետր ընդհանուր երկարությամբ։ Էլեկտրիֆիկացված երկաթուղիների ցանցը կավելանա մոտավորապես երեք անգամ։

Երկրի արևելյան շրջաններում բնական ռեսուրսները յուրացնելու և տնտեսական մյուս կարևորագույն շրջանների միջև տրանսպորտային կապերն ընդլայնելու համար նախատեսվում է կառուցել 9 հազար կիլոմետր նոր երկաթգծեր և մոտավորապես 8 հազար կիլոմետր երկրորդ գծեր։

Երկաթուղիների տեխնիկական վերազինման և հիմնական միջոցների ռացիոնալ օգտագործման շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը երկաթուղային տրանսպորտում յոթնամյակի ընթացքում կբարձրանա 34—37 տոկոսով։ Երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառությունը կհասնի 1800—1850 միլիարդ տոննա կիլոմետրի։ 1965 թվականին երկաթուղային բեռնաշրջանառության 85—87 տոկոսը կատարվելու են էլեկտրաքարշերի և ջերմաքարշերի միջոցով, 1958 թվականի 26 տոկոսի դիմաց։ Երկաթուղային տրանսպորտի զարգացման համար յոթնամյակում նախատեսվում է ծախսել 110—115 միլիարդ ռուբլի կամ 85—94 տոկոսով ավելի, քան նախորդ յոթ տարում։

Սոցիալիստական արդյունաբերության մեջ կապիտալ ներդրումների ծավալը նախորդ յոթնամյակի համեմատությամբ կավելանա 2 անգամ։ Արդյունաբերության կապիտալ ներդրումների 80—85 տոկոսը կծախսվի ծանր ինդուստրիայի առավել արագ զարգացումն ապահովելու վրա։

Ծանր ինդուստրիայի առանձին ճյուղերում կապիտալ ներդրումների աճը բնորոշվում է հետևյալ թվերով (միլիարդ ռուբլիներով, համադրելի գներով).

| Ճյուղեր | 1952—1958 թթ. | 19 9—1965 թթ. | 1959—1965 թթ. տոկոսներով 1952—1958 թթ. նկատմամբ |
|---|---|---|---|
| Սև մետալուրգիա | 40,8 | 100 | 245 |
| Քիմիական արդյունաբերություն | 19 9 | 100—105 | 502—528 |
| Նավթի ու գազի արդյունաբերություն | 72 2 | 170—173 | 235—240 |
| Էլեկտրակայաններ, էլեկտրական և ջերմային ցանցեր | 75,1 | 125—129 | 166—172 |
| Մեքենաշինություն | 6[illegible],5 | 118 | 180 |

Ծանր ինդուստրիայի հիմնական ճյուղերում կապիտալ ներդրումների



ծավալի այսպիսի աճը կապահովի տեխնիկական պրոգրեսը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։

Յոթնամյա պլանում հատուկ տեղ է հատկացված ծանր ինդուստրիայի ճյուղերի ձեռնարկությունների տեղաբաշխման, մասնագիտացման և կոոպերացման հարցերին։ Արդյունաբերական ձեռնարկությունների ճիշտ տեղաբաշխման շնորհիվ պայմաններ է ստեղծվում նույն տնտեսական շրջանի սահմաններում մասնագիտացնել և կոոպերացնել ծանր ինդուստրիայի արդյունաբերական ձեռնարկությունները, թեև այդ ձեռնարկությունների մասնագիտացումն ու կոոպերացումը չեն սահմանափակվի միայն առանձին տնտեսական շրջաններով։

ՍՍՌՄ 1959—1965 թվականների ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը հանդիսանում է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության մի վառ ապացույցը։ Ուստի բնական է, որ ՍՄԿՊ XXI համագումարը ելնելով ազգային ռեսպուբլիկաների հետագա ինդուստրիալ զարգացման անհրաժեշտությունից և բնական ռեսուրսների առկայությունից, խնդիր դրեց ծանր արդյունաբերության ձեռնարկություններ կառուցել բոլոր ռեսպուբլիկաներում։ Այն հատկապես կզարգանա երկրի արևելյան շրջաններում՝ Սիբիրում և Ղազախստանում։

Սիբիրում նախատեսվում է կառուցել երկու խոշոր մետալուրգիական գործարան, որոնք կհանդիսանան ՍՍՌՄ մետալուրգիական երրորդ բազայի հիմքը։ Շարք կմտնի աշխարհի խոշորագույն Բրատսկի հիդրոէլեկտրակայանը, ավելի քան 3,5 միլիոն կիլովատ կարողությամբ և կսկսվի 4 միլիոն կիլովատ կարողությամբ Կրասնոյարսկի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը։ Ղազախական ՍՍՌ-ում մեծ չափով կընդլայնվի գունավոր մետալուրգիան։ Շարք կմտնեն Կարագանդայի մետալուրգիական և Երմակի ֆերրոհամաձուլվածքների գործարանները։ Կուստանայի մարզում շահագործվելու է երկրի խոշորագույն Սոկոլովսկ-Սարբայի հանքահարստացուցիչ կոմբինատը՝ տարեկան 19 միլիոն տոննա երկաթաքարի արտադրողականությամբ։ Ղազախստանում պողպատի ձուլումը կավելանա 17 անգամ, որի բազայի վրա կառուցվելու են գլանվածքային և հանքային սարքավորումների գործարաններ ու մեքենաշինական այլ ձեռնարկություններ։ Մեծ զարգացում կստանա վառելիքային և քիմիական արդյունաբերությունը։

Յոթնամյակում արևելյան շրջաններում ծանր արդյունաբերության առավել արագ տեմպերով զարգացման շնորհիվ կմեծանա նրա տեսակարար կշիռը երկրի ծանր արդյունաբերության արտադրանքի մեջ։ Այսպես, 1965 թվականին արևելյան շրջանների տեսակարար կշիռը ածխի արդյունահանման մեջ հասնելու է 50 տոկոսի, պողպատի արտադրության մեջ՝ 48 տոկոսի, պղնձի արտադրության մեջ՝ 88 տոկոսի, ալյումինի արտադրության մեջ՝ 71 տոկոսի, ցեմենտի արտադրության մեջ՝ 42 տոկոսի, էլեկտրաէներգիայի արտադրության մեջ՝ 46 տոկոսի և այլն։

Ամբողջ Սովետական Միության ծանր ինդուստրիայի հուժկու վերելքի հետ միասին իր ծաղկումը կապրի մեր ռեսպուբլիկայի ծանր արդյունաբերությունը։ Հայկական ՍՍՌ-ի արդյունաբերության համախառն արտադրանքը յոթնամյակում կաճի 2,26 անգամ, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը («Ա» խումբ)՝ 2,6 անգամ։ Ռեսպուբլիկայի տնտեսության մեջ

ներդրվելու է 12,5 միլիարդ ռուբլի, նախորդ 38 տարիների 11270 միլիոն ռուբլու դիմաց։

Յոթնամյակում հուժկու վերելք են ապրելու ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիան և լեռնա-հանքային արդյունաբերությունը։ Գունավոր մետալուրգիայի համախառն արտադրանքն ավելանալու է առնվազն 3 անգամ։ Ռեսպուբլիկայի հարուստ մոլիբդենի, պղնձի և բազմամետաղ հանքերի բազայի վրա վերակառուցվում և ընդլայնվում են գունավոր մետալուրգիայի Ալավերդու պղնձաքիմիական, Քաջարանի ու Դաստակերտի պղնձամոլիբդենային կոմբինատները, Երևանի ալյումինի գործարանը։ 1962 թվականին շարք կմտնի Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատը, Ախթալայում կառուցվելու է խոշոր ֆլոտացիոն ֆաբրիկա։ Նեֆելինային սիենիտների հսկայական պաշարների բազայի վրա Ախտայում կառուցվելու է լեռնա-քիմիական խոշոր կոմբինատ։

Ռեսպուբլիկայում յոթնամյակի տարիներին մեծ զարգացում կստանա քիմիական արդյունաբերությունը, որի համախառն արտադրանքն ավելանալու է 3,3 անգամ։

Յոթնամյակում առավել արագ տեմպերով կզարգանա ռեսպուբլիկայի մեքենաշինությունը։ Մեքենաշինության համախառն արտադրանքն աճելու է 3,5 անգամ։ Կառուցվելու են մի շարք հաստոցաշինական, գործիքաշինական, սարքաշինական գործարաններ։ Էլեկտրատեխնիկական արդյունաբերության արտադրանքի ավելացումը հիմնականում կատարվում է ի հաշիվ գոյություն ունեցող ձեռնարկությունների ընդլայնման։ Էլեկտրատեխնիկական արդյունաբերության արտադրանքի ծավալի տեսակետից Հայկական ՍՍՌ-ն միության մեջ գրավում է առաջատար տեղերից մեկը։

Ծանր ինդուստրիայի առավել աճի բազայի վրա ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում կապահովվի նորագույն տեխնիկայի լայն արմատավորումը, ավելի կուժեղացվի մեր երկրի պաշտպանունակությունը և պատմականորեն ամենակարճ ժամկետում կլուծվի ՍՍՌՄ-ի հիմնական տնտեսական խնդիրը։

Ծանր ինդուստրիայի առավել աճը կապահովվի յոթնամյա պլանի հաջող կենսագործումը։ «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի կատարման ու գերակատարման,— ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը, — ինչպես նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրների էկոնոմիկայի զարգացման բարձր տեմպերի շնորհիվ, համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրները կարտադրեն ամբողջ համաշխարհային արդյունաբերական արտադրանքի ավելի քան կեսը։ Դրանով իսկ կապահովվի կապիտալիզմի համաշխարհային սիստեմի հանդեպ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գերազանցությունը նյութական արտադրության մեջ, մարդկային գործունեության վճռական ոլորտում»։

---

# ԱՌԱՎԵԼ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԻՆ

## ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆ

ՍՄԿԿ XXI համագումարը պարզ կերպով սահմանեց մեր սոցիալիստական Հայրենիքի մեծ նպատակներն ու խնդիրները իր զարգացման նոր՝ կոմունիստական հասարակության ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։ Ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման և համագումարի որոշումների մեջ շարադրված են յոթնամյակի գլխավոր խնդիրները տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում։ Պարտիայի մշակած միջոցառումները ուղղված են այն նպատակին, որպեսզի պատմական ամենակարճ ժամկետում մեր երկիրը նոր թռիչք կատարի դեպի առաջ և տիրապետի կոմունիզմի գագաթների մերձավոր մատույցներում գտնվող նորանոր սահմանագծեր։ Այդ նշանակում է, որ 1959—1965 թթ. ժամանակաշրջանում մեր երկիրը պետք է ստեղծի կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան, ապահովի սովետական Հայրենիքի տնտեսական և պաշտպանական հզորության հետագա ամրապնդումը, ավելի լրիվ չափով բավարարի սովետական ժողովրդի աճող նյութական և հոգևոր պահանջմունքները։

Սովետական Հայաստանի, ինչպես և մեր ամբողջ բազմազգ սոցիալիստական Հայրենիքի աշխատավորներն աշխատանքային և քաղաքական մեծ ոգևորությամբ ձեռնամուխ են եղել ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսության զարգացման փառահեղ յոթնամյա պլանի իրականացմանը։

Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի 1959 թվականի առաջին երեք ամիսների արդյունքները ցույց տվին աշխատավորների բարձր գիտակցականությունը և մեր ղեկավար պարտիական, սովետական ու տնտեսական կադրերի ունակությունը՝ հաղթահարելու դժվարությունները և հաջողությամբ իրականացնելու պարտիայի և կառավարության առաջադրած խնդիրները։

1959 թվականի առաջին եռամսյակի պետական պլանը ռեսպուբլիկայի արդյունաբերությունը կատարեց 104,2 տոկոսով, թողարկելով 10 տոկոսով ավելի արտադրանք, քան 1958 թվականի նույն ժամակաշրջանում։ Իրենց աշխատանքը զգալիորեն բարելավել են քիմիական և էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկությունները։

Անհրաժեշտ է նշել, որ վերջին տարիներին մեր արդյունաբերության մեջ տեղի ունեցած որակական լուրջ փոփոխությունները, արտադրա-տեխնիկական բազայի ամրապնդումը և որակյալ բանվորների, ինժեներների, տեխնիկների ու տնտեսվարների կադրերի աճը արդյունաբերության հետագա արագ վերելքի համար ստեղծել են անհրաժեշտ բոլոր պայմանները։

տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացման գծով նորանոր նվաճումների արմատավորման գործով: Ավտոմատացվել է քլորբենզոլի ռեկտիֆիկացումը, որոշ ցեխերում մտցվել է արտադրական պրոցեսների կառավարման և վերահսկողության կենտրոնացում և այլն:

Գործարանի դիրեկցիան և պարտկոմը հետևողականորեն և արդյունավետ կերպով զբաղվում են ամբողջ ինժեներա-կոնստրուկտորական և գիտա-հետազոտական աշխատանքի ուժեղացման և բարելավման հարցերով: Ահա թե ինչու Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը նոր տեխնիկայի արմատավորման տեսակետից առաջավոր տեղ է գրավում ռեսպուբլիկայի արդյունաբերական այլ ձեռնարկությունների շարքում:

Արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման, թողարկվող նոր մեքենաների և սարքերի ստեղծման ու նրանց կոնստրուկցիաների բարելավման գծով մեծ աշխատանք են կատարում Կիրովականում գործող գիտա-հետազոտական «Ավտոմատիկա» ինստիտուտը և «Ավտոմատիկա» ինքնուրույն կոնստրուկտորական բյուրոն (ԻԿԲ), Լենինականում՝ «Պրոմպրիբոր» ԻԿԲ-ն և Երևանում՝ Հայէլեկտրագործարանին կից գործող Մոսկվայի գիտա-հետազոտական ինստիտուտի ֆիլիալը՝ իր բաժանմունքներով, կաբելի և լամպերի գործարաններում: Մեծ հույսեր են կապված նորերս Կիրովականում կազմակերպված Քիմիական արդյունաբերության գիտա-հետազոտական նախագծային ինստիտուտի հետ:

Լենինականի «Պրոմպրիբոր» ԻԿԲ-ն 1958 թվականի և 1959 թվականի առաջին եռամսյակի ընթացքում մշակել ու պատրաստել է գործվածքի խոնավության և հացահատիկի խոնավաչափը կարգավորող փորձնական նմուշներ և աշխատանքներ է տանում ընդհանուր արդյունաբերական նշանակության մի շարք նորմալ էլեկտրոնային խոնավաչափերի ստեղծման ուղղությամբ՝ պինդ և գազանման մարմինների համար, որոնցից հինգ փորձնական նմուշները պետք է պատրաստվեն ընթացիկ տարվա վերջում:

Այդ կոնստրուկտորական բյուրոյի կոլեկտիվը 1959 թվականին պետք է մշակի և պատրաստի էլաստովիսկոզիմետրերի փորձնական նմուշները, որոնք ծառայելու են բիտումների, մաստիկների, ցեմենտային լուծույթների և այլ պլաստիկա-մածուցիկ նյութերի չափման և նրանց ստրուկտուրային-մեխանիկական հատկությունների հետազոտման համար: Կթողարկվի նույնպես գործվածքի հենքի խոնավության կանոնավորիչների մի փորձնական մաստակ՝ ջուլհակության պրոցեսի հսկողության ավտոմատացման համար:

Կարևոր և հետաքրքրական աշխատանքներ է կատարում Կիրովականի «Ավտոմատիկա» ինքնուրույն կոնստրուկտորական բյուրոյի (ԻԿԲ) կոլեկտիվը: Նա մշակում է էլեկտրական կատարող մեխանիզմներ Սևանի՝ կատարող մեխանիզմների ապագա գործարանի համար:

«Ավտոմատիկա» ԻԿԲ-ն կառուցել է մի շարք շուռավլիկային մեխանիզմներ, պատրաստել է մեկ փորձնական նմուշ և մշակել է արտադրության տիպային տեխնոլոգիան Սևանի՝ կատարող մեխանիզմների գործարանի համար:

Անցյալ տարվա վերջերից սկսել է աշխատել ժողտնտխորհի Փայտամշակման և անտառային արդյունաբերության վարչության հատուկ կոնստրուկտորական բյուրոն (ՀԿԲ): Կարճ ժամկետում նա մի շարք արժեքավոր աշխատանքներ է կատարել կահույքի նոր տեսակների ստեղծման ուղղու-



թյամբ: Նախագծվել և պատրաստվել է կոմբինացված կահույքի երկուսենյականոց փոքր գաբարիտային գարնիտուր, որը համամիութենական մրցանակաբաշխությունում արժանացավ խրախուսական մրցանակի:

Այդ ՀԿԲ-ն մեծ աշխատանք պիտի տանի պլաստիկ մասսաների օգտագործման եղանակների ուսման գծով՝ պատրաստելու համար կահույքի ֆուրնիտուրայի դետալներ, ստանալու համար տեղական հումքից սինթետիկ խեժային սոսինձներ կահույքի պատրաստման համար, միջոցառումներ մշակելու փոխադարձ փոխարինման սկզբունքների արմատավորման ուղղությամբ, հենվելով փայտամշակման ձեռնարկություններում թույլտվածքի և նստեցվածքի վրա, որի հետևանքով զգալի կերպով կաճի աշխատանքի արտադրողականությունը և կբարելավվի կահույքի որակը:

Այս ամենը լավ է, իհարկե, և ուրախացնում է բոլորիս: Սակայն պետք է ուղղակի ասել, որ արդյունաբերության շատ ճյուղերում և, մանավանդ, ընդհանուր մեքենաշինության և հաստոցաշինության գծով, ինժեներա-կոնստրուկտորական աշխատանքն անբավարար վիճակում է: Այս հարցն առանձնապես սուր է դրված ներկայումս, երբ համաժողովրդական պայքար է ծավալվել յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար: Յոթնամյա պլանի հաջող կատարման պարտադիր պայմանն է հանրային աշխատանքի արտադրողականության ամեն կերպ բարձրացումը:

Յոթնամյակում արդյունաբերական արտադրանքի աճի գլխավոր գործոնը աշխատանքի արտադրողականության բարձրացման բարձր տեմպերն են, որոնք հենվում են տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների, նոր տեխնիկայի լայն արմատավորման, արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման, ինչպես և կադրերի որակավորման աճի վրա:

Ինչպես հայտնի է, արդյունաբերական արտադրանքի համախառն թողարկումը ժողտնտխորհի գծով պետք է յոթնամյակի ընթացքում ավելանա 2,4 անգամ: Արդյունաբերական արտադրանքի ընդհանուր աճի 71,2 տոկոսը ապահովվելու է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին: Այդ նշանակում է, որ մինչև 1965 թվականը համախառն արտադրանքի աճը 5,7 մլրդ ռուբլով պետք է ապահովվի ի հաշիվ աշխատանքի արտադրողականության բարձրացման:

Պարզ է, որ այս կարևորագույն խնդրի կատարման համար մենք պարտավոր ենք ավելի համարձակ լուծել տեխնիկական առաջադիմության հարցերը, ամեն կերպ ամրապնդել և զարգացնել կոնստրուկտորական, տեխնոլոգիական և լաբորատորական ծառայությունները, բարելավել ամբողջ գիտա-հետազոտական և էքսպերիմենտալ աշխատանքն արտադրության մեջ և գիտա-հետազոտական կազմակերպություններում:

Հարցն ավելի ևս պարզելու համար համառոտակի վերլուծենք ինժեներա-կոնստրուկտորական և հետազոտա-էքսպերիմենտալ աշխատանքի վիճակը ժողտնտխորհի Մեքենաշինության և հաստոցաշինության վարչության սիստեմում, որտեղ աշխատանքի այս կարևոր բնագավառը, ինչպես վերն ասվեց, զգալիորեն ետ է մնում:

Գլխավոր թերությունն առաջատար մեքենաշինական և հաստոցաշինական գործարաններում տեխնոլոգիական և կոնստրուկտորական ուժեղ ծառայությունների, տեխնոլոգիական լաբորատորիաների բացակայությունն է,

ինչպես նաև քիմիական և չափողական լաբորատորիաների վատ վիճակը:

Դեռևս 1957 թվականին Ժողտնտխորհի Մեքենաշինության և հաստոցաշինության վարչությանը կից ստեղծվել էր հատուկ կոնստրուկտորա-տեխնոլոգիական բյուրո (ՀԿՏԲ): Այդ, իհարկե, վատ չէ: Բայց ցավն այն է, որ ՀԿՏԲ-ն կազմակերպվել էր, գլխավորապես, ի հաշիվ Ջերժինսկու անվան և կոմպրեսորների գործարանների կոնստրուկտորական բյուրոների: Այսպիսով, ըստ էության վերացրել են առանց այն էլ սակավաթիվ կոնստրուկտորական բյուրոները, իսկ դրա հետևանքով հիշյալ ձեռնարկություններում թուլացել են ինժեներա-կոնստրուկտորական աշխատանքները:

Արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի պրակտիկան ցույց է տալիս, որ չնայած Ժողտնտխորհի վարչությանը կից հատուկ կոնստրուկտորա-տեխնոլոգիական բյուրոյի առկայության, առանց ձեռնարկություններում ուժեղ կոնստրուկտորա-տեխնոլոգիական բջիջների գոյության, դժվար է լայնորեն ծավալել տեխնիկական պրոգրեսը:

Այս տեսակետից կարելի է հիշատակել Ջերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի փորձը: 1955—1956 թթ. գործարանն անթույլատրելի կերպով ձգձգեց նոր տիպի հաստոցի ստեղծումն ու յուրացումը: Հիմնական պատճառն այն էր, որ գործարանում շատ թույլ էր կոնստրուկտորական և տեխնոլոգիական ծառայությունը: Հետագայում, երբ կոնստրուկտորական բյուրո կազմակերպեցին և ուժեղացրին գլխավոր տեխնոլոգի բաժինը, գործարանի կոլեկտիվը կարողացավ 4 ամսվա ընթացքում մշակել 1—Լ—61 և I—Բ—61 նոր հաստոցների կոնստրուկցիան, որոնք բավարարում են ժամանակակից հայրենական և արտասահմանյան տեխնիկայի պահանջները:

Ահա թե ինչու այլևս չի կարելի հանդուրժել այնպիսի մի վիճակ, երբ առաջատար մեքենաշինական, հաստոցաշինական և այլ արդյունաբերական ձեռնարկություններում գոյություն ունեն թույլ, կամ միանգամայն բացակայում են կոնստրուկտորական, տեխնոլոգիական բյուրոները և գիտա-հետազոտական լաբորատորիաները:

Մեքենաշինության բոլոր ճյուղերը տարբերվում են արդյունաբերության այլ ճյուղերից նրանով, որ մեքենաշինության ձեռնարկությունների արտադրած մեքենաները պետք է անընդհատ կատարելագործվեն: Բացի այդ, պարբերաբար գիտական և էքսպերիմենտալ տվյալների կուտակման համեմատ ստեղծվում են տեխնոլոգիական կոնստրուկցիաների հեռանկարային տիպեր, որոնք աչքի են ընկնում արդիական նյութերի կիրառումով մինիմալ կշռով և տեխնոլոգիական պրոցեսի մաքսիմալ արժանիքներով: Այդ կոնստրուկցիաների լիարժեք յուրացումը՝ մշակման նոր սկզբունքների բազայի հիման վրա հանգում է նրան, որ բարձրանում է ամբողջ ձեռնարկության տիպիկական կուլտուրան: Դրա համար գործարանային կոնստրուկտորական բյուրոները՝ համագործակցելով գիտա-հետազոտական ինստիտուտների հետ, պետք է անընդհատ աշխատեն «իրենց» առարկաների վրա: Մինչև արդյունաբերության կառավարման վերակառուցումը մեքենաշինական գործարանների մեծ մասը զուրկ էր կոնստրուկտորական բյուրոներից: Այդ կապակցությամբ կառավարման վերակառուցման ժամանակ ստիպված եղան շտապ կարգով վերանայել ռեսպուբլիկայում թողարկվող մեքենաների հնացած կոնստրուկցիաները: Հատուկ գործիքների բնագավառում եղած արդիական նվաճումները, նորարարների առաջարկները, նախաշինվածքի ստացման նոր մեթոդները, պլաստմասսաների, կապրոնի և այլ մատերիալների լայն կիրառումը, գերաձայնի և իմպուլսային մշակման օգտագործման բնագավառում եղած նվաճումները նորանոր պահանջներ են ներկայացնում մետաղահատիչ հաստոցների կոնստրուկցիաներին, նրանց դինամիկ և կինեմատիկ հատկություններին. այդ պահանջների անտեսումը սպառնում է լճացումով, հետամնացությամբ: Այսպես պատահեց 1615, 2135 տիպի հաստոցների, պոմպերի, կոմպրեսորների հետ և այլն: Այսպես կարող է պատահել և այն հաստոցների հետ, որոնց տիպաժն արդեն սահմանված է, եթե նրանց շահագործական հատկությունները միշտ չբարելավվեն: Նույն վիճակն է և քարամշակման մեքենաների բնագավառում և արդյունաբերության այլ ճյուղերում: Բայց չէ՞ որ մոտ ապագայում մեր ռեսպուբլիկան պետք է թողարկի ավելի քան 50 տիպաչափերի նոր հաստոցներ:



Մեքենաշինության և հաստոցաշինության բնագավառում մոտակա տարիներին մենք պետք է զգալիորեն ընդարձակենք կոնստրուկտորական-տեխնոլոգիական աշխատանքները՝ կատարելագործելու եղածը և ստեղծելու նոր ունիվերսալ, հատուկ և մասնագիտացված մեքենաներ, հաստոցներ, ինչպես նաև սարքավորանքի բարձր արտադրողական տեխնոլոգիական պրոցեսներ:

Ներկայումս ռեսպուբլիկայում զարգացող մեքենաշինության բոլոր ճյուղերը (հաստոցաշինություն, էլեկտրամեքենաշինություն, կոմպրեսորաշինություն, սարքաշինություն և այլն) ունեն իրենց կոնստրուկտորական բաժիններն ու բյուրոները: Սակայն նրանց արդյունավետությունը և իրականացվող նախագծերի որակը արդի պահանջի մակարդակին չեն համապատասխանում: Ընդ սմին, առավել անբարենպաստ է մեքենաշինության և հաստոցաշինության ձեռնարկություններում գործող կոնստրուկտորա-տեխնոլոգիական և գիտահետազոտական աշխատանքների վիճակը:

Այստեղից պետք է անել հետևություն, որ պարտիական, սովետական և տնտեսական ղեկավարները կոչված են իրենց ուշադրության կենտրոնում պահելու տեխնիկական պրոգրեսի հարցերը:

Անհրաժեշտ է հիմնական մեքենաշինական, հաստոցաշինական և արդյունաբերական այլ ձեռնարկություններում կազմակերպել և անընդհատ ամրապնդել կոնստրուկտորական և տեխնոլոգիական ծառայություններ, որոնք ընդունակ լինեն՝ ստեղծագործական համագործակցության մեջ մտնելով համապատասխան գիտա-հետազոտական կազմակերպությունների հետ՝ որակյալ կերպով լուծելու նոր տեխնիկայի, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, մեքենաների և սարքերի նոր, ավելի կատարելագործված կոնստրուկցիաների ստեղծման հարցերը:

Ձեռնարկություններում եղած կոնստրուկտորական և տեխնոլոգիական բյուրոների ուժեղացման և նոր բյուրոների ստեղծման հետ միասին անհրաժեշտ է ամրապնդել Ժողտնտխորհի Մեքենաշինության և հաստոցաշինության վարչության հատուկ կոնստրուկտորա-տեխնոլոգիական բյուրոն, որպես մեքենաշինության և հաստոցաշինության ձեռնարկություններում տեխնիկական առաջադիմության հարցերի կոորդինացման ղեկավար կազմակերպություն:

Մեր ռեսպուբլիկայում կան բոլոր հնարավորությունները և, առաջին հերթին, ինժեներների և տեխնիկների բազմաթիվ որակյալ կադրեր, որպեսզի ամրապնդվեն արտադրության տեխնիկական ղեկավարության այս կարևորագույն օղակները: Պետք է վճռականապես վերջ տալ քարացածության և

պահպանողականության առանձին երևույթներին, որոնք դեռ կան մեր արդյունաբերական ձեռնարկությունների որոշ ղեկավարների մոտ։

Արդյունաբերական ձեռնարկությունների մի շարք ղեկավարներ ճիշտ չեն վարվում, երբ ձգտում են ուռճացնել կամ ամեն կերպ պահպանել արդեն ուռճացած կառավարչա-վարչական ապարատը։ Ռեսպուբլիկայի ժողտնտխորհը, ելնելով լենինգրադյան և երկրի այլ տնտեսական շրջանների փորձից, պետք է մանր և միջակ ձեռնարկությունները փոխադրի արտադրության անցեխային կառավարման։ Այս ուղղությամբ որոշ քայլեր արդեն արված են, բայց դեռ բոլոր հնարավորությունները չեն օգտագործված։

Անհրաժեշտ է ավելի վճռականորեն և համառորեն անցնել արտադրության կառավարման առաջադեմ մեթոդների և, ի հաշիվ կառավարման ոլորտից ինժիներա-տեխնիկական աշխատողների ազատման, ուժեղացնել ձեռնարկությունների կոնստրուկտորական, տեխնոլոգիական և լաբորատորական ծառայությունները։

Նոր տեխնիկայի արմատավորման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման և արտադրության կազմակերպման բարելավման գործում խոշոր դեր է խաղում մեր գյուտարարների և ռացիոնալիզատորների մեծ բանակը։

Արդյունաբերության պարտիական, սովետական և տնտեսական ղեկավարների խնդիրն է՝ ձեռնարկություններում ամրապնդելով կոնստրուկտորական և տեխնոլոգիական ծառայությունները, բարձրացնելով կադրերի որակը, ինչպես հարկն է գլխավորել առաջավոր նորարարների ստեղծագործական ակտիվությունը և բոլոր ուժերը ուղղել արդյունաբերության հետագա տեխնիկական առաջադիմության, որակի բարելավման և աշխատանքի արտադրողականության արագ բարձրացման ուղղությամբ։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը՝ նոր տեխնիկայի լայնորեն արմատավորման, կոմպլեքսային մեքենայացման և արտադրական պրոցեսների ավտոմատացման հիման վրա կապահովի ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի հաջող կատարումը։

---

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ «ՄԱՏԵՐԻԱԼԻԶՄ ԵՎ ԷՄՊԻՐԻՈԿՐԻՏԻՑԻԶՄ» ԵՐԿԸ ԵՎ ՄԱՏԵՐԻԱՅԻ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԻ ԱՐԴԻ ՊԱՏԿԵՐԱՑՈՒՄՆԵՐԸ

*Մ. ՄԵԼԻՔՅԱՆ, ՑՈՒ. ՉԻԼԻՆԳԱՐՅԱՆ*

Հիսուն տարի առաջ՝ 1909 թվականի մայիսին լույս տեսավ ստեղծագործական մարքսիզմի ամենափայլուն երկերից մեկը՝ Վ. Ի. Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» աշխատությունը։ Դա մի ժամանակաշրջան էր, երբ իր վերջին, իմպերիալիստական ստադիան նոր թևակոխած կապիտալիզմը բանվորական շարժման դեմ ռեակցիոն հարձակում սկսեց բոլոր ուղղություններով՝ և՛ տնտեսության, և՛ քաղաքականության, և՛ գիտության մեջ։ Իմպերիալիստական ռեակցիայի արտահայտություններից մեկը ռևիզիոնիզմն էր, որը մարքսիզմի հիմնական դրույթների աղավաղման և դրանք իդեալիստական դրույթներով ննդափոխելու միջոցով փորձում էր այն պայթեցնել ներսից։

1905—1907 թվականների ռևոլյուցիայի պարտությունից հետո Ռուսաստանում սկսված և ծավալվող ռեակցիայի պայմաններում սոցիալ-դեմոկրատիայի շարքերին հարած մի շարք ինտելիգենտներ, որոնք վատ էին յուրացրել մարքսիզմը, հեռացան նրանից և փիլիսոփայության մեջ կանգնեցին ռևիզիոնիստական դիրքերի վրա։ Նրանք սկսեցին հարձակվել մարքսիստական փիլիսոփայության՝ դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի հիմնական դրույթների վրա, սակայն ոչ թե բացահայտորեն, այլ քողարկվելով մարքսիզմը «բարելավելու», այն «թարմացնելու» հայտարարություններով։ Նրանք, մասնավորապես, մարքսիստական փիլիսոփայությունը քննադատում էին ռեակցիոն փիլիսոփաներ Մախի և Ավենարիուսի մշակած իդեալիստական փիլիսոփայության, այսպես կոչված՝ «էմպիրիոկրիտիցիզմի» դիրքերից։

Ռուսական մախիստները (Յուշկևիչը, Վալենտինովը, Բոգդանովը, Բազարովը և ուրիշներ) հայտարարում էին, թե իբր Մախի փիլիսոփայությունը հենվում է նորագույն բնագիտության նվաճումների վրա, դրա համար էլ այն հիմք պետք է ծառայի մարքսիզմի փիլիսոփայական հիմնադրույթների վերանայման համար։

Վ. Ի. Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» աշխատությունն ուղղված էր հենց այս տեսությունների դեմ։ Վ. Ի. Լենինը բացահայտելով մախիզմի կապը բուրժուական սուբյեկտիվ իդեալիստական հոսանքների հետ և մերկացնելով նրա տեսական դրույթների գիտական սնանկությունը, ջախջախիչ հարված հասցրեց փիլիսոփայական ռևիզիոնիզմին ընդհանրապես։ Լե-

նինը ո՛չ միայն փայլուն կերպով պաշտպանեց մարքսիզմի թեորիական հիմքերը, այլև, ընդհանրացնելով Ֆ. Էնգելսի մահից հետո (1895 թ.) մինչև իր գրքի լույսընծայման շրջանում բնագիտության մեջ կատարված նորագույն հայտնագործությունները, զարգացրեց մարքսիստական փիլիսոփայական մատերիալիզմը և մատերիալիստական դիալեկտիկան։ Առանձնապես խոշոր է Լենինի գրքի դերը գիտության նորագույն տվյալների հիման վրա աշխարհի իմացության մատերիալիստական թեորիայի, մատերիալիստական դիալեկտիկայի հետագա հիմնավորման, փիլիսոփայության պարտիականության սկզբունքի զարգացման գործում։

Վ. Ի. Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» աշխատությունը հսկայական նշանակություն ունեցավ և ունի ռևիզիոնիզմի և փիլիսոփայական իդեալիզմի ժամանակակից թեորիաների մերկացման գործում։ Դրա հետ միասին անգնահատելի է նրա նշանակությունը արդի բնագիտության բուռն առաջընթացի համար։

Գրքի լույսընծայումից հետո անցած կես դարի ընթացքում հասարակական կյանքում արմատական փոփոխություններ են կատարվել. կապիտալիզմի՝ հոգեվարք ապրող սիստեմի կողքին հաստատվել և օրեցօր հզորանում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմը. մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ գաղափարները տիրապետող ուսմունք են դարձել երկրագնդի մեկ երրորդ մասում և գնալով աճում է նրանց ազդեցությունը մարդկության մնացած մասի վրա. բնագիտությունը հասել է այնպիսի վիթխարի հաջողությունների, որոնց մասին 50 տարի առաջ երազել անգամ չէր կարելի։ Սոցիալիզմի և կապիտալիզմի սիստեմների ծավալված մրցության մեջ օրըստօրե ավելի ու ավելի բացահայտ է դառնում սոցիալիստական հասարակարգի անվիճելի առավելությունը կապիտալիստականի նկատմամբ. պատմության կոնկրետ ընթացքով կրկին անգամ հաստատվում է այն ճշմարտությունը, որ համայն մարդկության երջանիկ ու լուսավոր ապագան կարող են կառուցել և կառուցում են կոմունիզմի ամենահաղթ գաղափարներով, դիալեկտիկական և պատմական մատերիալիզմով զինված մարդիկ։ Կոմունիզմն այսօր համաշխարհային-պատմական անվիճելի փաստ է դարձել, և նրա իդեաների դրոշի տակ ամեն տարի նորանոր միլիոնավոր մարդիկ են կանգնում։ Կոմունիզմի գաղափարների այս հաղթական երթի համար հսկայական նշանակություն ունեցավ Վ. Ի. Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» աշխատությունը՝ ստեղծագործական մարքսիզմի այդ հանճարեղ երկը։ Լենինի գիրքը մեր օրերում էլ չի կորցրել իր թարմությունը և այժմ էլ ցուցադրում է մարքսիստական փիլիսոփայության ուժն ու նշանակությունը աշխարհի գիտական իմացության զարգացման և կոմունիզմի սկզբունքների համաձայն հասարակության ռևոլյուցիոն վերափոխման համար մղվող պայքարում։



Քննադատելով մախիզմը, Լենինը մերկացրեց մատերիալիզմը սուբյեկտիվ իդեալիզմով նենգափոխելու մախիստների փորձերը։ Զհրաժարվելով մատերիա բառից, մախիստները դրա տակ դնում էին բոլորովին այլ, մատերիալիզմին արմատականորեն հակասող իմաստ։ Մախը, Ավենարիուսը, Պիրսոնը ձգնում էին հիմնավորել այն միտքը, թե մատերիան մեր զգայությունների



(կամ ինչպես Մախն էր ասում՝ «էլեմենտների») կոմբինացիան է, մեր զգայությունների «մշտական հնարավորությունը»։ Դրանով իսկ մախիստները ժխտում էին մարդուց դուրս օբյեկտիվ ռեալության գոյությունը և նյութական աշխարհի ամբողջ բազմազանությունը կախման մեջ էին դնում մարդու գիտակցությունից։ Վ. Ի. Լենինը անհերքելիորեն ցույց տվեց, որ սա բացահայտ սուբյեկտիվ իդեալիստ եպիսկոպոս Բերկլիի տեսակետն է, որը նոր բառիկներով համեմված մատուցում են Մախն ու Ավենարիուսը, իսկ նրանց հետևելով, թութակի նման կրկնում ռուսական մախիստները։

Բացահայտելով այս իդեալիստական հայացքների պատմական արմատները, Լենինը որոշակիորեն ցույց տվեց, որ մատերիայի գոյության հարցը մեր զգայությունների, պատկերացումների, մարդկային ամբողջ իմացության օբյեկտիվ աղբյուրի հարցն է։ Իդեալիզմն աշխարհի հիմքում դնում է գաղափարը, ոգին կամ, որ նույնն է, զգայությունը, գիտակցությունը, ժխտելով մեր իմացության օբյեկտիվ, գիտակցությունից անկախ աղբյուրի գոյությունը։ Փիլիսոփայական մատերիալիզմը արմատականորեն հակադրվում է իդեալիզմին և հիմնավորում է աշխարհի մատերիականությունը։ Մատերիալիզմը մեր զգայությունների, մեր ամբողջ իմացության աղբյուրը համարում է օբյեկտիվ ռեալությունը՝ մատերիան։ Ընդհանրացնելով փիլիսոփայության և բնագիտության նվաճումները նյութական աշխարհի իմացության բնագավառում, Լենինը մշակեց մատերիայի դիալեկտիկական-մատերիալիստական սահմանումը. «Մատերիան,— գրում է Վ. Ի. Լենինը,— փիլիսոփայական կատեգորիա է՝ նշանակելու համար օբյեկտիվ ռեալությունը, որ տրված է մարդուն նրա զգայությունների մեջ, որ պատճենվում է, լուսանկարվում, արտապատկերվում է մեր զգայությունների միջոցով, գոյություն ունենալով նրանցից անկախ» (Երկեր, հ. 14, էջ 161)։ Մատերիայի հասկացությունը, ինչպես ցույց տվեց Լենինը, մարդկային մտքի մեծագույն նվաճումն է, որը հնարավորություն է տվել մի բառի մեջ ընդհանրացնել շրջապատող բազմակերպ ու անսահման աշխարհի բոլոր իրերի, առարկաների ու պրոցեսների ամենաընդհանուր հատկությունը — մարդու, և ընդհանրապես, ամեն մի գիտակցությունից անկախ օբյեկտիվ ռեալություն լինելը։

Մատերիայի փիլիսոփայական հասկացությունը՝ որպես ոգուց, գիտակցությունից, հոգեկանից անկախ օբյեկտիվ ռեալության հասկացություն, որպես վերջնակետային — ամենալայն հասկացություն, նշեց Վ. Ի. Լենինը, չի կարող հնանալ (եթե նկատի չառնենք, նոմենկլատուրայի, այսինքն՝ բառերի ու ձևակերպման, միշտ հնարավոր փոփոխությունները), և ինչ էլ որ հայտնագործել է մարդկային միտքը, եղել է մատերիայի այս կամ այն կոնկրետ վիճակը, այս կամ այն արտահայտությունը։ Դրա համար էլ Վ. Ի. Լենինը նշում էր, որ «...խոսել այն մասին, թե այդպիսի գաղափարը կարող է «հնանալ»,— մանկական թոթովանք է, անմիտ կրկնություն մոդայական ռեակցիոն փիլիսոփայության փաստարկների» (Երկեր, հ. 14, էջ 161)։

Բոլորովին այլ է մատերիայի կառուցվածքի մեր պատկերացումների փոփոխման հարցը։ Մատերիայի կառուցվածքի ուսումնասիրության հարցը ոչ թե փիլիսոփայության, այլ բնագիտության ուսումնասիրության առարկան է։ Բնագիտության հիմնական նախադրյալը հենց մատերիայի, մեզնից անկախ օբյեկտիվորեն ռեալ ֆիզիկական աշխարհի գոյության ընդունումն է, որից ելնում է բնագիտությունը և ուսումնասիրում մատերիայի կառուցվածքը, նրա

շարժման, կոնկրետ ձևերի օրենքները։ Վ. Ի. Լենինը շեշտում էր այդ հանգամանքը, գրելով. «Մատերիալիզմն ու իդեալիզմը տարբերվում են մեր իմացության աղբյուրի վերաբերյալ հարցի, իմացության (և առհասարակ «հոգեկանի») ու ֆիզիկական աշխարհի հարաբերության հարցի այս կամ այն լուծմամբ, իսկ մատերիայի կազմության, ատոմների ու էլեկտրոնների հարցը մի հարց է, որը վերաբերում է միայն այդ «ֆիզիկական աշխարհին»» (Երկեր, հ. 14, էջ 345)։ Բնագիտության ամեն նվաճում մի նոր բան է ավելացրել մատերիայի կառուցվածքի մասին մեր պատկերացմանը։ Եվ այդ մի անսահմանափակ, անվերջ պրոցես է, որովհետև մատերիան, ֆիզիկական աշխարհը, մատերիան ու նրա հատկությունները անվերջ են և անսահման։ Այդ իսկ պատճառով էլ մատերիայի կառուցվածքի մեր պատկերացումները՝ բնագիտության զարգացմանը զուգընթաց, անվերջ խորանում են, դառնում են ավելի ու ավելի ճշմարիտ՝ երբեք չսպառելով, սակայն, մատերիայի բոլոր հատկությունների ու ձևերի իմացությունը։

Մատերիայի կառուցվածքի այն պատկերացումը, որ ստեղծվել էր հին աշխարհում, իր հիմնական գծերով պահպանվեց ավելի քան 2000 տարի։ XVII—XVIII դարերում՝ ֆիզիկայի և, մասնավորապես, մեխանիկայի զարգացման հիման վրա ստեղծվեց մատերիայի կառուցվածքի մեխանիստական տեսությունը, որը բնագիտական նախադրյալ հանդիսացավ այն ժամանակվա առաջավոր փիլիսոփայության՝ մետաֆիզիկական մատերիալիզմի համար։ Ըստ այդ պատկերացման մատերիայի հիմքում ընկած էին մանր, անտեսանելի նյութական մասնիկներ՝ անքայքայելի, անբաժանելի, անթափանցելի, անփոփոխ մասսայով և ներքին շարժումից զուրկ մասնիկները՝ ատոմները։

XIX դարի ընթացքում կատարված խոշոր հայտնագործությունները հիմնավորեցին բնության երևույթների համընդհանուր կապն ու փոխադարձ պայմանավորվածությունը և նրանց զարգացման դիալեկտիկական բնույթը. սակայն մատերիայի փոքրագույն մասնիկների տեսության բնագավառում ֆիզիկոսների մոտ հիմնական գծերով դեռևս իշխում էր մետաֆիզիկական պատկերացումը։ Ֆիզիկոսներն ընդունում էին իրարից անկախ ատոմների, եթերի և էլեկտրականության գոյությունը, ատոմները դիտելով որպես նյութական մասնիկներ, որպես մատերիա, եթերը՝ որպես մատերիայի շարժման ոչ նյութական տարածություն, իսկ էլեկտրականությունը՝ որպես լիցքերի շարժում։ Ընդ սմին ատոմների շարժումներն ու կապերը բացատրելու համար կիրառվում էին կլասիկ մեխանիկայի օրենքները, որոնք հատուկ էին մեծ մարմինների շարժմանը՝ բայց կիրառելի չէին ատոմային աշխարհում և մեծ արագությունների համար։

XIX դարի վերջին և XX դարի սկզբին բնագիտության մեջ կատարվեցին մի շարք խոշոր հայտնագործություններ, որոնք նոր լույս սփռեցին ատոմի կառուցվածքի, նրա բնույթի հարցերի վրա։ Ռենտգենյան ճառագայթների, ռադիոակտիվության, ատոմից ավելի փոքր մասնիկի՝ էլեկտրոնի, ռադիում և պոլոնիում ռադիոակտիվ տարրերի հայտնագործության հետևանքով բացահայտվեց, որ ատոմը բաժանվում է, որ քիմիական տարրերն անփոփոխ չեն և կարող են փոխարկվել մեկը մյուսի, որ էլեկտրոնը շարժվում է հսկայական արագությամբ և նրա մասսան ոչ թե անփոփոխ է, այլ կախված շարժման արագությունից։



Այս նոր հայտնագործություններից, որոնք հակասում էին մատերիայի կառուցվածքի մետաֆիզիկական մատերիալիստական պատկերացումներին, կառչեցին ամեն տեսակի իդեալիստական հոսանքներ և, առաջին հերթին, էմպիրիոկրիտիցիզմը, դրա մեջ տեսնելով մատերիայի գոյության ժխտումը և մատերիալիզմի հերքումը ընդհանրապես։ Ռեակցիոն մտածողները, այդ թվում նաև որոշ ֆիզիկոսներ, սկսեցին խոսել այն մասին, որ «ատոմը ապամատերիականանում է», «մատերիան չքացավ»։ Ֆիզիկայի հայտնաբերած նոր մասնիկները նրանք դիտում էին ոչ թե որպես մատերիայի՝ առաջ անհայտ և այժմ հայտնի դարձած մասնիկներ, այլ որպես մեր զգայության սիմվոլներ, պայմանական նշաններ։ Որոշ ֆիզիկոսների մոտ առանձնապես լայն տարածում գտավ, այսպես կոչված, էներգետիզմ ուղղությունը, որն աշխարհի հիմքում դնում էր ոչ թե մատերիան, այլ էներգիան։ Ընդ որում էներգետիզմի հիմնադիր Վ. Օստվալդը էներգիան պատկերացնում էր ոչ թե որպես մատերիայի շարժում, այլ որպես մարդկային գիտակցության հատկություն։ Իսկ մախիստները, կառչելով այս իդեալիստական դրույթներից, հանգեցին այն եզրակացության, որ մատերիա չկա, կան զգայությունների կոմբինացիաներ, իսկ շարժումը դա մեր մտապատկերների հաջորդումն է իրար և ոչ թե մատերիայի շարժումը։

«Մատերալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» գրքի 5-րդ գլուխը Վ. Ի. Լենինն ամբողջությամբ նվիրեց բնագիտության մեջ կատարված նորագույն ռևոլյուցիայի և ժամանակակից փիլիսոփայական իդեալիզմի կապի վերլուծությանը։ Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ ֆիզիկայի մեջ կատարված նորագույն հայտնագործությունները հիմնովին փոխում են մեր պատկերացումները մատերիայի մանրագույն մասնիկների կառուցվածքի մասին։ Դրա համար էլ նրանք իսկական ռևոլյուցիա են բնագիտության մեջ։ Սակայն այդ հայտնագործությունները ճիշտ կարող էին ըմբռնվել միայն դիալեկտիկական-մատերիալիստական հայացքների հիման վրա, այնինչ, ֆիզիկոսների մի զգալի մասը դիալեկտիկա չգիտեր և, կառչելով մեխանիստական-մետաֆիզիկական մատերիալիզմից, ի վիճակի չէր ըմբռնելու ֆիզիկայի նվաճումների փիլիսոփայական իմաստը։ Վ. Ի. Լենինը պարզորոշ ցույց տվեց, որ որոշ ֆիզիկոսների այն հայտարարությունը, թե «Մատերիան չքանում է», նշանակում է միայն այն, որ «...չքանում է այն սահմանը մինչև որը մատերիան մենք գիտեինք մինչև այժմ, մեր գիտելությունն ավելի խորն է գնում. չքանում են մատերիայի այնպիսի հատկություններ, որոնք առաջ թվում էին բացարձակ, անփոփոխ, նախասկզբնական (անթափանցելիություն, իներցիա, զանգված և այլն) և որոնք այժմ հանդես են գալիս որպես հարաբերական հատկություններ, որ հատուկ են մատերիայի միայն մի քանի կացությունների» (Երկեր հ. 14, էջ 345)։

Վ. Ի. Լենինը այնուհետև ցույց տվեց, որ մատերիայի կառուցվածքի մեր պատկերացման այս կամ այն փոփոխությունը, մատերիայի նոր վիճակների, նրա շարժման նոր օրենքների հայտնագործումը ո՛չ միայն չի հերքում մատերիայի գոյությունը, այլև, ընդհակառակը, նրա գոյության, նրա անսպառելիության հուժկու փաստարկ է։ Ընդհանրացնելով ֆիզիկայի նորագույն նվաճումները և հանգամանորեն վերլուծելով առանձին ֆիզիկոսների իդեալիստական եզրակացությունները, Վ. Ի. Լենինը վերջիններիս անվանեց «ֆիզիկական» իդեալիստներ, որովհետև նրանք իդեալիստորեն էին մեկնաբանում

ֆիզիկայի որոշ արդյունքներ։ Վ. Ի. Լենինը բացահայտեց ժամանակակից սուբյեկտիվ իդեալիստների, հատկապես մախիստների այն պնդման սնանկությունը, թե իբր նրանք հենվում են բնագիտության նորագույն նվաճումների վրա. նրանք իրոք կապված էին (և այժմ էլ կապված են) արդի բնագիտության մեկ ճյուղի՝ ֆիզիկայի մեկ դպրոցի՝ «ֆիզիկական» իդեալիզմի հետ։

Վ. Ի. Լենինն իր գրքում ցույց տվեց, որ «ֆիզիկական» իդեալիզմը՝ որպես ռեակցիոն ուղղություն, ծնունդ առավ գիտության բուն պրոցեսից։ «Բնագիտության խոշոր հաջողությունները,— գրում է Լենինը,— մոտեցումը մատերիայի այնպիսի համասեռ և հասարակ տարրերին, որոնց շարժման օրենքները թույլ են տալիս կատարել մաթեմատիկական մշակում, առաջացնում են այն, որ մաթեմատիկոսները մոռանում են մատերիան։ «Մատերիան չքանում է», մնում են սոսկ հավասարումները։ Զարգացման նոր ստադիայի վրա և իբր թե նոր ձևով ստացվում է կանտական հին իդեան. բանականությունն օրենքներ է հրահանգում բնությանը» (Երկեր, հ. 14, էջ 411—412)։ «Ֆիզիկական» իդեալիզմին ծնունդ տվող մյուս պատճառը Վ. Ի. Լենինը համարում է ռելյատիվիզմի՝ մեր գիտելիքների հարաբերականության սկզբունքը, որը դիալեկտիկան չգիտենալու պարագայում անխուսափելիորեն տանում է դեպի իդեալիզմ։ «Ֆիզիկական» իդեալիստները, մախիստները և սուբյեկտիվ իդեալիստական այլ հոսանքներին հարողները չէին հասկանում բացարձակ և հարաբերական ճշմարտությունների փոխհարաբերությունը, այն, որ երեկ բացարձակ թվացող, իսկ այսօր հարաբերական դարձած ճշմարտությունները ներկայացնում են մարդկությունից անկախ օբյեկտի՝ մատերիայի հարաբերականորեն ճիշտ արտացոլումները, որ հարաբերական ճշմարտությունների գումարից նրանց զարգացման ընթացքում կազմվում է բացարձակ ճշմարտությունը։ Մատերիայի կառուցվածքի մասին նախկին պատկերացումները դարձան հարաբերական, որովհետև նրանք վերաբերում էին մատերիայի միայն որոշ վիճակներին և օրինաչափորեն դրանց տեղը պետք է գրավեն նոր պատկերացումները, որոնք մատերիան ներկայացնում են ավելի խորը։ Դրանք ավելի մոտ են մատերիայի լրիվ իմացությանը, որին անվերջ մոտենում է մարդկային միտքը։

Վ. Ի. Լենինն ընդգծում էր այն հանգամանքը, որ «ֆիզիկական» իդեալիզմին հարել էր ֆիզիկոսների միայն փոքր մասը, իսկ ֆիզիկոսների ահագին մեծամասնությունը, ընդ որում այնպիսի խոշոր դեմքեր, ինչպես՝ Կիրխհոֆը, Հելմհոլցը, Թոմսոնը, Մաքսվելը, Բոլցմանը, Լորենցը, Լարմորը, Լանժևենը և ուրիշներ կանգնած մնացին մատերիալիզմի դիրքերի վրա։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ «ֆիզիկական» իդեալիզմը սոսկ այն էր նշանակում, որ բնագետների մի դպրոց բնագիտության բնագավառում գլորվել էր դեպի ռեակցիոն փիլիսոփայությունը, «չկարողանալով ուղղակի և մեկեն մետաֆիզիկական մատերիալիզմից բարձրանալ դեպի դիալեկտիկական մատերիալիզմը», իսկ այդ բանը կանի արդի ֆիզիկան, որը գնում է դեպի բնագիտության միակ ճիշտ մեթոդը և միակ փիլիսոփայությունը, գնում է զիգզագներով, տարերայնորեն, խարխափելով, երերվելով։ «Արդի ֆիզիկան երկունքի մեջ է,— գրում էր Լենինը։— Նա ծնում է դիալեկտիկական մատերիալիզմ», ծննդաբերությունը ցավագին է և կենդանի ու կենսունակ էակներից բացի նա ծնում է նաև «ֆիզիկական» իդեալիզմի նման թափթփուկներ, բայց նա անխուսափելիորեն կհանգի դիալեկտիկական մատերիալիզմին և է՛լ ավելի



կխորացնի, է՛լ ավելի հիմնավոր կդարձնի մեր գիտելիքները մատերիայի կառուցվածքի մասին։

Վ. Ի. Լենինը որոշակիորեն նշեց նաև «ֆիզիկական» իդեալիզմի սոցիալական արմատները։ Բնագիտության ճգնաժամը, որոշ ֆիզիկոսների դեպի իդեալիզմ գլորվելը կապիտալիզմի իմպերիալիզմի վերածվելու, նրա սիստեմի ընդհանուր ճգնաժամի արտահայտություններից մեկն է։ «Ֆիզիկական» իդեալիզմը և, հատկապես, մախիզմը որոշակի քաղաքական դեր էին կատարում, ծառայելով իմպերիալիստական ռեակցիային։ Թեև նրանք ձգնում էին բանն այնպես պատկերել, թե իբր նրանք ոչ մի առնչություն չունեին քաղաքական պայքարի հետ, սակայն ինչպես ցույց տվեց Լենինը, նրանք իրականում ռեակցիոն պարտիաների, կրոնի ու միստիցիզմի «գիտական» շղարշ հագած սպասավորներն էին։ Լենինը ցույց տվեց, որ, ինչպես փիլիսոփայության մեջ, այնպես էլ բնագիտության մեջ, գործում է պարտիականության սկզբունքը, որ տեսական դրույթների, զանազան իզմերի հետևում չի կարելի չտեսնել պարտիաների, որոշակի հասարակական խմբերի պայքարը։ Դրա համար էլ, նշում էր Լենինը, «Ֆիզիկայի մասնագիտական բնագավառներում ամենագնահատելի աշխատանքները տալու ընդունակ այդ պրոֆեսորներից ոչ մեկի ոչ մի խոսքին չի կարելի հավատալ հենց որ խոսք է բացվում փիլիսոփայության մասին»։

Վ. Ի. Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» գիրքը վիթխարի նշանակություն ունեցավ բնագիտության հետագա զարգացման համար։ Այդ գրքում Վ. Ի. Լենինը հստակ ու որոշակի բացահայտեց այն ընդհանուր տեսական հիմքը, որի վրա խարսխվելով միայն արդի ֆիզիկան կարող է առաջ ընթանալ։ Ավելին, իր գրքի մեջ Լենինն ընդհանրացրեց ֆիզիկայի նորագույն նվաճումները և գծագրեց նրանց զարգացման ուղղությունը մատերիայի կառուցվածքի ըմբռնման բնագավառում։ Եվ ֆիզիկայի հետագա նվաճումներն ապացուցեցին մեծ առաջնորդի առաջ քաշած դրույթների ու եզրակացությունների ճշմարտացիությունը։

***

XIX դարի վերջերին և XX դարի սկզբին ֆիզիկայում կատարված նորագույն հայտնագործությունները հիմք հանդիսացան երկու նոր տեսությունների՝ քվանտային մեխանիկայի և հարաբերականության տեսության համար, որոնք հիմնականում զարգացան ու ճանաչում գտան Վ. Ի. Լենինի գրքի հրապարակումից հետո և հնարավորություն տվեցին ֆիզիկոսներին՝ ստեղծելու մատերիայի կառուցվածքի ժամանակակից տեսությունները։

Մատերիայի կառուցվածքի մեր պատկերացումն առանձնապես խորացավ միջուկային ֆիզիկայի զարգացման հետևանքով։ Վերջին տասնամյակներում հաջողվեց զանազան բարդ սարքավորումների օգնությամբ էքսպերիմենտալ ճանապարհով ապացուցել տեսականորեն կռահված մի քանի տարրական մասնիկների գոյությունը և հայտնագործել նոր ու նոր մասնիկներ։ Այդ նվաճումները մի անգամ ևս ապացուցեցին դիալեկտիկական մատերիալիզմի այն հիմնական դրույթը, որ մատերիան անսպառելի է, որ նրա հատկությունները անսահման են, որ նրա մեջ անփոփոխ վիճակներ չկան, որ մատերիայի տարբեր ձևերը փոխարկվում են մեկը մյուսին։

Արդի ֆիզիկայի նվաճումների հիման վրա կրկին հաստատվում է Ֆ. Էնգելսի այն միտքը, որ «...ինչ հայացք էլ ունենանք մատերիայի կառուցվածքի վերաբերմամբ, կասկածից վեր է այն, որ նա բաժանված է մի շարք մեծ, լավ սահմանազատված խմբերի՝ մասսաների հարաբերականորեն տարբեր չափերով, այնպես, որ յուրաքանչյուր առանձին խմբի անդամներն իրենց մասսայի կողմից գտնվում են միմյանց նկատմամբ որոշակի, վերջավոր հարաբերության մեջ, իսկ իրենց ամենամոտիկ խմբերի անդամների վերաբերմամբ-գտնվում են անվերջավոր փոքրի հարաբերության մեջ՝ մաթեմատիկայի իմաստով» (Բնության դիալեկտիկա, Երևան, 1957, էջ 281)։

Մատերիայի այսպիսի մեծ խմբեր են հանդիսանում գալակտիկաները, արեգակնային համակարգությունները, երկրային մասսաները, մոլեկուլներն ու ատոմները, և, վերջապես, տարրական մասնիկները, որոնք առայժմ մեզ հայտնի փոքրագույն մասնիկներն են և կազմում են ներատոմային աշխարհը։ Այդ մասնիկները տարրական են կոչվում այն պատճառով, որ գիտության և տեխնիկայի զարգացման ժամանակակից աստիճանում դրանք ներատոմային պրոցեսների ժամանակ դեռևս չեն տարալուծվում, այլ փոխարկվում են մեկը մյուսին։ Այժմ գիտությանը հայտնի են մոտ 30 տարրական մասնիկներ։ Այսպիսով գիտության տվյալներն ապացուցում են, որ 70 տարի առաջ վերջնական ու անբաժանելի համարված ատոմի ներսում կա մի չափազանց հարուստ ու բազմազան աշխարհ և միանգամայն ճիշտ էին Ֆ. Էնգելսն ու Վ. Ի. Լենինը, երբ գրում էին մատերիայի և նրա մասնիկների՝ ատոմի ու էլեկտրոնի անսպառելիության մասին։

Ընդհանուր ձևով ատոմն այժմ պատկերացվում է որպես մատերիայի մի մասնիկ, որն ունի դրական լիցքավորված միջուկ և նրա շուրջը՝ համեմատաբար մոտ ու հեռու շերտերում շարժվող բացասական լիցք ունեցող էլեկտրոններ։ Ատոմի միջուկն իր հերթին բարդ կառուցվածք ունի. նրա կազմության մեջ են մտնում պրոտոնները և նեյտրոնները, որոնք այնտեղ պահվում են միջուկային ուժերի շնորհիվ։ Պրոտոնները լիցքավորված մասնիկներ են՝ նրանցով է որոշվում ատոմի լիցքը և դրանով իսկ՝ նրա տեղը քիմիական տարրերի պարբերական սիստեմի մեջ։

Ներատոմային աշխարհում տեղի է ունենում տարրական մասնիկների անընդհատ շարժման ու փոխարկման պրոցես, որի ժամանակ հանդես են գալիս նաև մի շարք այլ մասնիկներ (այսպես կոչված՝ մեզոններ), որոնց մասսան մեծ է էլեկտրոնի մասսայից, բայց փոքր է պրոտոնի մասսայից։ Սակայն այդ բոլոր փոխարկումների հետ միասին ատոմը, որպես ամբողջություն, գտնվում է հարաբերականորեն կայուն վիճակում, ինչպես որ, օրինակ, արեգակնային համակարգությունը, չնայած նրա մեջ կատարվող անընդհատ փոփոխություններին, մնում է հարաբերականորեն կայուն վիճակում որպես մի ամբողջություն։

Տարրական մասնիկների հատկությունների հայտնագործումը, հատկություններ, որոնք հակասում են ֆիզիկայի սովորական պատկերացումներին, ինչպես և այն հանգամանքը, որ այդ մասնիկները չափազանց փոքր են (օրինակ, ատոմի չափսերը սանտիմետրի մեկ հարյուրմիլիոներորդ մասն է $10^{-8}$ սմ), իսկ ատոմի միջուկը շատ ավելի փոքր չափսեր ունի՝ սանտիմետրի մեկ տասըտրիլիոներորդ մասը ($10^{-13}$ սմ), անմիջականորեն անմատչելի մեր զգայարաններին, ինչպես և այն, որ մեր ուսումնասիրության գործիքները



ազդում են դրանց վրա, առիթ են հանդիսացել որոշ իդեալիստական եզրակացությունների համար։ Օրինակ, նշանավոր ֆիզիկոսներ Վերներ Հայզենբերգը և Նիլս Բորը մի ժամանակ առաջ քաշեցին, այսպես կոչված՝ «լրացման սկզբունքը», որի համաձայն տարրական մասնիկների երկակի՝ ալիքային և մասնիկային հատկությունները ոչ թե օբյեկտիվորեն գոյություն ունեն, այլ առաջանում են՝ կախված գործիքի ազդման եղանակից։ Սա «ֆիզիկական» իդեալիզմի նոր արտահայտություններից մեկն է։ «Ֆիզիկական» իդեալիզմի արտահայտությունն է նաև, այսպես կոչված՝ «դիտարկության սկզբունքը»։ Եթե ֆիզիկոսը մտցնում է «դիտարկության սկզբունքը», դա նշանակում է, որ նա իրերն ու մարմինները դիտում է որպես զգայությունների ամբողջություն։ Դուրս է գալիս, որ ֆիզիկոսը ոչ թե մեզնից անկախ օբյեկտիվ ռեալության հատկություններն է հայտնագործում, այլ սոսկ կատարելագործում է մարդկային հայեցողության ձևերը։

Որոշ ռադիոակտիվ մասնիկների քայքայման ժամանակ արձակվում են էլեկտրոններ։ Էլեկտրոններ են արձակվում նաև տարրական մասնիկների փոխարկման ժամանակ։ Էլեկտրոնի և պոզիտրոնի (էլեկտրոնի մասսա և դրական լիցք ունեցող մասնիկ) միացումից առաջանում են լուսային քվանտներ։ Այս երևույթը, որը կրում է «մատերիայի աննիհիլիացիա» (ոչնչացում) անունը, որոշ ֆիզիկոսների առիթ է տվել հայտարարելու, թե այդ պրոցեսի ժամանակ «մատերիան չքանում է», վերածվելով զուտ էներգիայի։ Բնագետների ճնշող մեծամասնությունը վաղուց արդեն համոզվել է, որ այս դեպքում կատարվում է ոչ թե մատերիայի ոչնչացում, այլ նրա փոխարկում մի ձևից մյուսին, որի ժամանակ հանգստի մասսան փոխարկվում է շարժման մասսայի։ Սակայն այժմ էլ առանձին ֆիզիկոսներ նման փաստերից այն «էներգետիկական» եզրակացությունն են հանում, թե իբր մատերիան «չքանում է», վերածվում էներգիայի՝ ինչ-որ ոչ նյութական բանի։ Ամերիկյան ֆիզիկոս Մարշալը ուղղակի գրում է, որ «Մատերիան էներգիայի ձևերից մեկն է»։ Այս կարծիքին տուրք է տալիս նաև Հայզենբերգը։

Քննադատելով էներգետիզմը, Լենինն իր «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» գրքում սպառիչ կերպով ցույց է տվել, որ էներգիան մատերիայի շարժումն է և անպայման պետք է ունենա նյութական կրող, որովհետև չկա շարժում առանց մատերիայի, ինչպես և չկա մատերիա առանց շարժման։ Էներգիան մատերիայի շարժումն է՝ անկախ նրանից, թե մատերիան մասնիկների, ճառագայթման, մեծ մարմինների, թե մի որևէ այլ ձևով է հանդես գալիս։

Ժամանակակից ֆիզիկայի մեջ իդեալիստական պատկերացում կա նաև մաթեմատիկական հավասարումների նկատմամբ։ Որոշ ֆիզիկոսներ չեն ըմբռնում այն փաստը, որ մաթեմատիկական հավասարումներն ինքնագո չեն, որ նրանք վերջիվերջո արտահայտում են մատերիայի այս կամ այն վիճակը, այս կամ այն հատկությունը, այս կամ այն օրինաչափությունը։

Ժամանակակից ֆիզիկայի մեջ «ֆիզիկական» իդեալիզմի այս արտահայտություններն ապացուցում են Վ. Ի. Լենինի այն դրույթի ճշմարտությունը, որ արդի իդեալիզմը սպեկուլյացիա է անում ֆիզիկայի զարգացման դժվարությունների վրա, ծնվում է այդ ֆիզիկայի առաջընթացից և անխուսափելիորեն պետք է հաղթահարվի հենց այդ առաջընթացի պրոցեսում՝ դիալեկտիկական մատերիալիստական մտածողությանը հանգելու շնորհիվ։ Նման

պրոցես, ինչպես և 50 տարի առաջ Վ. Ի. Լենինի գրքի լույս տեսնելու ժամանակ, տեղի է ունենում նաև այժմ։ Ֆիզիկոսների ճնշող մեծամասնությունը կանգնած է մատերիալիզմի դիրքերի վրա և տարրական մասնիկները դիտում է որպես մատերիայի որակական նոր կացություններ։ Նույնիսկ այն ֆիզիկոսները, որոնք ընդհանուր հարցերում իդեալիստական հայացքներ են ունեցել, այժմ ֆիզիկայի նոր նվաճումների և դիալեկտիկան ավելի խոր ըմբռնելու հետևանքով աստիճանաբար վերանայում են այդ հայացքները։ Այդ տեսակետից առանձնապես հատկանշական է Նիլս Բորի հոդվածը, որը վերջերս հրապարակվել է «Успехи физических наук» ամսագրում։ Այստեղ Բորը մատերիալիստորեն ուղղում է իր մի շարք նախկին իդեալիստական եզրակացությունները, ընդունում է, որ ատոմի ներսում կա օբյեկտիվ պատճառականություն, որ ատոմական օբյեկտների հատկությունները ոչ պակաս ռեալ են, քան մեր դիտման սարքերը։

Ո՞րն է այս երևույթի պատճառը։ Նախ այն, որ ֆիզիկայի զարգացումն օբյեկտիվորեն ծնում է դիալեկտիկական մատերիալիզմ, ինչպես նշում էր Վ. Ի. Լենինը, մյուս կողմից, այստեղ անտարակույս է մարքսիստական դիալեկտիկական մատերիալիզմի այս կամ այն ձևով ազդեցությունը, որը սովետական գիտնականների հետ շփվելու, նրանց գործերին ծանոթանալու կամ մարքսիստական փիլիսոփայությունն ուսումնասիրելու արդյունք է։ Բորի վերոհիշյալ հոդվածը, ինչպես նշում է ակադեմիկոս Ֆոկը, ներշնչված է հենց սովետական գիտնականների հետ ունեցած զրույցներով։ Այս տեսակետից հատկանշական է այն, որ մեր օրերում համաշխարհային հռչակ ունեցող մի շարք ֆիզիկոսներ, սկսելով տարերային մատերիալիզմից, վերջիվերջո հանգեցին մարքսիստական դիալեկտիկական մատերիալիզմին (Ֆրեդերիկ Ժոլիո-Կյուրի, Ջոն Բեռնալ, Լուի դե-Բրոյլ և շատ ուրիշներ)։

Ֆիզիկայի խորացումը մատերիայի կառուցվածքի մեջ ունի ո՛չ միայն տեսական, այլև անմիջական պրակտիկ արժեք։ Այդ հետազոտությունները հանգեցին ներատոմային էներգիայի օգտագործմանը, մարդկության ձեռքը տալով բնության ուժերի վրա իշխելու, դրանք իրենց օգտին ծառայեցնելու մի նոր հզոր միջոց։ Ճիշտ է, այս բնագավառում էլ իմպերիալիստական ռեակցիան ունեցավ իր ազդեցությունը, կյանքի կոչելով մարդկության ոչնչացմանը ծառայող մահաբեր զենքը՝ ատոմային և ջրածնային ռումբերը, սակայն գիտության զարգացումը, մասնավորապես սոցիալիստական սիստեմի երկրներում, տանում է դեպի ներատոմային ուժերի ավելի ու ավելի լայն, խաղաղ նպատակներով օգտագործումը։

Սոցիալիստական սիստեմի երկրներում բնագիտության բոլոր ճյուղերի՝ ֆիզիկայի, քիմիայի, մաթեմատիկայի, կենսաբանության բուռն զարգացումը և դրա շնորհիվ ստացված հոյակապ արդյունքները՝ աշխարհում ինչպես առաջին, այնպես էլ ամենահզոր ատոմային էլեկտրակայանների գործարկումը, երկրի արհեստական արբանյակների և տիեզերական հրթիռի արձակումը, ռադիոակտիվ իզոտոպները բուժական և այլ խաղաղ նպատակներով գործադրելը, ատոմային սառցահատի կառուցումը և բազմաթիվ այլ նվաճումներ, բնագիտության զարգացման մասին լենինյան գաղափարների փայլուն տրիումֆն են։ Դիալեկտիկական մատերիալիզմով զինված սովետական գիտնականների նվաճումները հարգանք ու հիացմունք են առաջացրել ամբողջ աշխարհում։ Մասնավորապես մատերիայի կառուցվածքի հետազոտության և



դրա վրա հիմնված էներգիայի նոր աղբյուրների հայտնագործման բնագավառում լայն ճանաչում են գտել սովետական գիտնականներ Ն. Սեմյոնովի, Վ. Կուրչատովի, Դ. Բլոխինցևի, Ի. Ջերենկովի և շատ ու շատ ուրիշների աշխատանքները։

Արդի բնագիտությունը օրըստօրե ավելի է խորանում մատերիայի կառուցվածքի մեջ, ավելի ճիշտ ու հիմնավոր պատկերում մատերիալ աշխարհը և բացում բնության ուժերի օգտագործման նորանոր հնարավորություններ։ Հեռու չէ այն օրը, երբ տեխնիկայի ամենաբազմազան բնագավառներում էներգիայի հուսալի և էժան աղբյուր կդառնան ատոմային շարժիչները, տիեզերական տարածությունները կճեղքեն ատոմային շարժիչ ունեցող մարդատար հրթիռները, ատոմային էներգիայի լայն օգտագործման շնորհիվ հնարավոր կլինի ջուր մատակարարել անապատներին, հալեցնել բևեռային սառույցները, դարձնելով դրանք ծաղկած այգեստաններ, առաջացնել արհեստական անձրև և ըստ անհրաժեշտության կարգավորել եղանակը։ Այս բոլորը երազներ չեն, այլ բնագիտության նվաճումների վրա հիմնվող ռեալ հեռանկարներ։

Մարդկության դեպի կոմունիզմ օրըստօրե լայնացող առաջընթացի մեջ գնալով մեծանում է տեխնիկական գիտությունների նշանակությունը, աճում է մարդկության համար բարեկեցության նոր աղբյուրներ հայտնագործելու նրանց կարողությունը։ Կյանքը վերստին ապացուցում է Վ. Ի. Լենինի հիսուն տարի առաջ գրած իմաստուն խոսքերի ճշմարտությունը. «Մարդկային միտքը շատ արտասովոր բաներ է հայտնագործել բնության մեջ և է՛լ ավելի կհայտնագործի, դրանով իր իշխանությունը մեծացնելով նրա վերաբերմամբ...»։

---

# ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՖՈՒՆԿՑԻԱՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Վ. Դ. ԴԱՐԲԻՆՅԱՆ

*Հասարակության զարգացման ժամանակակից էտապում կապիտալիզմից սոցիալիզմին, կոմունիզմին անցումը հանդիսանում է միլիոնավոր մարդկանց անմիջական պրակտիկայի խնդիրը։ Այդ պատճառով էլ պրոլետարիատի դիկտատուրայի, սոցիալիստական պետության ֆունկցիաների, աշխատանքի մեթոդների ու ձևերի հարցը դարձել է սոցիալիզմի թեորիայի և պրակտիկայի ամենահրատապ հարցերից մեկը։ Դրանով պետք է բացատրել այն հույժ կարևոր նշանակությունը, որ ՍՄԿՊ XXI համագումարը նվիրեց այդ հարցի մշակմանը։ ՍՍՌՄ-ում և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման պրակտիկայի ընդհանրացման հիման վրա համագումարը մի շարք դրույթներով հարստացրեց պրոլետարիատի դիկտատուրայի և սոցիալիստական պետության մարքսիստական-լենինյան ուսմունքը։*

*«Պրոլետարիատի դիկտատուրա» հասկացությունը հասարակական կյանքի զարգացման օրինաչափությունների գիտական ճանաչողության անհրաժեշտ ատրիճաններից մեկն է, որին մարդկային մտածողությունը հասել է աբստրահման երկարատև ու չափազանց բարդ պրոցեսի միջոցով։ Այդ հասկացությունն արտահայտում է կապիտալիստական հասարակությունը ռևոլյուցիոն ձևով սոցիալիստականի վերափոխելու պատմականորեն անհրաժեշտ, օբյեկտիվ պրոցեսի բովանդակությունը։*

*Պրոլետարիատի դիկտատուրան կապիտալիզմից կոմունիզմին անցման ընդհանուր քաղաքական օրինաչափություն է, պարտադիր ու բացարձակորեն անհրաժեշտ բոլոր այն երկրների համար, որոնք թևակոխում են սոցիալիզմի, կոմունիզմի կառուցման ուղին։ Այն ստեղծվում է բուրժուազիայի քաղաքական իշխանությունը տապալելու և շահագործողական պետությունը ջարդելու պրոցեսում ու սրա փոխարեն և հանդես է գալիս որպես հին հասարակական հարաբերությունների ամբողջությունը ռևոլյուցիոն ձևով սոցիալիստականի վերափոխելու, նոր, սոցիալիստական հասարակական հարաբերություններ ստեղծելու հիմնական գործիք։ Պրոլետարիատի դիկտատուրայի խնդիրն է. ճնշել հին հասարակարգը վերականգնելու շահագործող դասակարգերի բոլոր փորձերը, պաշտպանել սոցիալիստական ռևոլյուցիայի նվաճումներն արտաքին հարձակումներից, ապահովել ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ սոցիալիստական արտադրահարաբերությունների հաստատումն ու ամրապնդումը, արտադրողական ուժերի արագ զարգացումը, սոցիալիզմի հունի մեջ ներգրավել միլիոնավոր մանր արտադրողների, ապահովել հասարակության ան-*



*դամների գիտակցության աճը, պայքար մղել ամեն մի հակասոցիալիստական տենդենցի դեմ։*

*Պրոլետարիատի դիկտատուրան ամենից առաջ ռևոլյուցիոն բռնություն է ուղղված շահագործող դասակարգերի դեմ՝ ինչպես երկրի ներսում, այնպես էլ նրա սահմաններից դուրս։ Վ. Ի. Լենինը մատնանշում է, որ դիկտատուրա հասկացության ճշգրիտ գիտական իմաստը որևէ դասակարգի կողմից հակառակորդ դասակարգի կամ դասակարգերի նկատմամբ կիրառվող սիստեմատիկ բռնությունն է։ Բայց պրոլետարիատի դիկտատուրան միայն բռնություն չէ, թեև ռևոլյուցիոն բռնությունը պրոլետարիատի դիկտատուրայի էական, անհրաժեշտ հատկանիշներից մեկն է, առանց որի դիկտատուրա չի լինում։ Պրոլետարիատի դիկտատուրայի մեջ ամենագլխավորը նրա ստեղծագործական, տնտեսական-կազմակերպչական դաստիարակչական աշխատանքն է։ «Դրանում է էությունը։ Դրանում է կոմունիզմի անխուսափելի լիակատար հաղթանակի ուժի աղբյուրը և գրավականը»,— ընդգծում է Վ. Ի. Լենինը։ Պրոլետարիատի դիկտատուրայի դիալեկտիկական բովանդակությունն այնպիսին է, որ նա միևնույն ժամանակ հանդես է գալիս և՛ որպես ռևոլյուցիոն բռնություն, և՛ որպես ստեղծագործական, կազմակերպչական, դաստիարակչական խաղաղ աշխատանքի գործիք։ «Պրոլետարիատի դիկտատուրան համառ պայքար է՝ արյունոտ ու անարյուն, բռնի ու խաղաղ, ռազմական ու տնտեսական, մանկավարժական ու ադմինիստրատորական պայքար հին հասարակության ուժերի ու տրադիցիաների դեմ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 31, էջ 35)։*

*Այս երկու հատկանիշները՝ ռևոլյուցիոն բռնությունը և խաղաղ ստեղծագործական աշխատանքը պրոլետարիատի դիկտատուրայի առավել ընդհանուր էական հատկանիշներն են, նրա երկու հիմնական կողմերը,* առանց որոնց անճնարին է դիկտատուրան: *Դրանք պրոլետարիատի դիկտատուրայի ատրիբուտներն են և պարտադիր ամենուրեք ու ամեն ժամանակ՝ երբ որևէ երկիր կապիտալիզմից անցում է կատարում կոմունիզմին։ Պրոլետարիատի դիկտատուրայի այս երկու հիմնական կողմերը դիալեկտիկորեն կապված են միմյանց հետ և փոխադարձաբար լրացնում են միմյանց հին հասարակությունը ռևոլյուցիոն ձևով սոցիալիստականի վերափոխելու պրոցեսում։ Բայց, ինչպես ցույց է տալիս սոցիալիստական ռևոլյուցիայի, սոցիալիզմի ու կոմունիզմի շինարարության պրակտիկան, տարբեր երկրներում, հասարակական-պատմական տարբեր միջավայրերում, կապիտալիզմից կոմունիզմին անցնելու շրջանի տարբեր էտապներում, հասարակության սոցիալիստական վերափոխման ընդհանուր խնդրի այս կամ այն կողմի առաջին պլանում հանդես գալու հրատապությունը պայմանավորում է պրոլետարիատի դիկտատուրայի այդ կողմերից որևէ մեկի առաջին պլանի վրա մղվելը, իսկ մյուսի ժամանակավորապես կծկվելը։*

*Պրոլետարիատի դիկտատուրան սոցիալիստական պետական օրգանների և հասարակական կազմակերպությունների մի ամբողջական ներդաշնակ սիստեմ է՝ Կոմունիստական պարտիայի ղեկավար դերով։ Կոմունիստական պարտիան համախմբում ու միավորում է աշխատավորների մյուս բոլոր կազմակերպություններին և նրանց գործունեությունն ուղղում սոցիալիզմի, կոմունիզմի կառուցման միասնական նպատակին։ Առանց Կոմունիստական պարտիայի ղեկավար դերի պրոլետարիատի դիկտատուրան անհնարին է։ Ընդ որում դեպի*

կոմունիզմ հասարակության առաջընթացին համեմատ երկրի տնտեսական ու քաղաքական կյանքում նրա դերը գնալով ուժեղանալու է։

Սոցիալիստական պետությունը պրոլետարիատի դիկտատուրայի պետական ձև է, որի հիմնական ֆունկցիաները, պրոլետարիատի դիկտատուրայի կողմերի համեմատ, ընդգրկում են գործողության ավելի նեղ ոլորտ։ Սակայն, չնայած դրան, սոցիալիստական պետության հիմնական ֆունկցիաներն ունեն գործունեության հարաբերականորեն ինքնուրույն բնագավառներ։

Սոցիալիստական պետության ֆունկցիաները մարքսիզմ-լենինիզմը դիտում է պատմական ծագման, զարգացման և մահվան տեսանկյունով՝ որպես երևույթներ, որոնք պայմանավորված են օբյեկտիվորեն գոյություն ունեցող որոշակի պատճառներով, և սկսում են մահանալ հենց որ անհետանում, վերանում են նրանց ծնող պատճառները։

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ՈՐՊԵՍ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ԲՌՆՈՒԹՅՈՒՆ

Պրոլետարիատի դիկտատուրայի ռևոլյուցիոն բռնության կողմն ամենից առաջ արտահայտվում է շահագործող դասակարգերի դիմադրությունը ճնշելու՝ սոցիալիստական պետության ֆունկցիայի ձևով։ Այդ ֆունկցիայի անհրաժեշտությունը պատմականորեն պայմանավորված է նրանով, որ պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումից հետո նրա դասակարգային թշնամիները միանգամից չեն անհետանում, այլ շարունակում են գոյություն ունենալ կապիտալիզմից սոցիալիզմին անցման ամբողջ շրջանի ընթացքում և տարբեր ձևերով դիմադրություն ցույց տալ պրոլետարիատին, դիմադրություն, որը հաճախ վեր է ածվում հին կարգերը վերականգնելու բացահայտ փորձերի։

Հետևապես, պրոլետարիատի դիկտատուրայի պետության կողմից շահագործող դասակարգերի դիմադրությունը ճնշելու ֆունկցիան պայմանավորված է անցման շրջանում շահագործող դասակարգերի գոյությամբ և պրոլետարիատի դեմ նրանց մղած պայքարով (այսինքն՝ անմիջականորեն բխում է անցման շրջանի հասարակության դասակարգային կառուցվածքից)։ Ընդ սմին, նայած շահագործող դասակարգերի դիմադրության ձևերին, այդ ֆունկցիան պրոլետարիատի դիկտատուրայի պետությունն իրականացնում է տարբեր ձևերով ու մեթոդներով՝ ռազմական, տնտեսական, քաղաքական և այլն։

Անտագոնիստական դասակարգերի վերացմամբ մահանում է նաև շահագործող դասակարգերի դիմադրությունը ճնշելու սոցիալիստական պետության ֆունկցիան։ Այսպես, ՍՍՌՄ-ում շահագործող դասակարգերի վերացումը, սոցիալիզմի հաղթանակը պայմանավորեցին Սովետական պետության այդ ֆունկցիայի մահացումը։ Բայց այդ նշանակու՞մ է արդյոք, թե սոցիալիզմի կառուցմամբ վերանում է ռևոլյուցիոն բռնության անհրաժեշտությունն ընդհանրապես։ Իհարկե, ոչ։ Ռևոլյուցիոն բռնության անհրաժեշտությունը երկրի ներսում պահպանվում է այնքան ժամանակ, քանի դեռ անհնարին է իրականացնել կոմունիզմի հիմնական սկզբունքը, քանի դեռ մնում են շահագործող դասակարգերի մնացորդները, քանի դեռ մարդկանց գիտակցության մեջ պահպանվում են բուրժուական իդեոլոգիայի մնացուկները, մի խոսքով, ընդհուպ մինչև կոմունիզմի լիակատար հաղթանակը։ «Առանց բանվորների և գյուղացիների ուղղակի թշնամիների դեմ ուղղված ռևոլյուցիոն բռնության անհնար է կոտրել այդ շահագործողների դիմադրությունը։ Իսկ մյուս կողմից, ռևոլյուցիոն բռնությունը չի կարող չարտահայտվել նաև բուն աշխատավոր մասսայի երերուն, անկայուն տարրերի նկատմամբ» (В. И. Ленин, Речь на четвертой конференции губернских чрезвычайных комиссий, «Коммунист», № 5, 1957, стр. 21)։



Կապիտալիստական շրջապատման պայմաններում սոցիալիզմի հաղթանակից հետո պրոլետարիատի դիկտատուրայի ռևոլյուցիոն բռնությունն իր ամբողջ սրությամբ ուղղվում է տվյալ երկրի սահմաններից դուրս։ Իսկ երկրի ներսում ռևոլյուցիոն բռնությունն այնուհետև կիրառվում է դասակարգային թշնամու ագենտուրայի և հասարակության այն անդամների դեմ, ովքեր համակված լինելով մանրբուրժուական գաղափարներով, կաշկանդում են հասարակության առաջընթացը։ Սոցիալիզմի հաղթանակից հետո երկրի ներսում պրոլետարիատի դիկտատուրայի ռևոլյուցիոն բռնությունը որոշ չափով դադարում է դասակարգային պայքարի ձև լինելուց, որովհետև շահագործող դասակարգեր այլևս գոյություն չունեն և այս իմաստով մահանում է նաև շահագործող դասակարգերի դիմադրությունը ճնշելու ֆունկցիան։

Պրոլետարիատի դիկտատուրայի ռևոլյուցիոն բռնության կողմն իր արտահայտությունն է գտնում նաև սոցիալիստական սեփականությունը պաշտպանելու՝ պրոլետարական պետության օրգանների գործողության մեջ։ Պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը չի կարող անտարբեր լինել դեպի իր տնտեսական հիմքը, այլ կոչված է ամեն կերպ պաշտպանելու, ամրապնդելու և ընդարձակելու այն՝ որպես կապիտալիստական հասարակարգի դեմ նոր հասարակարգի վերջնական հաղթանակի գրավական։ Հետևապես, սոցիալիստական սեփականության պաշտպանության անհրաժեշտությունը ծագում է հենց իր՝ սոցիալիստական սեփականության առաջացման հետ միասին, այսինքն՝ տնտեսության ասպարեզում սոցիալիստական վերափոխումների իրականացման սկզբից։ Պրոլետարիատի դիկտատուրայի պատմական փորձը ցույց է տալիս, որ այդ ֆունկցիայի անհրաժեշտությունը պահպանվում է նաև սոցիալիստական պետության զարգացման երկրորդ գլխավոր փուլում։

Բայց սոցիալիստական սեփականությունը պաշտպանելու պրոլետարիատի դիկտատուրայի պետության ֆունկցիան անփոփոխ չէ, այլ փոփոխվում, զարգանում է հասարակության դասակարգային կառուցվածքի և մարդկանց գիտակցության փոփոխման համեմատ։ Պահպանելով միևնույն էությունը՝ սոցիալիստական սեփականության պաշտպանություն, սոցիալիստական պետության այդ ֆունկցիան կապիտալիզմից սոցիալիզմին անցման շրջանում դրսևորվում է զգալիորեն այլ ձևով, քան սոցիալիզմի հաղթանակի պայմաններում։ Դա բացատրվում է նրանով, որ պրոլետարիատի դիկտատուրայի առաջին փուլում սոցիալիստական պետությունն իր այդ ֆունկցիայի իրականացման ժամանակ գործ ունի ոչ միայն գողերի ու հափշտակիչների, այլև դասակարգային թշնամու հետ, որը պրոլետարիատի դիկտատուրայի տնտեսական հիմքը խախտելու նպատակով դիմում է սոցիալիստական սեփականության մասսայական վատնումների, հափշտակումների, գործարանների, ֆաբրիկաների և հանքահորերի սարքավորումների ավերումների, հրկիզումների և այլ քայլերի։ Նման պայմաններում գերակշռում են գլխավորապես պատժիչ մեթոդները։

Պրոլետարիատի դիկտատուրայի զարգացման երկրորդ գլխավոր փուլում

սոցիալիստական սեփականությունը պաշտպանելու ֆունկցիան իրականացնելիս, պրոլետարիատի դիկտատուրայի պետությունն արդեն գործ ունի մեծ մասամբ ոչ թե շահագործող դասակարգերի, այլ հասարակության որոշ հետամնաց անդամների հետ, որոնց մեջ դեռևս ուժեղ է ուրիշի հաշվին ապրելու, պոկիր հասարակությունից որքան կարող ես շատ՝ չտալով ոչինչ, բուրժուական հոգեբանությունը։ Վ. Ի. Լենինը պրոլետարիատի դասակարգային թշնամուն և նոր հասարակության այդ հետամնաց անդամներին համարում էր միևնույն մեդալի երկու կողմերը և կոչ էր անում ամենայն վճռականությամբ ու խստությամբ պայքարել նրանց դեմ։

Բայց և այնպես, նոր պայմաններում սոցիալիստական սեփականությունը պաշտպանելու ֆունկցիայի իրականացման ժամանակ գնալով ավելի ու ավելի գերակշռող են դառնում դաստիարակչական մեթոդները։ Սոցիալիստական սեփականությունը պաշտպանելու պրոլետարական պետության ֆունկցիան նույնպես հավիտենական չէ, ինչպես և ինքը՝ պրոլետարիատի դիկտատուրան։ Սոցիալիստական հասարակության անդամների նյութական բարեկեցության և կոմունիստական գիտակցականության բարձրացմանը համեմատ, սոցիալիստական սեփականության պաշտպանության ֆունկցիան գնալով ավելի ու ավելի կկորցնի իր նախկին նշանակությունը և կմահանա կոմունիզմի լիակատար հաղթանակի պայմաններում, երբ հասարակությունը կսկսի իրականացնել «յուրաքանչյուրից ըստ իր ընդունակությունների, յուրաքանչյուրին ըստ իր պահանջմունքների» սկզբունքը։

Պրոլետարիատի դիկտատուրայի ռևոլյուցիոն բռնության կողմը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու շրջանում արտահայտվում է նաև սոցիալիստական ռևոլյուցիայի նվաճումներն արտաքին հարձակումից պաշտպանելու և կապիտալիստական շահագործման լծի տակ գտնվող մյուս երկրների աշխատավորական մասսաներին օգնություն ցույց տալու սոցիալիստական պետության ֆունկցիայի ձևով։ Դա պայմանավորված է նրանով, որ միջազգային բուրժուազիան, ինչպես հաստատում է պատմական փորձը, երբեք չի հաշտվում այս կամ այն երկրում շահագործողների պարտության մտքի հետ, ամեն կերպ օգնում է նրանց վերականգնելու հին կարգերը և սպասում հարմար մոմենտի հաղթանակած բանվոր դասակարգի դեմ ռազմական ինտերվենցիա սկսելու համար։

Այժմ, երբ սոցիալիստական մեկ երկրի փոխարեն գոյություն ունի սոցիալիզմի համաշխարհային սիստեմ, այդ երկրներից յուրաքանչյուրում պրոլետարիատի դիկտատուրայի պետության մատնանշված ֆունկցիայի գործողության ոլորտը զգալիորեն ընդարձակվում և ձեռք է բերում նոր երանգ։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առկայության պայմաններում պրոլետարական ինտերնացիոնալիզմի հետևողական կիրառումը, սոցիալիստական երկրների տնտեսակարգի, իդեոլոգիայի և վերջնական նպատակի միասնությունը պրոլետարիատի դիկտատուրայի ֆունկցիաներն իրականացնող ամեն մի պետության պարտավորեցնում է անտարբեր չլինել դեպի սոցիալիստական մյուս երկրների ճակատագիրը։

Նոր պայմաններում սոցիալիստական ամեն մի երկրի շահերի ոլորտը դուրս է գալիս յուրաքանչյուր առանձին երկրի սահմաններից և ընդգրկում է ամբողջ սոցիալիստական լագերը։ Հետևապես, սոցիալիստական սիստեմի մեջ մտնող պետությունները սոցիալիստական ռևոլյուցիայի նվաճումներն արտա-



քին վտանգից պետք է պաշտպանեն ո՛չ թե առանձին-առանձին, մեկուսացած, այլ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի բոլոր պետությունների միացյալ ուժերով։ Միջազգային իմպերիալիզմը փորձում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմին հակադրել կապիտալիզմի համաշխարհային սիստեմի միասնական ճակատը, պառակտել սոցիալիստական երկրների եղբայրական դաշինքը, որպեսզի այնուհետև հեշտ լինի նրանց հետ հաշիվ տեսնել առանձին-առանձին։ Ուստի միանգամայն սխալ և վնասակար է ժամանակակից ռևիզիոնիզմի կողմից պրոպագանդվող սոցիալիստական երկրների այսպես կոչված «գոյակցության թեորիան», որը, մի կողմից, թերագնահատում է կապիտալիստական շրջապատման վտանգը, մյուս կողմից՝ սոցիալիստական երկրների փոխհարաբերությունները սահմանափակում է սոսկ միմյանց ներքին գործերին չմիջամտելու սկզբունքով, մինչդեռ սոցիալիստական երկրների փոխհարաբերությունների մեջ գլխավորը և էականը պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներով իրականացվող բազմակողմանի եղբայրական փոխադարձ օգնությունն է։

Սոցիալիստական ռևոլյուցիայի նվաճումներն արտաքին հարձակումից պաշտպանելու սոցիալիստական պետության ֆունկցիայի անհրաժեշտությունը կվերանա և այն իրականացնող օրգանները կսկսեն մահանալ, երբ կանհետանա կապիտալիզմը, հետևապես և արտաքին հարձակման վտանգը։ Իսկ մինչև այդ, արտաքին թշնամուց ռևոլյուցիայի նվաճումները պաշտպանելու սոցիալիստական պետության ֆունկցիաներն իրականացնող օրգանների անհրաժեշտության ամեն մի թերագնահատում թեորիապես սխալ է, իսկ գործնականում ձեռնտու միայն միջազգային իմպերիալիզմին։

Քանի դեռ կապիտալիզմը պահպանվում է, սոցիալիստական պետություններն ստիպված են ամեն կերպ ամրապնդել և կատարելագործել իրենց զինված ուժերը, որոնք անհրաժեշտ են ռևոլյուցիայի նվաճումներն արտաքին հարձակումից պաշտպանելու համար։

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ, ՏՆՏԵՍԱԿԱՆ-ԴԱՍՏԻԱՐԱԿՉԱԿԱՆ ԴԵՐԸ

Պրոլետարիատի դիկտատուրայի լենինյան բնորոշումը ելնում է այն բանից, որ սոցիալիստական արտադրահարաբերությունների ստեղծումը, էկոնոմիկայի պլանային և կենտրոնացված վարումը, ոչ-պրոլետարական աշխատավորական մասսաների, և ընդհանրապես նոր հասարակության բոլոր անդամների դաստիարակումը կոմունիզմի ոգով, նրանց պետական ղեկավարումը և սոցիալիստական շինարարության մեջ ներգրավումը, հանդիսանում է պրոլետարական պետության գործունեության գլխավոր և հիմնական բովանդակությունը։ Պրոլետարիատի դիկտատուրայի պետության գործունեության այդ ընդհանուր մեծ ուղղությունը անցման շրջանում մարմնավորվում է նրա ստեղծագործական, տնտեսական-դաստիարակչական ֆունկցիաների ձևով։

Պրոլետարիատի դիկտատուրայի նպատակը, գլխավոր և հիմնական խնդիրը սոցիալիզմի, կոմունիզմի կառուցումն է, կապիտալիզմի համեմատ աշխատանքի ավելի բարձր արտադրողականության ստեղծումը, դասակարգերի գոյության, մարդու կողմից մարդու շահագործման ամեն մի հիմքի վերացումը։ Այդ խնդիրները պրոլետարիատը միայնակ, առանց դաշնակից-

ների լուծել չի կարող։ Դրանք լուծելու համար բանվոր դասակարգը պետք է ոչ-պրոլետարական մասսաներին՝ քաղաքային մանր բուրժուազիային, ինտելիգենցիային և հատկապես աշխատավոր գյուղացիությանը վերջնականապես կտրի բուրժուազիայից, նրանց համոզի խոշոր սոցիալիստական արտադրության առավելությունների մեջ։ Վ. Ի. Լենինի գիտական մեծագույն ծառայություններից մեկն այն է, որ նա «պրոլետարիատի դիկտատուրա» հասկացությունը բացահայտեց պրոլետարիատի դաշնակիցների հարցի տեսանկյունով, ցույց տվեց, որ պրոլետարիատի դիկտատուրան բանվոր դասակարգի դասակարգային դաշինքի հատուկ ձև է գյուղացիության և աշխատավորների ոչ-պրոլետարական մյուս խավերի հետ՝ բանվոր դասակարգի ղեկավար դերով։ Պրոլետարիատի և գյուղացիության դաշինքի պահպանումը Լենինը համարում է «դիկտատուրայի բարձրագույն սկզբունքը»։

Վ. Ի. Լենինը Երկրորդ ինտերնացիոնալի «սոցիալիստների» գլխավոր սխալներից մեկը համարում էր այն, որ նրանք աշխատավոր բնակչության մեծամասնությունը բուրժուազիայի ազդեցությունից կտրելու, նրանց պրոլետարիատի կողմը գրավելու և նրանց հետ պրոլետարիատի դաշինքն ամրապնդելու խնդրի իրականացումը սահմանափակում էին «բուրժուազիայի տիրապետության ժամանակ ձայների մեծամասնություն ձեռք բերելով»։ Նրանք չէին հասկանում, որ պրոլետարիատը բնակչության մեծամասնությունն իր կողմը գրավելու և նրա հետ իր դաշինքն ամրապնդելու համար պետք է տապալի բուրժուազիային, պետական իշխանությունը վերցնի իր ձեռքը, հաստատի իր դիկտատուրան և օգտագործի այն աշխատավորների շրջանում բուրժուազիայի ազդեցությունը ջախջախելու համար՝ աշխատավորների տնտեսական կարիքները շահագործողների հաշվին ռևոլյուցիոնորեն բավարարելու միջոցով։ Երկրորդ ինտերնացիոնալի օպորտունիստների կողմից պրոլետարիատի դիկտատուրան չհասկանալու գլխավոր պատճառը Վ. Ի. Լենինը համարում է այն, որ նրանք չէին գիտակցում «...թե պետական իշխանության մի դասակարգի՝ պրոլետարիատի, ձեռքում գտնվելը կարող է և պետք է գործիք դառնա պրոլետարիատի կողմը գրավելու ոչ-պրոլետարական աշխատավորական մասսաներին, գործիք՝ նվաճելու այդ մասսաներին բուրժուազիայից և մանրբուրժական պարտիաներից» (Երկեր, հատ. 30, էջ 327)։ Անցման շրջանում այդ նպատակին ուղղված պրոլետարիատի դիկտատուրայի գործունեությունն էլ հենց արտահայտում է նրա հիմնական ֆունկցիաներից մեկը՝ աշխատավոր մասսաներին բուրժուազիայի ազդեցությունից վերջնականապես կտրելու, նրա հետ պրոլետարիատի դաշինքն ամրապնդելու և սոցիալիստական շինարարության մեջ ներգրավելու պրոլետարիատի դիկտատուրայի պետության ֆունկցիան։ Այդ ֆունկցիան իր անհրաժեշտությունը պահպանում է կապիտալիզմից կոմունիզմին անցման ամբողջ շրջանի ընթացքում, անցման շրջանի տարբեր էտապներում ու տարբեր երկրներում կիրառվելով տարբեր մեթոդներով, ծավալվելով տարբեր ձևերի մեջ և կմահանա միայն լիակատար կոմունիզմի ժամանակ, երբ այլևս չեն լինի դասակարգեր ու դասակարգային տարբերություններ։

Պրոլետարիատի դիկտատուրայի ստեղծագործական, կազմակերպչական, դաստիարակչական դերը կապիտալիզմից սոցիալիզմին անցման շրջանում արտահայտվում է նաև սոցիալիստական պետության ստեղծագործական, տնտեսական-կազմակերպչական ֆունկցիայի ձևով։ Այդ ֆունկցիան պայմանավորված է քաղաքական ասպարեզում սոցիալիստական ռևոլյուցիայի հենց հաջորդ օրը պրոլետարիատի առաջ ծառացող այնպիսի խնդիրների լուծման անհրաժեշտությամբ, ինչպիսիք են սոցիալիստական արտադրահարաբերությունների ստեղծումը և ամրապնդումը, սոցիալիստական շինարարության կազմակերպումը և ամբողջ ժողովրդական տնտեսության միասնական պլանային վարումը։



Պրոլետարիատի դիկտատուրայի պետության ստեղծագործական, տնտեսական-կազմակերպչական ֆունկցիան զարգանում և փոխվում է նոր հասարակության զարգացմանը և փոփոխմանը զուգընթաց։ Ընդ որում, սոցիալիստական պետության վերոհիշյալ ֆունկցիայի մեջ պետք է նկատի ունենալ նրա գործունեության հարաբերականորեն ինքնուրույն երկու ուղղություններ։ Առաջին՝ նոր սոցիալիստական արտադրահարաբերությունների ստեղծման նպատակին ուղղված գործունեությունը, որը հատկապես բնորոշ է պրոլետարիատի դիկտատուրայի պետության զարգացման առաջին փուլին և երկրորդ՝ ժողովրդական տնտեսության կենտրոնացված միասնական պլանային վարումը։ Սովորաբար, սխալ կերպով, պրոլետարիատի դիկտատուրայի պետության ստեղծագործական, տնտեսական-կազմակերպչական ֆունկցիա հասկացության տակ նկատի է առնվում միայն այս վերջին մոմենտը, մինչդեռ պրոլետարիատի դիկտատուրայի՝ որպես քաղաքական վերնաշենքի, տնտեսական դերը կապիտալիզմից կոմունիզմին անցման շրջանում արտահայտվում է ոչ միայն ժողովրդական տնտեսության միասնական պլանային վարման մեջ, այլև սոցիալիստական արտադրահարաբերությունների ստեղծման և ամրապնդման նպատակին ուղղված գործունեության ձևով, որը նույնպես էական է և կարևոր։ Սակայն, հարկավոր է ընդգծել, որ սոցիալիստական պետության գործունեության այդ երկու ուղղությունները հանդես են գալիս սերտորեն միահյուսված և ունեն գործողության միևնույն օբյեկտը, ուստի և հանդիսանում են սրա ստեղծագործական, տնտեսական-կազմակերպչական միասնական ֆունկցիան։

Այսպիսով, պրոլետարիատի դիկտատուրայի պետության այդ ֆունկցիան արտահայտվում է էկոնոմիկայի մեջ հին արտադրահարաբերությունների փոխարեն սոցիալիստական արտադրահարաբերությունների ստեղծման և ժողովրդական տնտեսության կենտրոնացված միասնական պլանային վարման մեջ։ Ընդ որում, չնայած հենց սկզբից այդ ֆունկցիայի գործողության օբյեկտ են հանդիսանում առանց բացառության ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառները՝ արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, տրանսպորտը, առևտուրը և այլն, սակայն նրա գործողության ոլորտն անցման շրջանի սկզբում համեմատաբար նեղ է և միայն հետագայում, սոցիալիզմի հաղթանակից հետո է ընդգրկում ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներն ամբողջությամբ։ Այս առավել ևս ակնբախ է դառնում, երբ հարցը քննարկում ենք այդ ֆունկցիայի մեջ մեր մատնանշած երկրորդ մոմենտի տեսանկյունով։ Նոր սոցիալիստական արտադրահարաբերությունների ստեղծման նպատակին ուղղված՝ պրոլետարիատի դիկտատուրայի օրգանների գործունեությունը հիմնականում ավարտվում է կապիտալիզմից սոցիալիզմին անցման շրջանում, մինչդեռ տնտեսական-կազմակերպչական գործունեությունը՝ ժողովրդական տնտեսության կառավարման իմաստով, գնալով ավելի ու ավելի է զարգանում։

*Սոցիալիստական պետության ստեղծագործական, տնտեսական-կազմակերպչական ֆունկցիան տարբեր երկրներում, պատմական տարբեր պայմաններում ունի իր դրսևորման կոնկրետ ձևերն ու աշխատանքի մեթոդները։ Այսպես, մի դեպքում սոցիալիստական արտադրահարաբերությունների ստեղծումը պրոլետարիատի դիկտատուրայի պետությունն իրականացնում է կապիտալիստական մասնավոր սեփականությունը էքսպրոպրիացիայի ենթարկելու ձևով (օրինակ ՍՍՌՄ), այլ պայմաններում՝ կապիտալիստական մասնավոր սեփականության փրկագնման ձևով (ժողովրդական դեմոկրատիայի որոշ երկրներում տարբեր չափերով)։ Այնուհետև, կապիտալիզմից կոմունիզմին անցման շրջանում տարբեր երկրներում և անցման շրջանի տարբեր էտապներում ժողովրդական տնտեսության պլանային վարման կենտրոնացածության աստիճանը և ձևերը, նայած իրերի դրությանը՝ ներքին և արտաքին, կարող են տարբեր լինել։*

*Տնտեսական-կազմակերպչական գործունեությունը Վ. Ի. Լենինը համարում էր սոցիալիստական պետության գործունեության այն ուղղությունը, որը կոչված է ավելի ու ավելի զարգանալու և որն ամենից երկար է պահպանվելու։ Այնուամենայնիվ, պրոլետարիատի դիկտատուրայի պետության այդ ֆունկցիան ևս հավիտենական չէ և պետության մահացման հետ միասին կմահանա նաև այն։ Կոմունիզմի լիակատար հաղթանակը ենթադրում է արտադրողական ուժերի բարձր զարգացած մակարդակ, այնպիսի արտադրողական ուժերի առակայություն, որոնք կարող են գործողության մեջ դրվել միայն հասարակության բազմաթիվ անդամների համաձայնեցված միատեղ գործունեությամբ։ Հետևապես, կոմունիզմի լիակատար հաղթանակի ժամանակ հասարակական ֆունկցիաների կենտրոնացումը մի ինչ-որ օրգանի ձեռքում, ժողովրդական տնտեսության միասնական, համաձայնեցված վարումը կլինի օբյեկտիվորեն անհրաժեշտ։ Ուստի կոմունիզմի լիակատար հաղթանակի ժամանակ կապիտալիզմից կոմունիզմին անցման շրջանի սոցիալիստական պետության ստեղծագործական, տնտեսական-կազմակերպչական ֆունկցիան կերպափոխված ձևով կպահպանվի որպես ժողովրդական տնտեսության կառավարման հասարակական ֆունկցիա։ Բայց հասարակական ֆունկցիաների կենտրոնացումն անպայմանորեն ենթադրում է հարկադրանքի որոշ տարրեր, ուրեմն այդ ֆունկցիան իրականացնող օրգանը կունենա այդպիսի որոշ լիազորություններ, բայց նա արդեն պետություն չի լինի, քանի որ այդ հարկադրանքն այլևս դասակարգային բնույթ չի ունենա։ «Հարկադրանքը» կկիրառվի որպես սոսկ «կառավարման միջոց»։*

*Կապիտալիզմից կոմունիզմին անցման շրջանում պրոլետարիատի դիկտատուրայի ստեղծագործական, կազմակերպչական-դաստիարակչական կողմն արտահայտող մյուս հիմնական ֆունկցիան սոցիալիստական պետության օրգանների կուլտուր-դաստիարակչական աշխատանքն է։ Այդ ֆունկցիայի անհրաժեշտությունը պայմանավորված է նրանով, որ քաղաքական ասպարեզում հաղթանակի հասնելուց հետո բանվոր դասակարգի առաջ՝ որպես հասարակության առավել կազմակերպված և դաստիարակված մասի, խնդիր է ծառանում, օգտագործելով իր դիկտատուրան, սոցիալիզմի և կոմունիզմի ոգով դաստիարակել ու վերադաստիարակել հասարակության բոլոր անդամներին, սոցիալիստական հեղաշրջումն իրականացնել ո՛չ միայն քաղաքականության և էկոնոմիկայի բնագավառում, այլև իդեոլոգիայի, հասա-*



*րակության անդամների գիտակցության բնագավառում, որովհետև միայն այդ դեպքում է հնարավոր ապահովել կոմունիզմի լիակատար հաղթանակը։ Սոցիալիզմի և կոմունիզմի ոգով նոր հասարակության անդամների դաստիարակումը և վերադաստիարակումը իրականացվում է սոցիալիստական շինարարության, սոցիալիզմի և կոմունիզմի տնտեսական հիմքերի կառուցման րում պրոցեսում։ Ուստի պրոլետարիատի դիկտատուրայի պետության կուլտուր-դաստիարակչական ֆունկցիան հանդես է գալիս վերջինիս ստեղծագործական, տնտեսական կազմակերպչական ֆունկցիաների հետ սերտորեն միահյուսված։ Սակայն, դրա հետ միասին պրոլետարիատի դիկտատուրայի կուլտուր-դաստիարակչական ֆունկցիան ունի գործողության իր համեմատաբար ինքնուրույն բնագավառը՝ սոցիալիստական հասարակության անդամների գաղափարական դաստիարակության և վերադաստիարակության բնագավառը։*

*Որքան բնակչության մեջ փոքր է պրոլետարիատի, այսինքն՝ հասարակության առավել կազմակերպված ու դաստիարակված անդամների քանակը, այնքան ավելի մեծ և կարևոր է պրոլետարիատի դիկտատուրայի դաստիարակչական դերը։ Սոցիալիստական հասարակարգի առաջընթացին համեմատ զարգանում, փոփոխվում և նոր ձևեր է ընդունում նաև պրոլետարիատի դիկտատուրայի պետության կուլտուր-դաստիարակչական ֆունկցիան։ Արդեն այժմ, կոմունիզմի ծավալուն կառուցման շրջանում Սովետական պետությունը թևակոխել է զարգացման մի այնպիսի փուլ, երբ բնակչության դաստիարակության և կուլտուրական սպասարկման հարցերը, ինչպես մատնանշեց ՍՄԿԿ XXI համագումարը, ավելի ու ավելի են անցնելու հասարակական կազմակերպություններին։*

*Հասարակության զարգացման ժամանակակից էտապում, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առկայության պայմաններում պրոլետարիատի դիկտատուրայի ստեղծագործական, կազմակերպչական-դաստիարակչական կողմը հանդես է գալիս նաև մեկ այլ նոր ձևով՝ սոցիալիստական երկրների տնտեսական սերտ համագործակցության և եղբայրական օգնության ֆունկցիայի ձևով։ Պրոլետարիատի դիկտատուրայի պետության այդ ֆունկցիան պատմական նոր պայմանների ծունդ է։ Ինչպես ընդգծեց ՍՄԿԿ XXI համագումարը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հետևողական կիրառումը պատմական նոր պայմաններում սոցիալիստական յուրաքանչյուր երկրից պահանջում է բազմակողմանի օգնություն ցույց տալ սոցիալիստական մյուս երկրներին սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործում, որպեսզի բոլոր սոցիալիստական երկրները կոմունիզմի կառուցման ուղիով գնան ընդհանուր, միասնական ճակատով։*

*Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրների միջև իրականացվող աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումը ապահովում է այդ երկրների բնական ռեսուրսների և տնտեսական պայմանների առավել ռացիոնալ օգտագործումը, արտադրության կոոպերացման և մասնագիտացման կազմակերպումը, որն իր հերթին տանում է դեպի հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացում, սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության տեմպերի հսկայական աճ։ Նոր պայմաններում դեպի կոմունիզմ ժողովուրդների շարժման օրինաչափությունն այնպիսին է, որ կոմունիզմի կառուցման պրոցեսում սոցիալիստական պետությունները կվե-*

րացնեն իրենց տնտեսական զարգացման մակարդակի տարբերությունները՝ տնտեսապես թույլ զարգացած երկրները առավել զարգացած երկրների մակարդակին բարձրացնելու ճանապարհով, և կոմունիզմի լիակատար հաղթանակին կհասնեն ընդհանուր ճակատով։

Ժողովուրդների միջև կայուն խաղաղությունն ու բարեկամությունը ապահովելու և ամրապնդելու սոցիալիստական պետության գործունեության մեջ դրսևորվում է նրա հիմնական ֆունկցիաներից մեկը։ Կոմունիստական պարտիայի կողմից ղեկավարվող սոցիալիստական պետությունը աշխատավորների շահերից բացի ուրիշ շահ չունի։ Իսկ աշխատավորների ամենակենսական շահերը պահանջում են պաշտպանել և ամրապնդել խաղաղությունն ու բարեկամությունը ժողովուրդների միջև։ Այդ պատճառով էլ սոցիալիստական պետության արտաքին քաղաքականության հիմքերի հիմքը խաղաղության և ժողովուրդների բարեկամության ամրապնդումն է։ Սոցիալիստական պետության այդ ֆունկցիան հատկապես կարևոր նշանակություն է ստանում մեր օրերում, երբ շնորհիվ սոցիալիզմի ու դեմոկրատիայի ուժերի հսկայական աճի, ինչպես մատնանշեց ՍՄԿՊ XXI համագումարը, այժմ արդեն ռեալ հնարավորություն է ստեղծվել պատերազմները հասարակության կյանքից իսպառ վերացնելու համար։

***

Այսպիսիք են սոցիալիստական պրակտիկայով հաստատված պրոլետարիատի դիկտատուրայի էությունն արտահայտող սոցիալիստական պետության հիմնական ֆունկցիաները կապիտալիզմից կոմունիզմին անցման շրջանում՝ կապիտալիզմի և սոցիալիզմի համաշխարհային սիստեմների առկայության պայմաններում։ Պրոլետարիատի դիկտատուրայի ռևոլյուցիոն բնության կողմն արտահայտող սոցիալիստական պետության ֆունկցիաները, լինելով հիմնական, միևնույն ժամանակ ինչպես հեռանկարային, այնպես էլ սկզբունքային տեսակետից օժանդակ ֆունկցիաներ են, որոնք պայմաններ են նախապատրաստում պրոլետարիատի դիկտատուրայի մեջ գլխավորը՝ ստեղծագործական, կազմակերպչական-դաստիարակչական կողմն արտահայտող ֆունկցիաների իրականացման համար, որոնց մեջ հատկապես վառ կերպով արտահայտվում է պրոլետարիատի դիկտատուրայի պետության՝ որպես քաղաքական վերնաշենքի ստեղծագործական դերը։

Ի տարբերություն պրոլետարիատի դիկտատուրայի ատրիբուտներ հանդիսացող երկու հիմնական կողմերի, կապիտալիզմից կոմունիզմին անցման շրջանում սոցիալիստական պետության որոշ ֆունկցիաներ մահանում են սպառելով իրենց խնդիրները, և ընդհակառակը, պրոլետարիատի դիկտատուրայի գործունեության պատմական նոր պայմանները, ինչպես նաև սոցիալիզմի ու կոմունիզմի շինարարության պրոցեսում բանվոր դասակարգի առաջ ծառացող նոր խնդիրները լուծելու անհրաժեշտությունը ծնում են նոր ֆունկցիաներ։ Ընդ որում կապիտալիզմից կոմունիզմին անցման ամբողջ շրջանում պրոլետարիատի դիկտատուրայի կողմերի և ֆունկցիաների զարգացման ու փոփոխման տեսակետից, ընդհանուր առմամբ, օրինաչափ է սոցիալիստական պետության ստեղծագործական, կազմակերպչական, դաստիարակչական գործունեության և այդ գործունեությունն արտահայտող ֆունկցիաների զարգացումը, ինչպես ըստ ընդգրկման շրջանակների, այնպես էլ



ըստ էության, և ռևոլյուցիոն բռնության ու այդ կողմն արտահայտող ֆունկցիաների աստիճանական մահացումը։

Սակայն սոցիալիստական պետության մահացումը երկարատև և օրինաչափ պրոցես է, որը բացի հասարակության դասակարգային կառուցվածքի փոփոխություններից, շատ բանով կախված կլինի նաև միջազգային իրադրությունից այն իմաստով, որ դրսից հարձակման ենթարկվելու վտանգը պակասելուն համեմատ աստիճանաբար կկրճատվեն սոցիալիստական պետության զինված ուժերը և ռևոլյուցիոն հարկադրանքի մյուս օրգանները։

Սոցիալիստական պետության մարքսիստական-լենինյան թեորիայի բնագավառում արժեքավոր ավանդ է սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման սովետական պրակտիկան ընդհանրացնող ՍՄԿՊ XXI համագումարի առաջադրած թեորիական այն դրույթը, որ դեպի կոմունիզմ հասարակության զարգացմանը համեմատ սոցիալիստական պետության կողմից իրականացվող ֆունկցիաներն աստիճանաբար կանցնեն հասարակական կազմակերպություններին, հետզհետե կկորցնեն իրենց քաղաքական բնույթը, կփոխարկվեն հասարակական ֆունկցիաների։ Այդ պրոցեսն արդեն սկսվել է ՍՍՌՄ-ում, որն արտահայտվում է հասարակության տնտեսական ու քաղաքական կյանքը ղեկավարելու ասպարեզում հասարակական կազմակերպություններին հանձնվող ավելի մեծ լիազորությունների մեջ։ Սովետական հասարակության նյութական և հոգևոր կյանքի բոլոր ոլորտներում այսուհետև ևս մեծ նշանակություն են ձեռք բերելու գործողության հասարակական ձևերը։ Ընթանալով այդ ուղիով, սոցիալիստական պետությունը կվերաճի կոմունիստական հասարակության ինքնակառավարման սոցիալական օրգանիզմի։

---

# ՎՃՌԱԲԱՐ ԲԱՐԵԼԱՎԵԼ ՄԱՄՈՒԼԻ ԱՇԽԱՏԱՆՔԸ

Գ. ՀԱՅՐՅԱՆ

ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ

ՍՍՌՄ-ում այժմ լույս են տեսնում 10,500 թերթ և 799 ամսագիր, որոնց տարեկան տիրաժը հասնում է մոտ 13,6 միլիարդ օրինակի։ Սովետական Հայաստանում 1913 թվականի համեմատությամբ թերթերի թիվն ավելացել է 16 անգամ, ամսագրերինը՝ 30 անգամ։

Սովետական իշխանության տարիներին արագ թափով զարգացավ նաև գրքի հրատարակության գործը։ 1958 թվականին երկրում հրատարակվել է 60 հազար անուն գիրք։ Մեր ռեսպուբլիկայում 1913 թվականի համեմատությամբ գրքի հրատարակությունն ավելացել է 20 անգամ։

Յոթնամյակի տարիներին էլ ավելի լայն զարգացում կստանան մամուլը, ռադիոն և հեռուստատեսությունը, կինոն և կուլտուր-լուսավորական հիմնարկները, զգալիորեն կավելանա թերթերի, ամսագրերի և գրքերի տիրաժը, կմեծացվեն պոլիգրաֆիական արդյունաբերության կարողությունները։

Բնավ պատահական չէ, որ մեր պարտիան ու կառավարությունը չթուլացվող ուշադրությամբ հետևում են մեր մամուլի աճին, ստեղծում են բոլոր անհրաժեշտ պայմանները նրա հետագա զարգացման համար։ Բոլշևիկյան մամուլի պատմությունը անխզելի կերպով կապված է պրոլետարիատի ռևոլյուցիոն շարժման պատմության, Կոմունիստական պարտիայի պատմության հետ։

Անցյալ դարի կեսերին գերմանական պրովինցիալ քաղաքներից մեկում՝ Քյոլնում, ուր դեռ շարունակում էին գործել նապոլեոնյան կոդեքսով նախատեսված արտոնությունները, լույս տեսավ «Նոր հռենոսյան թերթ»-ի առաջին համարը։ Սակայն գերմանական ռևոլյուցիոն-դեմոկրատական այդ թերթը, որի խմբագիրը հետագայում Կ. Մարքսն էր և որին աշխատակցում էր Ֆ. Էնգելսը, գոյություն ունեցավ ընդամենը 15 ամիս։ Մոլեգնող ռեակցիայի ճնշման տակ փակվեց թերթը, իսկ նրա խմբագիր Կ. Մարքսը արտաքսվեց Հռենոսյան մարզից։

Հիսուն տարի անց, երբ ավարտվում էր հին, 19-րդ դարը և սկսվում նոր, 20-րդ դարը, ծնվեց ռևոլյուցիոն պրոլետարիատի նոր օրգանը՝ լենինյան «Իսկրա»-ն, որի արձակած կայծերը ընդամենը մեկուկես տասնամյակ հետո վերածվեցին վիթխարի մի հրդեհի։ Ռևոլյուցիոն շարժման նոր վերելքի հետ մեկտեղ ասպարեզ եկավ ռուսական պրոլետարիատի անլեգալ մասսայական թերթը—«Պրավդա»-ն, որն ահա մոտ 50 տարի շարունակ հավա-



տարմորեն ծառայում է աշխատավոր մասսաների շահերին, դարձել է նրանց նվիրական զգացումների ու ռևոլյուցիոն խոհերի անզուգական թարգմանը, մարքսիզմ-լենինիզմի անմահ գաղափարների դրոշակակիրը, մասսաների ոգեշնչման գործում պարտիայի հզոր, անփոխարինելի զենքը։

Սովետական մամուլը աշխատանքի ու պայքարի փառապանծ ուղի է անցել։ Նա թրծվել է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի բարիկադներում, քաղաքացիական կռիվների ու Հայրենական պատերազմի բոցերի մեջ, սոցիալիզմի հաղթանակի համար մղվող հերոսական գոտեմարտերում։

Մեր մամուլն այժմ զինված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի պատմական որոշումներով, կրկնապատկված եռանդով մասսաների մեջ է տանում մարքսիզմ-լենինիզմի անմահ գաղափարները, ոգեշնչում է նրանց պարտիայի հոյակապ նախագծումների իրականացման համար մղվող պայքարում։

Վերջին հինգ տարում զգալի տեղաշարժեր կատարվեցին մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության, կուլտուրայի, ինչպես նաև մամուլի ու հրատարակության բնագավառներում։ Այդ տարիներին ստեղծվեցին մի շարք նոր թերթեր ու ամսագրեր, այդ թվում «Երեվան»-ը, որն արժանացավ մայրաքաղաքի աշխատավորների ջերմ վերաբերմունքին։ Այդ ժամանակամիջոցում ստեղծվեց Հեռուստատեսության ստուդիան, սկսեցին լույս տեսնել «Ոզնի», «Հայաստանի աշխատավորուհի», «Հայաստանի կոլտնտեսական», «Սովետական արվեստ», «Հայաստանի ժողովրդական տնտեսություն», «Պատմաբանասիրական հանդես», «Литературная Армения» ամսագրերը, աշխարհում առաջին քրդական թերթ «Ռեա թազան», «Հայաստանի ֆիզկուլտուրնիկ», «Դեկի մոտ», «Դիլիջան» թերթերը։ Մամուլի կյանքում նոր երևույթ էր ռեսպուբլիկայի 25 կոլտնտեսություններում բազմատիրաժ թերթերի ստեղծումը։ Զգալի փոփոխություններ կատարվեցին ռեսպուբլիկական, քաղաքային ու շրջանային թերթերի տիրաժի, ծավալի ու պարբերականության ավելացման գործում։ Վերջին շրջանում ստեղծվեցին քրդական և արաբական ռադիոհաղորդումների խմբագրությունները, նկատելի աշխատանք կատարվեց ռուսական և ադրբեջանական հաղորդումների բարելավման ուղղությամբ։

Առանց չափազանցության կարելի է ասել, որ ոչ մի ժամանակ մեր հրատարակչություններն այնքան շատ արտադրանք չէին տվել, ինչքան վերջին շրջանում։ Անհամեմատ աճել է ինչպես թարգմանական, այնպես էլ ինքնուրույն գրականության հրատարակության գործը։

Այս փաստերն ամենից առաջ վկայում են մեր ռեսպուբլիկայի աշխատավորների կուլտուրական մակարդակի աննախընթաց բարձրացման մասին։ Դրանք միաժամանակ արդյունք են այն վիթխարի հոգատարության, որ ցույց են տալիս պարտիան ու կառավարությունը սովետական մամուլի զարգացման նկատմամբ։

Այս բոլորն իհարկե լավ է և մեզ ուրախացնում է ու ոգևորում։ Բայց չպետք է մոռանալ, որ լավ թերթ, ամսագիր կամ գիրք հրատարակելու համար բավական չէ միայն անհրաժեշտ չափով թուղթ կամ առաջնակարգ տպագրական տեխնիկա ունենալը։ Գաղտնիք չէ, որ երբեմն մեր լավագույն տպարաններում, նույնիսկ բարձրորակ թղթի վրա վատ գրքեր, ամսագրեր ու թերթեր են հրատա-

րակվում։ Ինչպես ասում են, թուղթը հանդուրժում է, նա, դժբախտաբար, բողոքել չի կարող խոտանի դեմ։

Այժմ մամուլի աշխատողների կարևոր խնդիրն է համառ ու հետևողական պայքար մղել մեր թերթերի, ամսագրերի, գրքերի, ռադիոյի ու հեռուստատեսության աշխատանքի գաղափարական բովանդակության բարելավման համար։

Ամենից առաջ պետք է նկատի ունենալ, որ երկրում տեղի ունեցած աննախընթաց վերափոխումների շնորհիվ վիթխարի չափով բարձրացել է մեր մարդկանց կուլտուրական մակարդակը։ Եթե ոչ հեռավոր անցյալում այս կամ այն գրքի կամ հոդվածի որակը կարողանում էին ճիշտ որոշել միայն մասնագետները, ապա այժմ այդ բանը առանց դժվարության անում են նաև մասսայական ընթերցողները։ Հաճախ մեր ընթերցողները նույնիսկ ավելի նուրբ դիտողություններ են անում մեր թերթերի աշխատանքի մասին, քան ժուռնալիստները՝ իրենց արտադրական խորհրդակցություններում։ Այս ամենը պահանջում է մեր մամուլի աշխատողներից ավելի լրջորեն մտածել իրենց աշխատանքի մեթոդների հետագա կատարելագործման մասին։

Մեր երկիրը թևակոխել է իր զարգացման նոր ժամանակաշրջանը՝ կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։ Այժմ առավել ևս անհրաժեշտ է թերությունների ու սխալների նկատմամբ ավելի անհանդուրժողական լինելը։

Իհարկե, այսպես դնելով հարցը, մենք չենք ուզում ասել, թե անցած տարվա ընթացքում մեր ռեսպուբլիկայի մամուլը դրական ոչինչ չի արել։ Այդպես կարող են մտածել միայն անուղղելի նիհիլիստները, որոնք առհասարակ ոչ մի լուսավոր բան չեն ուզում տեսնել մեր աշխատանքի մեջ։

Արժանի է ուշադրության «Սովետական Հայաստան», «Կոմունիստ», «Սովետ Էրմենիստանի» թերթերի ակտիվ աշխատանքը Երևան-Կիև քաղաքների, եղբայրական ռեսպուբլիկաների՝ Հայաստանի ու Ադրբեջանի, ինչպես նաև Հայաստանի և Կիրգիզիայի գյուղատնտեսության աշխատողների մրցության ընթացքը լուսաբանելու ուղղությամբ։

«Երևան» և «Ավանգարդ» թերթերը զգալի աշխատանք են կատարել երիտասարդության կոմունիստական դաստիարակության հրատապ հարցերի բարձրացման գործում։ Իրենց քաղաքների կյանքը լուսաբանելու ուղղությամբ որոշ քայլեր են կատարել նաև Լենինականի «Բանվոր»-ը և Կիրովականի «Կայծ»-ը։

Մեր կարևոր նվաճումներից մեկը մի շարք երիտասարդ, ընդունակ, աշխատելու ցանկությամբ լի կադրերի մուտքն է մամուլի ասպարեզ։ Այդ կադրերն ունեն նորի զգացում, գրելու աներկբայելի շնորհք, համարձակություն։ Անհրաժեշտ է ուշադիր ու հոգատար լինել, համարձակորեն առաջ քաշել, խրախուսել նրանց աշխատանքը, ժամանակին ուղղել, երբ սխալներ են թույլ տալիս։

Թերթերի, ամսագրերի, ռադիոյի ու հեռուստատեսության վերջին տարվա աշխատանքը կարելի է բաժանել երկու էտապի։ Այդ էտապներից յուրաքանչյուրը կապված է մեր Հայրենիքի, ժողովրդի ու պարտիայի կյանքում տեղի ունեցած պատմական իրադարձությունների հետ։ Դրանցից առաջինը «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին» ընկ. Ն. Ս. Խրուշչովի՝ ՍՄԿՊ XXI համագումարին տվելիք զեկուցման թեզիսների համաժողովրդական քննարկման շրջանն էր, երկրորդը՝ ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարի որոշումների հրապարակումը և



նրանց կենսագործման համար պայքարը, որը գնալով էլ ավելի մեծ ծավալ է ստանում։ Դրանցից բացի, անցած մեկ տարվա ընթացքում տեղի ունեցան ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումները, որոնց նյութերը լայնորեն լուսաբանվել են մեր մամուլի էջերում։ Այսպիսով, մեր մամուլն ամբողջովին ի սպաս էր դրվել երկրի ժողովրդական տնտեսության զարգացման ամենահրատապ, իրենց մասշտաբներով անօրինակ խնդիրների իրականացման մեծ պայքարին։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի մասին ՍՄԿՊ XXI համագումարին ընկեր Ն. Ս. Խրուշչովի տվելիք զեկուցման թեզիսների համաժողովրդական քննարկման օրերին, թերթերի գրեթե ամեն մի համարում տպագրվող բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի ներկայացուցիչների հոդվածներն ու առաջարկները՝ երկրի զարգացման հեռանկարների մասին, միանգամայն փոխեցին մեր մամուլի դեմքը, էլ ավելի հետաքրքիր ու բովանդակալից դարձրին այն։ Բավական է ասել, որ թեզիսների քննարկման ընթացքում ռեսպուբլիկայի մամուլն իր էջերում տպագրեց ավելի քան 3000 նամակ և առաջարկ։

Այժմ մեր մամուլը զբաղված է պարտիայի XXI համագումարի որոշումների պարզաբանման ու պրոպագանդայի շնորհակալ ու միաժամանակ պատասխանատու աշխատանքով։

Ռեսպուբլիկական, քաղաքային թերթերի ու ամսագրերի էջերում տպագրվել են մի շարք հետաքրքրական հոդվածներ համագումարի նյութերում առաջ քաշված և ստեղծագործաբար լուծված մարքսիզմ-լենինիզմի տեսության հարցերի վերաբերյալ։ Մամուլը ձգտում է արտացոլել այն արժեքավոր նախաձեռնությունները, որոնք համագումարի որոշումներով ոգևորված հանդես են բերում մեր ռեսպուբլիկայի բանվորները, կոլտնտեսականները, գիտության ու կուլտուրայի գործիչները։ Թերթերում հրապարակվել են արդյունաբերության ու գյուղատնտեսության աշխատողների դիմումները, որտեղ նրանք կոնկրետ պարտավորություններ են ստանձնում և կոչ անում՝ յոթնամյա պլանը կատարել ժամկետից շուտ ու բարձր ցուցանիշներով։ Թերթերում նյութեր են զետեղվում կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի մարդկանց հայրենանվեր աշխատանքի, արտադրության առաջավորների դրական փորձի մասին և այլն։

Այս բոլորը, իհարկե, լավ է, դա զգալիորեն բարձրացնում է մեր մամուլի դերը, դարձնում է այն առավել հետաքրքիր ու բովանդակալից։

Սակայն մեր մամուլի աշխատանքում դեռ շատ լուրջ թերություններ կան, որոնց կողքից մենք լռությամբ անցնելու իրավունք չունենք։

Մեր կարծիքով թերթերի ու ամսագրերի գործունեության մեջ ամենագլխավոր թերությունն այն է, որ նրանք դեռ չեն կարողանում պահանջված խորությամբ արտացոլել յոթնամյակի համար հերոսական պայքարի ելած աշխատավորների առօրյան, նրանց հայրենասիրական գործերը։

Հայտնի է, որ պարտիայի XXI համագումարի որոշումները ժողովուրդն ընդունեց արտակարգ ոգևորությամբ։ Սակայն այդ ոգևորությունը միաժամանակ խիստ գործարար բնույթ էր կրում։ Մեր աշխատավորները ոչ միայն ողջունում, ոչ միայն կոնկրետ պարտավորություններ էին ստանձնում, այլև շարունակում են հանդես գալ նոր նախաձեռնություններով պարտիայի մշակած հոյակապ ծրագրերը հաջողությամբ կատարելու համար։

Սակայն պետք է ասել, որ մեր մամուլի որոշ օրգաններ չկարողացան պահանջված խորությամբ թափանցել այդ պատմական երևույթի մեջ, ընթացան տրորված ճանապարհով, իրենց ողջ ուշադրությունը նվիրելով միայն այդ երևույթների արտաքին կողմին։

Համագումարի որոշումների խոր պարզաբանման գործում ամբողջ ռեսպուբլիկայի մամուլին պետք է օրինակ տային «Սովետական Հայաստան» և «Կոմունիստ» թերթերը։ Համագումարից անցել է արդեն երեք ամիս, սակայն այդ թերթերը դեռևս քիչ բան են արել իրենց ելույթներն ավելի ծանրակշիռ ու բազմակողմանի դարձնելու ուղղությամբ։ «Կոմունիստ» թերթը համագումարի որոշումների պրոպագանդան սկսեց «Թեթև արդյունաբերության զարգացումը Հայաստանում» հոդվածով։ Իսկ «Սովետական Հայաստանը» միայն ինֆորմացիաներ էր տպագրում, որոնք իրարից գրեթե ոչնչով չէին տարբերվում։

Հարկավոր է կոնկրետ, հրապուրիչ ձևերով բացահայտել այդ որոշումների իմաստը, օգնել մասսաներին ճիշտ ըմբռնելու իրենց անելիքը յոթնամյակի համար մղվող պայքարում։

Ստանդարտը, շաբլոնն ու միօրինակությունը շարունակում է մնալ որպես մեր մամուլի աշխատանքի գլխավոր խոչընդոտներից մեկը, որը պետք է հաղթահարել ինչ գնով էլ որ լինի։

Յոթնամյա պլանի մասին գրելիս մեր մամուլի աշխատանքում նկատվում է երկու ծայրահեղություն։ Առաջին ծայրահեղությունն այն է, որ գրելով այս կամ այն շրջանի, արդյունաբերական ձեռնարկության, կամ կոլտնտեսության հեռանկարների մասին, նյութը ծանրաբեռնում են բազմաթիվ թվերով ու տեխնիկական տերմիններով։ Այդպիսի հոդվածներում սովորաբար մտքեր ու դատողություններ գրեթե չեն լինում. այդ տեսակետից բնորոշ է «Սովետական Հայաստանի» ապրիլի 10-ի համարում տպագրված «Գունավոր մետալուրգիայի հզոր վերելքը» հոդվածը, որի մեջ չկա մի նախադասություն, որ ծանրաբեռնված չլինի թվերով։

«Կոմունիստ»-ի ապրիլի 17-ի համարում «Յոթնամյակի կառույցներում» ռուբրիկայով տպագրված է մի նյութ, որի հեղինակը թերթի արդյունաբերության բաժնի վարիչ ընկ. Շկուլյովն է։ Այդ նյութը բաղկացած է 110 տողից, որից մոտ 90-ը նվիրված է երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարանի արտադրական պրոցեսների ամենամանրամասն նկարագրությանը, այն բանին, թե ինչպես է քարհանքերի խիճն ու ավազը մանրացվում և ստորերկրյա հորիզոնական, իսկ ապա թեք ուղիներով մղվում բետոնախառնիչ հանգույցի բունկերը, որը տեղավորված է չորրորդ հարկում և այլն և այլն։ Վերջում հեղինակը հիշում է մարդկանց, իրար հետևից թվելով բազմաթիվ ազգանուններ։ Իսկ ինչպե՞ս են աշխատում այդ մարդիկ, ո՞րն է նրանց աշխատանքում նորը, ի՞նչ են մտադիր անել նրանք, այդ բոլորը հեղինակին չի հետաքրքրում։

Պետք է նշել, որ առհասարակ մամուլի էջերում քիչ տեղ է տրվում կենդանի մարդուն՝ իր հարուստ ներաշխարհով ու աշխարհաշեն գործերով։ Մամուլը չի կարողանում անհրաժեշտ խորությամբ վեր հանել այն բարդ ու միաժամանակ հետաքրքիր պրոցեսը, որի ընթացքում թրծվում է մեր ժամանակաշրջանի քաղաքացու կամքը, կոփվում նրա բնավորությունը։ Բավական չէ հայտարա-



րել, թե այս կամ այն բանվորը դարձել է կոմունիստական աշխատանքի բրիգադայի անդամ, հանդես է եկել նորարարական առաջարկով, գերակատարել է իր արտադրական առաջադրանքը և այլն։ Հարկավոր է համոզիչ ձևով բացատրել, թե ինչպե՞ս է ծնվում նորը, թե ի՞նչ եղանակով, ի՞նչ ձևով է հաջողվում կոմունիզմ կառուցող մարդուն վերափոխել կյանքը, որի հետ վերափոխվում է և ինքը, ձևավորվում են նրա բնավորության նոր գծերը։

Կարող են ասել թե այս ամենը չի կարելի ցույց տալ լրագրային հոդվածում, դա միայն կարելի է անել գեղարվեստական գրականության, կամ արվեստի մեջ։ Դրա հետ համաձայնել չի կարելի, որովհետև մամուլն ինքը մի բազմաժանր բնագավառ է և լավ օրգան է այն, որը կարողանում է գործի մեջ դնել իր զինանոցի մեջ եղած զենքերի բոլոր տեսակները։ Մինչդեռ մեզ մոտ մամուլի աշխատողները այդ զենքերից լրիվ չափով չեն օգտվում։

Օրինակ, այնպիսի հրաշալի, ներգործման մեծ ուժով օժտված մի ժանր, ինչպիսին է գեղարվեստական ակնարկը, գրեթե դուրս է մղվել մեր մամուլի էջերից։ Մեր խոսքը չի վերաբերում այն անարյուն նյութերին, որոնք տպագրվում են մերթ ընդ մերթ մեր թերթերում ակնարկի անվան տակ։ Դրանց մեջ, իհարկե, խոսվում է, թե ինչպես է արևը բարձրանում զենիթ, կամ ինչպես է այն մայր մտնում, ինչպես է հեղինակը ոլորապտույտ ճանապարհով սլացող ավտոմեքենայի պատուհանից դիտում դաշտերն ու լեռները, ունկնդրում թռչունների ձայնը և այլն և այլն։ Այդ բոլորը կա, բայց չկա գլխավորը՝ մարդն իր զգացումներով ու խոհերով, իր գործերով ու երազանքներով։ Մեր խոսքը իսկական ակնարկի մասին է, այն ակնարկի, որին մենք հանդիպում ենք «Պրավդա»-ի ու «Կոմսոմոլսկայա պրավդա»-ի էջերում, կենտրոնական մի շարք ուրիշ թերթերում և ամսագրերում։

Ամոթալի է, բայց փաստ է, որ մեր թերթերի աշխատողների գերակշռող մեծամասնությունը ինֆորմացիաներից, թղթակցություններից ու հոդվածներից բացի ուրիշ ոչ մի ժանրով հանդես չի գալիս։

Գուցե մեզ ասեն, որ ակնարկը կամ ֆելիետոնը գրողի մասնագիտությունն է։ Համաձայն ենք, բայց չէ որ ժուռնալիստի և գրողի պրոֆեսիաների մեջ պատնեշներ չկան։ Իսկական ժուռնալիստը միաժամանակ և՛ գրող է, և՛ ընդհակառակը, լավ գրողը միաժամանակ ժուռնալիստ է։

Մեզ քաջ հայտնի է, որ կլասիկ և ժամանակակից գրականության լավագույն ներկայացուցիչները իրենց գրական կյանքը սկսել են ակնարկից։ Այժմ էլ սովետական գրողները՝ Շոլոխովից սկսած, վեպերի հետ զուգընթաց գրում են նաև ակնարկներ, հրապարակախոսական հոդվածներ, ֆելիետոններ։

Սակայն տարօրինակ վիճակ է ստեղծվել մեզ մոտ։ Թերթերը, այդ թվում «Սովետական Հայաստան»-ը ու «Կոմունիստ»-ը իրենց ապարատներում բարձրորակ ակնարկագիրներ քիչ ունեն, գրողներին էլ մասնակից չեն դարձնում։ Ասում են, որ իրենք գրողներն էլ առանձին ակտիվություն հանդես չեն բերում այդ գործում, նրանց մի մասը հաստափոր վեպերով է զբաղված և ժամանակ չի գտնում «մանր» բաներով զբաղվելու։ Իսկ ի՞նչ է, Մ. Շոլոխովը, Բ. Պոլևոյը, Ի. Էրենբուրգը, Մ. Շահինյանը, Կ. Ֆեդինը և շատ ուրիշներ վեպեր չե՞ն գրում կամ թե ավելի վա՞տ են գրում, քան այն մի շարք թույլ, բայց մեծածավալ վեպերը, որ իրար ետևից լույս աշխարհ են գալիս Հայպետհրատում բուն դրած լիբերալիզմի հետևանքով։

Մենք կարծում ենք, որ թերթերի խմբագրությունները Գրողների Միության ղեկավարության հետ միասին պետք է առաջիկայում լրջորեն զբաղվեն սովետահայ ակնարկի ստեղծման հրատապ հարցերով։

Երկրորդ ծայրահեղությունը, որ ավելի տարածված է, քան առաջինը, վերացականությունն է։ Այդ կարգի նյութերում լինում են և մտքեր և դատողություններ, բայց, որպես կանոն, դրանք կոնկրետություն չեն պարունակում իրենց մեջ։

Ահա, օրինակ, «Սովետական Հայաստան»-ի ապրիլի 12-ի համարում տպագրված «Լարուղիներով» վերնագիրը կրող հոդվածը, որի մեջ հեղինակը պատմում է մեր ռեսպուբլիկայում առաջիկայում կառուցվելիք մի ջերմաէլեկտրակայանի, ավանի, սովխոզի և գործարանների մասին։ Բայց կոնկրետ որտեղ է կառուցվելու այդ կայանը, այդ ինչ ավանի, սովխոզի ու գործարանների մասին է խոսքը, ինչ լարուղիներ են և ուր են տանում դրանք, ոչինչ չի ասված։ Այդ բոլորը կորել են հեղինակի ընդհանուր, կոնկրետությունից զուրկ նկարագրությունների ու լիրիկական զեղումների մեջ։ Մոտ 300 տող գրավող այդ նյութի մեջ չի տրվում որևէ ռեալ պատկերացում 1965 թվականին մեր մայրաքաղաքում և ռեսպուբլիկայում նախատեսվող վերափոխությունների մասին։ Պարզ երևում է, որ հեղինակը լավ չի ուսումնասիրել թեման և հույսը դրել է լոկ իր երևակայության վրա։ Միակ կոնկրետ հասցեն, որ նա տալիս է՝ Երևանի Ծիծեռնակաբերդի ապագա զբոսայգին է, որտեղ հեղինակի ասելով պետք է կառուցվի «Երևանի լիճը»։ Հայտնի է, սակայն, որ նման լիճ այստեղ չի կառուցվելու։ Բայց այդպիսի ջրալի հոդվածներով կարելի է ոչ միայն լճեր, այլ ծովեր ստեղծել...

Մենք պետք է պայքար ծավալենք և տեխնիցիզմի, և վերացականության երևույթների դեմ մեր մամուլում։ Ընկ. Խրուշչովը պարտիայի XXI համագումարում տված իր զեկուցման մեջ ասաց, որ «այժմ աշխատանքում հատկապես անհրաժեշտ են կոնկրետություն և նպատակասլացություն, խոր գործիմացություն։ Միայն ընդհանուր խոսքերը, ընդհանուր կոչերը ոչինչ չարժեն»։

Ինչպես ասվեց վերևում, ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ, համագումարի որոշումներում և մյուս նյութերում բարձրացվեցին և իրենց գիտական լուծումը ստացան մարքս-լենինյան տեսության մի շարք հանգուցային, մեր երկրի ու միջազգային կոմունիստական շարժման հետագա զարգացման համար կարևորագույն նշանակություն ունեցող հարցեր։ Թերթերի և ամսագրերի առաջնահերթ խնդիրն է հոդվածներ տպագրել այդ հարցերից ամեն մեկի մասին և դրանով օգնել ոչ միայն պրոպագանդիստներին, այլև մասսայական ընթերցողներին մեր ապրած ժամանակաշրջանի ոգին, նշանակությունն ու վեհությունը լրիվ ըմբռնելու համար։

Ճշմարտության դեմ չմեղանչելու համար պետք է ասել, որ հատկապես պարտիական մամուլի էջերում քանակով բավական շատ տեսական բնույթի հոդվածներ են տպագրվել։ Բայց այդ հոդվածները, չնչին բացառությամբ, դուրս չեն գալիս արդեն հայտնի ճշմարտությունների շրջանակներից։ Դրանք, որպես կանոն, կրկնում են այն, ինչ ասվեց համագումարում։ «Նորը» թերևս այն է, որ մեր հեղինակներից շատերը ցիտատներն այլևս չակերտների մեջ չեն առնում, երևի մտածելով, որ դրանով կարող են ապահովագրել իրենց՝ ցիտատաբանության մեջ մեղադրվելու վտանգից։



Թերթերի խմբագրություններին դեռ չի հաջողվել ապահովել մեր գիտնականների, պրոպագանդիստական աշխատողների ակտիվ մասնակցությունը տեսական հարցերի մշակման գործում։ Թերթերի էջերում շատ հաճախ, միշտ միևնույն մարդիկ են հանդես գալիս, մամուլում տեսական հոդվածներ գրելու մենաշնորհը գտնվում է մի խումբ հեղինակների ձեռքում։

Վերհիշենք թե ինչ էր ասում Վ. Ի. Լենինը շատ տասնամյակներ առաջ։ «...օրգանը,— գրում էր նա,— կենդանի կլինի ու կենսունակ այն ժամանակ, երբ մի հինգ ղեկավար և շարունակ գրող գրականագետների գիմաց կան հինգ հարյուր և հինգ հազար ոչ գրականագետ աշխատողներ»։

Ուղեցույց ունենալով Վ. Ի. Լենինի այս ցուցումը, թերթերի ու ամսագրերի խմբագրությունները պետք է ավելի լայնորեն ծավալեն թղթակցական շարժումը և հեղինակային ակտիվի շարքերը խտացնեն բուն արտադրության մեջ աշխատող նորանոր թղթակիցներով։

ՀԿԿ Կենտրոնական Կոմիտեն վերջերս քննության առավ «Լենինյան ուղիով» ամսագրի հարցը և մի շարք այլ թերությունների հետ միասին նշեց նաև ամսագրի անբավարար աշխատանքը արտահաստիքային հեղինակների հետ։ Բայց դա ավելի կամ պակաս չափով վերաբերում է և մեր մյուս ամսագրերին ու թերթերին։ «Կոմունիստ» թերթը, օրինակ, իր համար ավելի հեշտ ճանապարհ է ընտրել։ Նա առատորեն տպագրում է ՏԱՍՍ-ի միջոցով ստացված հոդվածները, որոնց մեջ հասկանալի պատճառով ոչինչ չես գտնի մեր ռեսպուբլիկայի մասին։ Իհարկե, մենք չենք ուզում ասել, թե ՏԱՍՍ-ից ուղարկված տեսական հոդվածներն առհասարակ չպետք է տպագրել, բայց չէ որ հոդվածն ավելի կշահեր, եթե նրա մեջ օգտագործվեին տեղական փաստերը և դրանց հիման վրա տեսական ընդհանրացումներ կատարվեին։ Արտատպելը մեծ ջանքեր չի պահանջում, իսկ նորը ստեղծելը կապված է որոշակի դժվարությունների հետ, որոնք պարտավոր են հաղթահարել մեր խմբագրությունները։

Մյուս դիտողությունները XXI համագումարի նյութերի պրոպագանդման գործում այն է, որ մամուլը դեռ անբավարար է լուսաբանում ռեսպուբլիկայի տնտեսական զարգացման հեռանկարները։ Ժողովրդական տնտեսության աճի վերաբերյալ թվերի հրատարակումով հարցը չի սպառվում։ Պետք է կարողանալ մեկնաբանել, կամ, ինչպես ասում են, խոսեցնել այդ թվերը, գործի մեջ դնել սովետական ժուռնալիստի վառ ֆանտազիան։

Վ. Ի. Լենինը ասել է, որ ֆանտազիան պետք է ոչ միայն բանաստեղծներին։ Տարիներ առաջ Հերբերտ Ուելսը Լենինին «Կրեմլյան երազող» էր անվանում, իսկ նրա մշակած երկրի էլեկտրիֆիկացման պլանը՝ «էլեկտրական ուտոպիա»։ Բուրժուական այդ հռչակավոր գրողը, որն իր ֆանտազիայի ուժով կարողացել էր կանխագուշակել միջմոլորակային թռիչքները, անընդունակ գտնվեց հասկանալու երկրի վերափոխման լենինյան պլանների միանգամայն ռեալ լինելը։ Մեր Հայրենիքի համար ծանր ժամանակաշրջանում, երբ թշնամիները միաբերան ասում էին, թե նոր Ռուսաստանը հոգևարքի մեջ է, համաշխարհային պրոլետարիատի մեծ առաջնորդն իր արծվային հայացքով տեսնում էր հեռուները, երազում էր և համոզված էր, որ այդ երազանքն անպայման իրականություն կդառնա։

Այժմ, երբ սովետական մարդիկ հաղթանակներով պսակված մեծ ճանա-

պարհ են անցել, նույնպես երազում են իրենց է՛լ ավելի գեղեցիկ ապագայի մասին։ Նրանցից յուրաքանչյուրը ցանկանում է իմանալ, թե ինչպիսին է լինելու իր հայրենի քաղաքը, գյուղը, շրջանը, ռեսպուբլիկան, ամբողջ երկիրը՝ յոթնամյակի վերջին։ Այստեղ իր խոսքը պիտի ասի մեր մամուլը։ Մի քանի թերթեր, հատկապես «Երևան»-ը և «Ավանգարդ»-ը, որոշ քայլեր անում են այդ ուղղությամբ, բայց ոչ բոլոր դեպքերում մտածված ու հաջող։ Օրինակ, «Ավանգարդ»-ն իր ապրիլի 16-ի համարն ամբողջովին նվիրել էր այն հարցին, թե ինչպիսին է լինելու Լենինականը, թերթի արտահայտությամբ՝ «Շիրակի զարդը յոթնամյակում»։ Պետք է ասել, որ համարն ընդհանրապես վատ չի կառուցված։ Նյութերը գրված են հետաքրքիր ոճով և բարեբախտաբար զերծ են սովորական շաբլոնից։ Բայց տարակուսանք է առաջացնում երկրորդ էջում տպագրված «Երբ երազում է քաղսովետի նախագահը» ակնարկը։ Եթե հավատանք այդ ակնարկին, ապա Լենինականի քաղսովետի գործկոմի նախագահ ընկ. Լ. Քոչարյանը իր հարազատ քաղաքի արդյունաբերության զարգացման հեռանկարները թողած, երազում է միայն կանաչ պուրակների, հուշարձանների կառուցման և... ֆուտբոլային «Շիրակ» թիմի առաջիկա հաջողության մասին։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն անցած մեկ տարում բազմիցս անդրադարձել է մամուլի աշխատանքի հարցերին։ Կենտկոմի բոլոր որոշումների մեջ կարմիր թելի պես անցնում է այն միտքը, որ մեր մամուլը դեռ մինչև վերջ չի վերակառուցել իր աշխատանքը, նա դեռ ետ է մնում կյանքի առաջադրած մեծ հարցերից, անհրաժեշտ խորությամբ չի արտացոլում մեր իրականության տեղի ունեցող երևույթները, բավարար չափով չի ընդհանրացնում կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի մարդկանց աշխատանքի ու պայքարի փորձը։ Մամուլը դեռ թույլ է կապված կյանքի հետ, չի կարողանում լրիվ չափով օգտագործել իր արտահաստիքային հեղինակների ուժերն ու ընդունակությունները, մամուլի աշխատանքից դեռևս դուրս չի մղված շաբլոնն ու տրաֆարետը, խիստ ցածր է շատ ժուռնալիստների տեսական ու մասնագիտական պատրաստականության մակարդակը։ Այդ է պատճառը, որ մեր թերթերն ու ամսագրերը հաճախ անգույն ու անբովանդակ համարներ են հրատարակում, հոդվածներ են տպագրում, որոնց մեջ լինում են ոչ միայն փաստական ու թվական անճշտություններ, այլև քաղաքական ոչ ճիշտ ձևակերպումներ ու նույնիսկ կոպիտ սխալներ։

Առանձնապես լավ չի գործերի վիճակը շրջանային մի շարք թերթերում։ Չնայած նրան, որ շրջանային թերթերի խմբագրությունները վերջին տարիներին համալրվեցին նոր, երիտասարդ կադրերով, բայց դա քիչ փոխեց դրությունը։ Այդ թերթերից շատերը լի են գծգույն նյութերով, պարզունակ դատողություններով, իսկ երբեմն նույնիսկ անգրագիտություններով։ Դժբախտաբար այդ բանը հաճախ չեն նկատում պարտիայի շրջանային կոմիտեները, որոնք իրենց տպագիր օրգանի հարցով սովորաբար զբաղվում են միայն այն ժամանակ, երբ խմբագիրը ձախողում է գործը և այլևս պահել չի կարելի նրան այդ աշխատանքում։ Շրջանային թերթերին վատ են օգնում նաև մեր ռեսպուբլիկական պարտիական թերթերը։ Նրանք բարձրորակ մամուլի տեսություններ գրեթե չեն տպագրում, ժամանակին չեն նկատում սխալները։



Այստեղ կարելի է բազմաթիվ փաստեր բերել շրջանային թերթերի վատ աշխատանքի մասին, բայց կբավարարվենք միայն մի երկուսով, որոնք ցույց են տալիս, թե ինչպիսի տխուր վիճակ գոյություն ունի այդ թերթերից մի քանիսում։

Այն պահին, երբ մեր Հայրենիքի բոլոր աշխատավորները զբաղված էին յոթնամյա պլանի կոնտրոլ թվերի քննարկման գործով, «Շամշադինի կոլտնտեսական»-ը իր սուղ էջերը տրամադրել էր բավականաչափ երկարատև ու անպտուղ մի բանավեճի, այն մասին, թե սովետական մարդը ինչպես պիտի պահի իրեն խնջույքներում, ինչ սկզբունքներով պիտի կազմակերպել այդ խնջույքները և այլն։

Ավելի լուրջ գործերով չի զբաղված Արթիկի շրջանային «Լեռնագործ» թերթը, որը ի դեպ վատ թերթերի թվին չի պատկանում։ «Մեկ օրում յոթ հարսանիք» ակնարկի մեջ թերթը փորձել է ցույց տալ կոլտնտեսային գյուղացիության ուրախ կյանքը, վերարտադրել կոլտնտեսականների անձնական երջանկության դրսևորումները։ Բայց նա իր հերոսներին պարզապես դրել է կեղծ, շինծու վիճակի մեջ, վերագրելով նրանց ոչ-բնական, միանգամայն անհավատալի սովորություններ։

Սիսյանի շրջանում հրատարակվող «Կոմունիզմի ուղեգիր» թերթը իր մարտի 8-ի համարում փորձում է պատմել շրջանի առաջավոր կթվորուհիներից մեկի աշխատանքի մասին, բայց այդ հոդվածի մեջ ոչ մի ուսանելի բան չի կարելի գտնել։

Աշտարակի «Այգեգործ կոլտնտեսական»-ը իր ապրիլի 12-ի համարի երկրորդ էջը գրեթե ամբողջությամբ նվիրել է շրջկենտրոնում օրինակելի մաքրություն հաստատելու հարցին։ Վատ հարց չէ, այս մասին, անշուշտ, արժե գրել։ Բայց ի՞նչպես։ Անկարելի է ցիտել հոդվածի այն մասը, որ կրում է՝ «Իսկ հասարակական զուգարաննե՞րը...» վերնագիրը։ Նատուրալիստական նկարագրություններն ուղղակի զզվանք են առաջացնում։ Բայց այդ մեծածավալ հոդվածի մի ուրիշ մասից կարելի է մի քաղվածք բերել։ Թերթի ասելով ռևոլյուցիայից առաջ Աշտարակի շրջանում իբր թե տրադիցիա է եղել, ըստ որի «հարևանները, անցուդարձողները պարսավում էին այն տանտիրոջը, որի փողոցը անմաքուր էր» և ով զարմա՞նք... «այդ տանից աղջիկ չէին ուզում...»։ Եվ ահա այդ «պատմական» էքսկուրսից հետո թերթը խնդիր է դնում շրջանի աշխատավորների առաջ՝ անհապաղ վերականգնել այդ տրադիցիան, այսինքն՝ աղջիկ չառնել այն տնից, որի փողոցը կեղտոտ է...

Արտաշատի շրջանային թերթը մարտի 25-ին տպագրել է Վարդգես Բաբայանի նոր բանաստեղծությունների շարքը։ Բայց պետք է ասել, որ այս անգամ սկսնակ շնորհալի բանաստեղծը թույլ բաներ է հրապարակել։ Բանաստեղծություններից մեկը կոչվում է «Խոստովանություն»։ Դրա բովանդակությունը մոտավորապես հետևյալն է. մի ծեր կոլտնտեսական գալիս է քահանայի մոտ և պատմում նրան իր կյանքը։ Բանից պարզվում է, որ այդ մարդը կոլտնտեսություն մտնելու պահից ոչ մի օր չի աշխատել կոլտնտեսությունում, մանկությունից զբաղվել է գողությամբ և խուլիգանությամբ, տանը թողած կնոջը, ման է եկել ուրիշների հետ, և այլն։

Այդ բոլորի մասին նա պատմում է քահանային, որը հարցնում է՝

Աստված մեղքիդ թողություն տա,
Ասա, որդյակ, ուրիշ ինչ կա։

Եվ կոլտնտեսականը պատասխանում է՝

Ուրիշ էլ ինչ... որպես ընծա,
Երբ որդուս հետ եկա ես տուն,
Աստծուն մի զառ ես խոստացա,
Բայց խոստումս մնաց խոստում։

Բանաստեղծությունը ավարտվում է քահանայի անեծքով.

Օ՜, պիղծ էակ և եղկելի,
Աստված երբեք այդ չի ների։

Ի՞նչ է ստացվում. մանուկ հասակից այլասերված այս մարդուն հասարակությունը չի նկատում, կամ նկատում է ու անընդհատ ներում։ Բանից պարզվում է, որ միակ արդար դատավորը աստվածն է, որը նրան երբեք ներել չի կարող։ Ինչպե՞ս կարելի է այսպիսի իդեապես անընդունելի գործը տպագրել թերթում։

Պետք է նշել նաև այն, որ վերջին շրջանում մի շարք գռեհկաբանություններ են թույլ տալիս նաև մեր որոշ ամսագրեր։ Այդ տեսակետից աչքի է ընկնում «Ոզնի» ամսագիրը, որը, ինչպես երևում է, երբեմն տարբերություն չի տեսնում իսկական երգիծանքի և նատուրալիզմի միջև։

Իր առաջ նպատակ դնելով ծաղրել այսպես կոչված ստիլյագներին, «Ոզնին» իր համարներից մեկում տպագրել է հետևյալ ոտանավորը, ավելի ճիշտ կլիներ ասել խոտանը։ Ահա այն.

«Աբովյանով մի աղջկա ոտքեր,
Հագած կապրոններ, արագ քայլում են,
Մոտեցան նրանց տղայի ոտքեր՝
Զանգած հինգ րոպե՝ թռան դես ու դեն...
Ոտքերը տղի սառան ու փախան,
Իսկ աղջկանը առույգ ու կայտառ
Կաքավեց (?) ուրախ դեպի Նալբանդյան։
Այստեղ հանդիպեց ստիլ կոշիկների,
Քիթ-քթի տված ժամից ավելի
Շորորվում են մեզմ, ինչ ձյուն, ինչ ձմեռ,
Գարուն է բացվել ոտքերից դեպ վեր...

Կարդում ես ու չես հավատում աչքերիդ։ Մի՞թե կարելի է նման խոտանը տեղավորել ամսագրի էջերում, ամսագիր, որի խմբագիր ընկ. Գ. Տեր-Գրիգորյանը նրբաճաշակ դրամատուրգ է, իսկ խմբագրության մյուս աշխատողներից Աշ-Փալն ու Խոջիկը երգիծաբանության անդաստան են մտել շատ տարիներ առաջ և կուտակել են աշխատանքի մեծ փորձ։

Վերջերս մեր թերթերից մի քանիսը՝ այդ թվում «Երևան»-ը, «Ավանգարդ»-ը, Լենինականի «Բանվոր»-ը, Կիրովականի «Կայծ»-ը, Արթիկի «Լենինագործ»-ը միութենական մի քանի թերթերի ու ամսագրերի օրինակով հրապուրվել էին դեդեկտիվ ժանրի գործեր տպագրելով։ Այդ գործերի մեջ ամենայն մանրամասնություններով նկարագրվում էին լրտեսները, գողերն ու ավազակները՝ իրենց եղկելի արարքներով։ Տրվում էին սպանության, մատնության, բռնաբարության զանազան դեպքերի, հանցագործությունների հետապնդման ու ձերբակալության մերկապարանոց նկարագրությունները։



ՀԿՊ Կենտկոմը ժամանակին միջամտեց և ուղղեց այդ սխալը, խնդիր դրեց մամուլի առջև՝ լրջորեն զբաղվել երիտասարդության կոմունիստական դաստիարակության հարցերով, չտարվել էժանագին էֆեկտներ ու սենսացիաներ ստեղծելու մարմաջով։

Գաղափարական աշխատանքի կարևոր օղակներից են ռադիոհաղորդումները և հեռուստատեսությունը։ Կասկած չկա, որ այս բնագավառում ևս որոշակի դրական քայլեր են արված պարտիայի XXI համագումարի որոշումների պարզաբանման, հաղորդումների որակի, գաղափարական բովանդակության բարձրացման ուղղությամբ։

Սակայն այստեղ էլ քիչ չեն սխալներն ու թերությունները։ Ամենից առաջ պետք է նշել, որ Ռադիոհաղորդումների ու հեռուստատեսության կոմիտեի ղեկավարությանը դեռ չի հաջողվել անհրաժեշտ չափով օգտագործել իր մեծ կոլեկտիվի պոտենցիալ հնարավորությունները։ Հաճախ ռադիոլսողներն իրավացիորեն դժգոհում են, որովհետև շատ հաղորդումներ զուրկ են անհրաժեշտ նպատակասլացությունից։ Գաղափարական ու գեղարվեստական տեսակետից ցածր են։ Միանգամայն ճիշտ պետք է համարել ՀԿՊ Երևանի քաղաքային կոմիտեի վերջին պլենումում ծավալված քննադատությունը հեռուստատեսության վերջին մի քանի հաղորդումների վերաբերյալ, որոնց մեջ երգիծանքի քողի տակ էկրան էր հանվել բացահայտ խոտանը։

Դեռևս բավարար չեն արտասահմանյան հայերի համար տրվող հաղորդումները։ Այդ հաղորդումների հեղինակները հաճախ ավելի շատ ժամանակ են կորցնում իրենց աշխատանքին ինչ-որ խորհրդավոր տեսք տալու, նրա մեջ արտակարգ առանձնահատկություններ փնտրելու, քան այն իսկապես հետաքրքիր ու բովանդակալից դարձնելու համար։ Այդ պատճառով երբեմն էֆիր են հանձնվում երկրորդական նշանակություն ունեցող լուրեր, որոնք առանձին հետաքրքրություն առաջացնել չեն կարող արտասահմանյան ռադիոլսողների շրջանում։

Ռադիոհաղորդումների գլխավոր թերություններից մեկն էլ այն է, որ հաճախ չի պահպանվում չափի զգացումը։ Այս տեսակետից բնորոշ է հետևյալ օրինակը։ Ընթերցողների լայն շրջաններին իր գործերով դեռ անհայտ, բայց ոչ-պարկեշտ վարքագծով բավականաչափ հայտնի մի սկսնակ բանաստեղծ կա՝ Սարգիս Խարազյան անունով։ Այս երիտասարդ բանաստեղծի մասին վերջերս ռադիոն արտասահմանյան հայերի համար հատուկ հաղորդում էր կազմակերպել, որտեղ նրա հասցեին ասվում էր այն, ինչ հաճախ չի ասվում Հովհ. Թումանյանի, Ավ. Իսահակյանի, Վ. Տերյանի մասին։ «Սարգիս Խարազյանը,— ի լուր աշխարհի հայտարարում է ռադիոն,— քնարերգու բանաստեղծ է, որը չի ձգտում շլացնել ընթերցողին պատկերների անսովոր փայլատակումներով»։ Նրա բանաստեղծությունները «մենախոսություններ են առանց հռետորիկայի, խորհրդածություններ են առանց շեշտելու այդպիսին լինելը, հույզեր են առանց զարդարանքի...»։ Նա «կյանքի մասին խորհում է գարնան առավոտի պես»։

Բայց ահա արի ու տես, որ այդ «գարնան առավոտի պես» խորհող բանաստեղծն առանց երկար ու բարակ խորհելու, հաճախ հարբում և դեբոշներ

է սարքում։ Այդ մասին երկու անգամ գրել է «Ավանգարդ» թերթը։ Եվ ի՞նչ եք կարծում, Խարաղյանը ռադիոհաղորդումներից ոգևորված մտել էր խմբագրություն և մեծամտաբար հայտարարել.

— Ես ձեզ հաշվի չեմ առնում, ինձ արդեն ճանաչում է աշխարհը...

Ռադիոհաղորդումների ու հեռուստատեսության կոմիտեի ղեկավարության, ստեղծագործական կոլեկտիվի պարտքն է՝ ինքնաքննադատաբար վերաբերվել սեփական գործունեությանը, վերացնել եղած թերությունները և վճռաբար բարելավել աշխատանքը։

Վերջերս տեղի ունեցավ Հայաստանի ժուռնալիստների միության անդրանիկ համագումարը։ Դա մեծ իրադարձություն էր մեր ռեսպուբլիկայի աշխատավորների կուլտուրական կյանքում։ Ժուռնալիստների միության մեջ արդեն ընդգրկվել է ավելի քան 300 ժուռնալիստ։ Պետք է հիշել, որ այդ նոր ստեղծված կազմակերպությունը նախ և առաջ ստեղծագործական կազմակերպություն է։ Նրա ամբողջ գործունեությունը պետք է ուղղված լինի մամուլի աշխատողների պրոֆեսիոնալ մակարդակի բարձրացմանը։ Ժուռնալիստների միությունը պետք է օգնի մեր խմբագրություններին ավելի հետաքրքիր դարձնելու թերթերի, ամսագրերի, հրատարակչությունների, ռադիոյի ու հեռուստատեսության գործունեությունը, հաջողությամբ կատարելու պարտիայի բոլոր առաջադրանքները։

Սովետական մամուլը երկարամյա փառապանծ ուղի է անցել, այն Կոմունիստական պարտիայի հզոր զենքն է կոմունիզմի համար մղվող պայքարում։ Մամուլի աշխատողները գտնվում են իդեոլոգիական պայքարի առաջին գծի վրա, նրանք արժանացել են պարտիայի ջերմ հոգատարությանը։ Մամուլի ուժը պարտիական ղեկավարության մեջ է։

Աշխարհի բոլոր կողմերում բազմաթիվ լեզուներով անթիվ ու անհամար թերթեր ու ամսագրեր են հրատարակվում։ Բայց ոչ մի տեղ մամուլն այնպիսի վիթխարի հեղինակություն չի վայելում, ինչպես մեր երկրում և սոցիալիստական սիստեմի մյուս երկրներում։ Այդ հեղինակությունը բացատրվում է նրանով, որ նա հավատարմորեն ծառայում է աշխատավոր ժողովրդին, արտահայտում է միլիոնավոր աշխատավորների իղձերն ու խոհերը, մասսաների մեջ է տարածում մարքսիզմ-լենինիզմի անմահ գաղափարները։

Մեր մամուլի համար ամենաբնորոշը ճշմարտացիությունն է։ Պատահական չէ, որ մեր երկրի ամենահեղինակավոր թերթը, որը ծնվեց ռևոլյուցիոն նոր վերելքի տարիներին՝ կոչվում է «Պրավդա»—ճշմարտություն։

Բուրժուական աշխարհում վաղուց ի վեր շաղակրատում են ազատ ու անկախ մամուլի մասին։ Ամերիկյան կապիտալիստները փորձում են հավատացնել, որ ամենաազատ մամուլն իրենցն է, որ նա կարող է օրինակ ծառայել մյուս ժողովուրդների համար։ Սակայն այս հեքիաթին կարող են հավատալ միայն միամիտները։ Ինչ խոսք կարող է լինել մամուլի ազատության մասին այն աշխարհում, ուր թագավորում է անարդարությունը, ուր մի բուռն մարդկանց բաժին է ընկել անբավ հարստությունը, իսկ միլիոններին՝ աղքատությունն ու կարիքը։

Ինչ խոսք կարող է լինել մամուլի ազատության մասին շահագործողական հասարակարգում, երբ մամուլի աշխատողը ծախում է իր խիղճն ու պատիվը, ազնվությունն ու կամքը՝ իր տերերին դուր գալու համար։ Ամերիկյան ժուռնալիստներից մեկը հայտարարել է. «Ինձ շաբաթական 150 դոլար են



վճարում, որպեսզի ես չհայտնեմ իմ սեփական կարծիքը այն թերթում, ուր աշխատում եմ»։

Մամուլը կարող է ազատ լինել միայն այն երկրում, ուր չկան տերեր և ստրուկներ, ուր իշխանությունը գտնվում է աշխատավոր ժողովրդի ձեռքին։

Մամուլի ազատության իսկական օրինակ են տալիս սոցիալիստական լագերի երկրները և առաջին հերթին՝ սովետական երկիրը, որն ավելի քան չորս տասնամյակ առաջ փշրելով կապիտալիզմի կապանքները, արդեն հասել է այնպիսի բարձունքների, որտեղից երևում է մարդկության լուսապայծառ ապագան՝ կոմունիզմը։

Մոտ մի հարյուրամյակ առաջ գիտական կոմունիզմի մեծ հիմնադիր Մարքսն ասում էր. «Ազատ մամուլը՝ ժողովրդի ոգու բաց աչքն է, իր նկատմամբ տածած վստահության մարմնացումը, այն պերճախոս օղակը, որն առանձին անհատին միացնում է պետության և ողջ աշխարհի հետ... Ազատ մամուլը՝ մի հայելի է, որում ժողովուրդն իրեն է տեսնում, իսկ ինքնաճանաչումը իմաստության առաջին պայմանն է։ Ազատ մամուլը՝ պետական բանականության ջահն է, որը կարող է թափանցել ամեն մի խրճիթ, որն էժան է յուրաքանչյուր նյութական լույսից։ Այն համակողմանի է, ամենուր գործող և ամեն ինչ առաջ մղող»։

Մարքսի հանճարեղ կանխատեսությունը իրականացված է։ Սովետական մամուլը, հիրավի, մեր ժողովրդի ոգու բաց աչքն է, նրա «վստահության մարմնացումը», մեր «պետական բանականության» ջահը, որը հավերժորեն բոցավառվում է ամեն հարկի տակ և մարքսիզմ-լենինիզմի անմահ գաղափարներով լուսավորում կոմունիզմ կառուցող մարդկանց հաղթական ուղին։

# ԴՊՐՈՑԻ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԳՈՐԾ Է

Բ. ԱՎՋՅԱՆ, Ս. ԱՆՏՈՆՅԱՆ

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանով նախատեսվում է ոչ միայն մեր երկրի էկոնոմիկայի հզոր վերելք, այլև սովետական ժողովրդի հոգևոր ուժերի հետագա ծաղկում։ Այդ առումով հատուկ նշանակություն է ստանում ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ գումարման երկրորդ սեսիայում «Կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու և Սովետական Միությունում ժողովրդական կրթության հետագա զարգացման մասին» ընդունված օրենքը։

Հանրահայտ են ժողովրդական կրթության ձեռք բերած մեծ հաջողությունները մեր երկրում։ Սովետական դպրոցը պատրաստել ու պատրաստում է տասնյակ միլիոնավոր քաղաքացիներ, սոցիալիստական շինարարության ակտիվ կառուցողներ։ Հանրակրթական դպրոցը աճեցրել է մասսայական կադրեր, որոնք հետագայում ձեռք բերելով բարձրագույն կրթություն՝ դարձել են սոցիալիստական արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի ու գիտության հիանալի մասնագետներ։

Ներկայումս ՍՍՌՄ մասսայական դպրոցներում սովորում է ավելի քան 50 միլիոն մարդ։ Յուրաքանչյուր 1.000 բնակչին ընկնող սովորողների թվով մեր երկիրն առաջին տեղն է գրավում ամբողջ աշխարհում։ Բարձրագույն ուսումնական հաստատություններում մեր սովորողների թիվը գրեթե չորս անգամ ավելի է, քան Անգլիայում, Ֆրանսիայում, Իտալիայում, Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում միասին վերցրած։

Սովետական դպրոցը պատվով է լուծել իր առջև դրված խնդիրները։ Սակայն մեր երկրում կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման պլանները նոր պահանջներ ու խնդիրներ են ներկայացնում նրան։

Ուսուցման սերտ կապը կյանքի հետ պետք է դառնա դպրոցում գիտությունների հիմունքների ուսումնասիրության հիմնական սկզբունքը, աճող սերունդը կոմունիստական բարոյականության ոգով դաստիարակելու հիմքը։ Ուսուցման շաղկապումը արտադրական աշխատանքի հետ՝ բարձրացնում է սովորողների ձեռք բերած գիտելիքների նշանակությունը, հնարավորություններ ստեղծում նրանց համար՝ մաքսիմում կերպով դրսևորելու սեփական ինքնուրույնությունը, ստեղծագործական ուժերի և ունակությունների համապատասխան գտնելու իրենց տեղը կյանքում։

ՀՍՍՌ Գերագույն Սովետի հինգերորդ գումարման առաջին սեսիայի ընդունած օրենքի համապատասխան, առաջիկա 3—5 տարիների ընթացքում մեր



ռեսպուբլիկայում պետք է վերակառուցվի միջնակարգ և բարձրագույն դպրոցների ամբողջ սիստեմը։

Այդ կարևոր խնդրի լուծումը համաժողովրդական մեծ գործ է։ Այն պարտիական, սովետական, պրոֆմիութենական, կոմերիտական կազմակերպություններից, ժողովրդական կրթության բոլոր օրգաններից պահանջում է լայն նախապատրաստական աշխատանք ծավալել և ուսուցման առաջին տարիներից երեխաներին հոգեբանորեն նախապատրաստել այն բանին, որ նրանք մասնակցելու են հանրօգուտ ֆիզիկական աշխատանքի։ 5-րդ դասարանից սկսած աշակերտները որոշ աշխատանք են կատարելու դպրոցական արհեստանոցներում, ուսումնա-փորձնական հողամասերում, ինչպես նաև դպրոցամերձ փողոցների, հրապարակների կանաչապատման և բարեկարգման համար։ Նրանք իրենց ուժերը ներածին չափ կօգնեն կոլտնտեսություններին ու սովետական տնտեսություններին։ Տարեցտարի աշակերտների հանրօգուտ աշխատանքը կստանա ավելի սիստեմատիկ ու ծավալուն բնույթ։ Համաձայն օրենքի, 8-ամյա դպրոցն ավարտողները լայն հնարավորություններ կունենան միջնակարգ կրթություն ձեռք բերելու։ Մեծ չափով կընդարձակվի երեկոյան դպրոցների, բանվորի, գյուղերիտ, հերթափոխային ու սեզոնային միջնակարգ դպրոցների, մասնագիտական դպրոցների, տեխնիկումների ցանցը։ Գյուղերիտ բոլոր դպրոցները կվերածվեն միջնակարգ դպրոցի։

Միջնակարգ կրթության երկրորդ էտապում աշակերտությանը տրվելու են պոլիտեխնիկական խոր գիտելիքներ. ուսուցումը կմիացվի արտադրական աշխատանքի հետ, աշակերտները ձեռք կբերեն կոնկրետ մասնագիտություն։ Միաժամանակ լուրջ ուշադրություն կհատկացվի աշակերտության հանրակրթական գիտելիքների բարձրացմանը։

Արտադրական ուսուցման կազմակերպումն ու աշակերտների պրակտիկ աշխատանքը կարող են իրականացվել տարբեր ձևերով, ելնելով տեղի պայմաններից, յուրաքանչյուր դպրոցի առանձնահատկություններից և հնարավորություններից։ Միջնակարգ կրթության երկրորդ էտապում նախատեսվում է աշակերտների դիֆերենցված մասնագիտական պատրաստում՝ ժողովրդական տնտեսության այս կամ այն ճյուղերում աշխատելու համար։

Դպրոցի վերակառուցումը մեծապես նպաստելու է սովորողների դաստիարակչական աշխատանքների ուժեղացմանը։ Այստեղից էլ բնականաբար փոխվում են դպրոցների կոմերիտական ու պիոներական կազմակերպությունների առջև դրված խնդիրները։ Կոմերիտական ու պիոներական կազմակերպությունների ամբողջ գործունեության նպատակը պետք է լինի սովորողների հոգեբանական և գործնական նախապատրաստումն ինքնուրույն աշխատանքային կյանքի համար։ Նրանք կոչված են դպրոցականների մեջ զարգացնել աշխատասիրություն, հաստատակամություն, հետաքրքրություն գիտելիքների նկատմամբ, սովորողներին դաստիարակել բանվոր դասակարգի ռևոլյուցիոն և աշխատանքային պանծալի տրադիցիաներով, Հայրենիքի նկատմամբ անսահման սիրո ոգով։

Կոմերիտմիության շրջկոմները և քաղկոմները պետք է բարելավեն դպրոցների կոմերիտական կազմակերպության ղեկավարությունը, պայքարեն սովորողների նախաձեռնությունն ու ինքնագործունեությունը զարգացնելու համար։ Այդ կազմակերպությունների գործունեությունը պետք է նպատակամղվի սովորողների մեջ գիտակցական կարգապահությունն ամրապնդելու, ուսուց-

ման ու դաստիարակության գործը ժամանակակից պահանջներին համապատասխան լուծելու, դպրոցի ինքնասպասարկումը հաջողությամբ կազմակերպելու համար։

Դպրոցի վերակառուցման խնդիրները պարտիական, սովետական կազմակերպություններից պահանջում են ամեն կերպ ուժեղացնել օգնությունը դպրոցին։ Նրանք առաջին հերթին պետք է հոգ տանեն՝ իրականացնելու ութամյա պարտադիր ուսուցումն ինչպես քաղաքում, այնպես էլ գյուղական վայրերում։ Ընդհանուր ութամյա պարտադիր ուսուցումը կենսագործելու ուղղությամբ զգալի չափով պետք է բարձրացվի ինչպես դպրոցի, այնպես էլ ծնողների դերն ու պատասխանատվությունը։

Ռեսպուբլիկայի ոչ բոլոր գյուղական բնակավայրերն են, որ կարող են ունենալ ութամյա դպրոցներ. ուստի, անհրաժեշտ է ապահովել երկու կիլոմետրից հեռու բնակավայրերից եկող երեխաների փոխադրման գործը։ Դըպրոցներում պետք է պայմաններ ստեղծվեն երեխաների կենցաղային սպասարկման, սննդի կազմակերպման համար։ Պարտադիր ութամյա ուսուցումը պետք է իրականացվի՝ ոչ մի երեխա դուրս չթողնել դպրոցից նշանաբանով։ Քանի որ ռեսպուբլիկայում ներկայումս գործող յոթնամյա դպրոցների որոշ մասը (հատկապես լեռնային շրջաններում) չունի նյութա-տեխնիկական անհրաժեշտ բազա և համապատասխան չափով աշակերտական կոնտինգենտ ութամյա դպրոցի կազմակերպման համար, ռեսպուբլիկայի Լուսավորության մինիստրությունն ու Պետպլանը պետք է ուսումնասիրեն և լուծեն այդ հարցը, թույլ չտալով բնակչության դպրոցական սպասարկման վատացում։

Առաջիկա յոթնամյակում բուռն կերպով զարգանալու է ժողովրդական կրթությունը. 1965 թվականին ռեսպուբլիկայի մասսայական դպրոցներում սովորողների թիվը կհասնի 477 000 մարդու, ներկայիս 294 000-ի փոխարեն։ Հինգի փոխարեն կգործի 75 գիշերօթիկ դպրոց, ուր կընդգրկվի ավելի քան 24 հազար երեխա։ Կկառուցվեն բազմաթիվ նոր դպրոցներ՝ 81.500 աշակերտատեղով։ Դպրոցաշինարարության գործին կմասնակցեն նաև կոլտնտեսությունները։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների զգալի մասն այժմ ունի բոլոր հնարավորությունները՝ լայնորեն մասնակցելու գյուղում կատարվող կուլտուրական և, հատկապես, դպրոցաշինության գործին։ Արտաշատի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Շահումյանի և այլ շրջանների կոլտնտեսությունների զգալի մասը ունի բավարար միջոցներ օրինակելի դպրոցներ կառուցելու համար։ Վերջին տարիներում մի շարք կոլտնտեսություններ արդեն ձեռնամուխ են եղել այդ պատվաբեր գործին։ Բայց, դժբախտաբար, կոլտնտեսությունների ուժերով կառուցվող դպրոցական շենքերը միշտ չէ, որ ապահովվում են շինանյութերով։ Այժմ էլ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում կան շատ կիսավարտ դպրոցական շենքեր, որոնց կառուցումը շինանյութերի պակասի պատճառով չի շարունակվում։ Շահումյանի շրջանի Թաղագյուղի կոլտնտեսությունը մի քանի տարի է չի կարողանում դպրոցական շենքի կառուցումն ավարտել՝ ցեմենտ և շինափայտ չստանալու պատճառով։

Պետպլանը, մատակարարող կազմակերպությունները պետք է հոգան այդ մասին և կոլտնտեսություններին ապահովեն շինանյութերով՝ դպրոցական շենքերի կառուցումը արագացնելու համար։

Դպրոցի վերակառուցման հաջող իրականացման համար վճռական նշա-



նակություն ունի նրա ուսումնա-արտադրական բազայի ստեղծումը։ Ութամյա դպրոցը աշակերտներին հանրակրթական գիտելիքներ տալու հետ միասին դառնալու է նաև նրանց պոլիտեխնիկական ուսուցման ու աշխատանքային դաստիարակության առաջին կարևոր օղակը։ Այստեղ աշակերտները ձեռք են բերում ոչ միայն ընդհանուր տեսական պատրաստականություն, այլև արտադրության ընդհանուր պրոցեսների իմացություն և գործնական աշխատանքի նախնական հմտություն։ Դպրոցում աշակերտության պոլիտեխնիկական ուսուցումը հաջող կազմակերպելու համար անհրաժեշտ է ամեն մի դպրոցում ունենալ կահավորված լաբորատորիա, արհեստանոց, կաբինետներ, ուսումնափորձնական հողամաս և այլն։ Սակայն գյուղական շատ դպրոցներ չունեն այդ հարմարությունները։ Կոլտնտեսությունները, սովետական տնտեսությունները պետք է ամեն կերպ օգնեն դպրոցներին՝ ուսումնա-փորձնական հողամասերում գյուղատնտեսական կուլտուրական մշակություն կազմակերպելու և լավ պայմաններ ստեղծեն աշակերտական ուսումնա-արտադրական բրիգադների արտադրական աշխատանքի համար։ Արտադրական ձեռնարկությունները պարտավոր են բանվորական տեղեր հատկացնելու սովորողներին և մասնագիտական ղեկավարություն ապահովելու նրանց աշխատանքի նկատմամբ։

Դպրոցի վերակառուցման մասին ընդունված օրենքում հատուկ ուշադրություն է հատկացված բանվոր և գյուղական երիտասարդության երեկոյան (հերթափոխային) դպրոցներին, որոնք հանդիսանում են լրիվ միջնակարգ կըրթություն տվող հիմնական տիպի դպրոցներ։ Ութամյա դպրոցն ավարտողների մեծ մասը միջնակարգ կրթություն ձեռք կբերի բաներիտ և գյուղերիտ դպրոցներում։ Այդ դպրոցները երիտասարդությանը ոչ միայն ընդհանուր միջնակարգ կրթություն են տալու, այլև, դրա հետ մեկտեղ, խորացնելու են մասնագիտական գիտելիքները՝ կապված նրանց պրակտիկ աշխատանքի հետ։

Ներկայիս բաներիտ և գյուղերիտ դպրոցները ներկա ուսումնանյութական բազայով ի վիճակի չեն ամբողջապես լուծելու իրենց առջև դրված խնդիրները։ Շատ բաներիտ դպրոցներ ոչ միայն չունեն սեփական դպրոցական շենքեր, այլև լաբորատորիաներ ու կաբինետներ։ Իսկ արտադրական ձեռնարկությունների դիրեկցիաները երբեմն հոգատարություն հանդես չեն բերում այդ դպրոցներին անհրաժեշտ օգնություն ցույց տալու գործում։ Բաներիտ ու գյուղերիտ դպրոցների զգալի մասը ապահովված չի նաև մշտական մանկավարժներով. հաճախակի փոփոխվում են ուսուցիչները, որը, անշուշտ, բացասաբար է ազդում ուսման որակի և կարգապահության ամրապնդման վրա։

Բաներիտ և գյուղերիտ դպրոցները արժանի են համաժողովրդական հոգատարության։ Պարտիական ու սովետական կազմակերպությունների անհետաձգելի խնդիրն է ըստ ամենայնի բարելավել այդ դպրոցների աշխատանքը։

ՍՄԿՊ XXI համագումարին տված իր զեկուցման մեջ ընկեր Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ հարկավոր է բարձրացնել պետության ու հասարակության դերը երեխաների դաստիարակության գործում։ Այդ խնդրի լուծման համար վճռական անելիքներ ունեն գիշերօթիկ դպրոցները։ Ժողովրդական կրթության սիստեմում գնալով մեծանում է այդ դպրոցների դերն ու նշանակությունը։ Տեղական պարտիական, սովետական կազմակերպությունները, Լուսավորության մինիստրությունը լուրջ ուշադրություն պետք է հատկացնեն այդ դպրոցների նյութա-տեխնիկական անհրաժեշտ բազայի ստեղծման, դպրոցները բարձրորակ մանկավարժներով ապահովելու գործին։

Դպրոցի վերակառուցումը նոր խնդիրներ ու նոր պահանջներ է առաջադրում մանկավարժներին։ Մեզ մոտ քիչ չեն իրենց աշխատանքը խորապես սիրող, մանկավարժական անբասիր աշխատանքի վաստակ ունեցող մանկավարժներ։ Բայց, ցավոք սրտի, դեռևս կան այնպիսի ուսուցիչներ, որոնք չեն համապատասխանում մանկավարժի բարձր կոչմանը։ Մեր կարծիքով անհրաժեշտ է արմատապես լուծել դպրոցը այդպիսի դասատուներից ազատելու խնդիրը։ Այս հարցի դրական լուծումը հնարավորություն կտա զգալի չափով բարձրացնելու պատանիների կրթության մակարդակը։

ՀՍՍՌ Գերագույն Սովետի ընդունած օրենքի համաձայն պետք է վերակառուցվի նաև բարձրագույն դպրոցը։ Անհրաժեշտ է հենց 1959—60 ուս. տարվանից ձեռնարկել մասնագիտական լավագույն կադրերի պատրաստման գործին։ Լուսավորության մինիստրությունը և Պետպլանը պետք է ճշգրտեն, թե ինչպիսի մասնագիտությամբ և որքան կադրեր են անհրաժեշտ դպրոցին առաջիկա տարիների ընթացքում։ Ելնելով վերոհիշյալ օրենքից, նրանք պետք է լուրջ միջոցառումներ իրականացնեն ռեսպուբլիկայի բոլոր դպրոցները բարձրագույն մասնագիտական կրթությամբ ուսուցիչներով ապահովելու համար։

Անհրաժեշտ է ուսուցիչների պատրաստման գործում ուժեղացնել արտադրական և մանկավարժական պրակտիկան։ Այդ տեսակետից պետք է համակողմանիորեն բարելավվի Պետական համալսարանի, մանկավարժական ինստիտուտների կապը ռեսպուբլիկայի դպրոցների հետ։ Այդ բարձրագույն ուսումնական հաստատություններում պատշաճ հիմքերի վրա պետք է դրվի մեթոդիկայի դասավանդումը։

Վերակառուցվող դպրոցում հատուկ ուշադրություն պետք է հատկացվի սովորողների էսթետիկական դաստիարակությանը։ Այժմյան դպրոցների մեծ մասում երեխաների գեղարվեստական դաստիարակությունը անկայուն հիմքերի վրա է դրված։ Երգի, երաժշտության, պարարվեստի ուսուցումը ոչ միայն առանձին դպրոցներում, այլև առանձին շրջաններում տարվում է ցածր մակարդակով, իսկ հաճախ այն ձևական բնույթ է կրում։ Դրա հիմնական պատճառն այն է, որ դպրոցներն ապահովված չեն մասնագետ կադրերով. այդ առարկաների դասավանդումը երբեմն հանձնարարվում է բոլորովին պատահական մարդկանց։ Դպրոցներում չկան երաժշտական անհրաժեշտ գործիքներ և տարրական հարմարություններ՝ գեղարվեստական ինքնագործունեության համար։ Ժողովրդական կրթության օրգանները պետք է վճռական միջոցների դիմեն դպրոցները մասնագետ կադրերով ապահովելու համար։ Անհրաժեշտ է բոլոր դպրոցներում ստեղծել երգի, պարի, թատերական, ասմունքի ինքնագործ խմբակներ, որոնց պետք է ակտիվորեն մասնակցեն ոչ միայն աշակերտները, այլև ուսուցիչները։

Անհրաժեշտ է բարելավել նաև սովորողների ֆիզիկական դաստիարակության գործը։ Կոլտնտեսությունների, սովետական տնտեսությունների, արտադրական ձեռնարկությունների, շեֆ կազմակերպությունների օգնությամբ և աշակերտների ակտիվ մասնակցությամբ բոլոր դպրոցներում պետք է ստեղծվեն ֆիզկուլտուրայի բարեկարգ հրապարակներ և հարմարություններ։

Մանկավարժական կոլեկտիվների, դպրոցական պարտիական, կոմերիտական, պիոներական կազմակերպությունների դաստիարակչական դերի բարձրացման հետ մեկտեղ, մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակու-



թյան գործում պետք է ուժեղացվի նաև պետական, հասարակական բոլոր կազմակերպությունների, ծնողական կոմիտեների աշխատանքը։ Մեր երկրի բոլոր քաղաքացիները ակտիվ կերպով պետք է մասնակցեն սովորողների կոմունիստական աշխարհայացքի ձևավորման գործին։ Աշխատասիրությունը, ազնվությունը, ճշմարտացիությունը, հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը, կոլեկտիվիզմը, Հայրենիքի, սովետական ժողովրդի ու Կոմունիստական պարտիայի նկատմամբ անսահման սերը, երկրին ու ժողովրդին ավելի շատ բանով օգտակար լինելու ձգտումը պետք է դրվեն սովորողների մեջ տարվող դաստիարակչական ամենօրյա աշխատանքի հիմքում։

Անհրաժեշտ է, որ ոչ միայն դպրոցն ու ուսուցիչը, այլ ամբողջ հասարակությունը ակտիվորեն միջամտի սովորողների օրինապահության կենսագործմանը։ Փողոցում, հասարակական վայրերում և ամենուր դպրոցականի կողմից թույլ տրված օրինազանցությունը հենց տեղում պետք է պախարակվի ներկաների կողմից։ Հասարակական կազմակերպությունները պետք է զբաղվեն այն ծնողների հարցով, որոնք «զբաղվածության» պատրվակով թողտվություն են հանդես բերում իրենց երեխաների դաստիարակության գործում։

Դպրոցի աշխատանքի հաջողությունները պայմանավորված են նաև նրանով, թե որքան ճիշտ են կազմված ուսումնական պլանները, ծրագրերը և դասագրքերը։ Ուսումնական պլանում նախատեսվում է պահպանել ներկա միջնակարգ դպրոցի հանրակրթական գիտելիքների մակարդակը, ամեն կերպ բարելավել առարկաների դասավանդման դրվածքը և աշակերտների ձեռք բերած գիտելիքները։ Այս տեսակետից էլ կարևոր նշանակություն է ստանում հատկապես լեզուների դասավանդման վիճակի բարելավման անհրաժեշտությունը։ Փաստերը ցույց են տալիս, որ ռեսպուբլիկայի շատ դպրոցներում ցածր մակարդակի վրա է գտնվում հայոց լեզվի դասավանդումը, որի պատճառով էլ միջնակարգ դպրոցների շրջանավարտների զգալի մասը մայրենի լեզվից չունի բավարար գիտելիքներ. ցածր է նրանց ինչպես գրավոր, այնպես էլ բանավոր խոսքի կուլտուրան։ Լեզուների ուսուցման ընթացքում մեծ տեղ է գրավում շաբլոնը, քերականական կանոնների ու սահմանումների սերտումը։

Կարևոր նշանակություն ունի ռեսպուբլիկայի դպրոցներում ռուսաց լեզվի դասավանդման բարելավումը։ Մեր դպրոցականները ամենայն սիրով ու պատրաստակամությամբ են սովորում ռուս մեծ ժողովրդի հարուստ լեզուն. այդ լեզվին տիրապետելը դարձել է սովորողների կենսական պահանջը և նրանց ծնողների հոգատարության առարկան։ Խնդիրն այն է, որպեսզի ըստ ամենայնի բարձր հիմքերի վրա դրվի ռուսաց լեզվի ուսուցումը։

Սովետական մասսայական դպրոցը թևակոխում է իր զարգացման նոր էտապը։ Կոմունիստական շինարարության շահերը պահանջում են արմատապես բարելավել մատաղ սերնդի կրթության ու կոմունիստական դաստիարակության գործը։

Պարտիական, սովետական կազմակերպությունների անմիջական պարտականությունն է գործնական միջոցներ իրականացնել դպրոցի վերակառուցման վերաբերյալ ՀՍՍՌ Գերագույն Սովետի սեսիայի ընդունած օրենքը կյանքում անշեղորեն կենսագործելու համար։

---

# ՍՄԿՊ XXI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՆՅՈՒԹԵՐԸ ՄԱՍՍԱՆԵՐԻՆ

Մ. ՄԻՆԱՍՅԱՆ

Մեր փառապանծ պարտիայի XXI համագումարի որոշումները ոգևորության, ստեղծագործության, նոր նախաձեռնությունների անսպառ աղբյուր են դարձել Երևանի աշխատավորների համար։ Կենսագործելով համագումարի որոշումները, նրանք գերակատարեցին քաղաքի արդյունաբերության յոթնամյակի առաջին տարվա՝ 1959 թվականի առաջին եռամսյակի արտադրական պլանները։

Յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու վեհ ձգտումով տոգորված, Ձերժինսկու անվան հաստոցաշինական, ավտոպահեստամասերի, կոմպրեսորների և փոքր հիդրոտուրբինների գործարանների կոլեկտիվները հայրենասիրական կոչ հղեցին ռեսպուբլիկայի արդյունաբերական բոլոր ձեռնարկությունների կոլեկտիվներին՝ հայտնելով յոթնամյակը վեց տարում կատարելու իրենց որոշման մասին։ Այդ նախաձեռնությունը լայն արձագանք գտավ մայրաքաղաքի արդյունաբերական ձեռնարկություններում. շատ գործարանների կոլեկտիվներ, հետևելով նրանց օրինակին, որոշել են յոթնամյակը կատարել վեց տարում։

Յոթնամյա պլանով մայրաքաղաքի աշխատավորների առջև դրված հոյակապ խնդիրների կատարման համար անհրաժեշտ է լայնորեն մասսայականացնել ՍՄԿՊ XXI համագումարի նյութերը, օգնել յուրաքանչյուր բանվորի, կոլտնտեսականի, մասնագետի և ծառայողի՝ գտնելու իր տեղը յոթնամյա պլանի կատարման համար մղվող պայքարում։

Վերջին տարիներին Երևանի պարտիական կազմակերպությունները զգալի փորձ են կուտակել աշխատավորների շրջանում ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը կազմակերպելու, այն կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ կապելու գործում։ Այժմ լուրջ քայլեր են արվում այդ փորձը կատարելագործելու և համագումարի նյութերն ավելի հաջող պրոպագանդելու համար։

Մայրաքաղաքի պարտիական լուսավորության բոլոր խմբակներում, քաղդպրոցներում և սեմինարներում ուսումնասիրվում են համագումարի նյութերը։ Պարապմունքներն առանձնապես գաղափարական բարձր մակարդակով են անցնում ալյումինի գործարանի պարտիական կազմակերպության խմբակներում։ Այստեղ համագումարի նյութերի ուսումնասիրումը կրում է գործնական բնույթ և կապվում կոլեկտիվի աշխատանքի հետ։ Ունկնդիրները ո՛չ միայն լավ են ըմբռնում ուսումնասիրվող նյութը, այլև կարողանում են անել



տեսական և գործնական հետևություններ, որոշել իրենց անելիքները՝ յոթնամյակի ընթացքում ալյումինի արտադրությունը կրկնապատկելու համար։

ՍՄԿՊ XXI համագումարի նյութերի ուսումնասիրությունը տեսական բարձր մակարդակով է անցնում նաև Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի պարտկազմակերպության խմբակներում։ Այստեղ պրոպագանդիստները պարզաբանելով յոթնամյակի պլանային առաջադրանքները, միաժամանակ ցույց են տալիս այն խնդիրները, որոնք դրված են իրենց ձեռնարկության կոլեկտիվի առջև։ Խմբակների պարապմունքները մեծապես նպաստում են կոմունիստների տեսական մտահորիզոնի լայնացմանը, օգնում ունկնդիրներին՝ ավելի խոր հասկանալու սոցիալիստական տնտեսվարման գիտական հիմունքները, լավ ղեկավարելու հանձնարարված տեղամասը, պետականորեն լուծելու տնտեսական հարցերը։

Խմբակների, քաղդպրոցների և սեմինարների պարապմունքների բովանդակության հարստացման գործում կարևոր նշանակություն ունի պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքը։ Այդ նպատակով քաղաքի բոլոր պարտշրջկոմներում, ինչպես նաև քաղաքային կոմիտեում կազմակերպված են պրոպագանդիստների մշտական գործող սեմինարներ, որտեղ ուսումնասիրվել են համագումարում ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ արծարծված այն տեսական դրույթները, որոնք վերաբերում են կոմունիստական հասարակարգի երկու փազերին, ՍՍՌՄ-ում սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակին, կոմունիզմի պայմաններում պետության մահացման ուղիներին և այլն։ Այդ սեմինարներում հանդես են գալիս պարտիական և սովետական ղեկավար աշխատողներ, գիտնականներ և ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների մասնագետներ։ Պարտիայի քաղաքային կոմիտեն բուհերի հասարակական գիտությունների ամբիոնների դասախոսներից ստեղծում է մեթոդիստների խմբեր, որոնք պետք է լսեն խմբակների ու սեմինարների պարապմունքները և անհրաժեշտ օգնություն ցույց տան պրոպագանդիստներին։

Պարտիայի XXI համագումարի նյութերի ուսումնասիրման նպատակով Երևանի պարտկազմակերպությունները անց են կացնում նաև տեսական կոնֆերանսներ։ Կոնֆերանսներն ընթանում են ակտիվ, ստեղծագործական մթնոլորտում, կոմունիստների և անպարտիականների լայն մասնակցությամբ։ Վերջերս պարտիայի քաղաքային կոմիտեն քաղաքի շինարարների համար կազմակերպեց տեսական կոնֆերանս՝ «ՍՄԿՊ XXI համագումարը շինարարության որակի բարձրացման և ինքնարժեքի իջեցման մասին» թեմայով։ Կոնֆերանսում զեկուցումներով հանդես եկան Շինանյութերի և կառուցվածքների գիտա-հետազոտական ինստիտուտի դիրեկտոր Ջ. Գյուլխանդանյանը, շինարարության մինիստրի տեղակալ Գ. Կանեցյանը, Համաշինարարական № 9 տրեստի կառավարիչ Գ. Բաբայանը, ինժեներներ՝ Ռ. Մելիքյանը, Գ. Խորասանյանը, ճարտարապետ Գ. Մելքումյանը։ Մտքերի փոխանակությանը մասնակցեցին շատ ինժեներներ, բանվորներ, ճարտարապետներ և գիտնականներ։ Ինչպես զեկուցողները, այնպես էլ ելույթ ունեցողները նշում էին այն կոնկրետ խնդիրները, որոնք պարտիայի XXI համագումարը դրել է երկրի շինարարների առջև։

Ելնելով այդ խնդիրներից՝ տեսական կոնֆերանսը հատկապես բարձրացրեց շինարարության արագ ինդուստրացման հարցը։ Կոնֆերանսի մասնակից-

ները հանգեցին այն եզրակացության, որ ներկայումս անհրաժեշտ է լայնորեն արմատավորել երկաթ-բետոնե պանելների արտադրության նոր եղանակները։ Կոնֆերանսն անցավ մեծ ակտիվության պայմաններում. նրա մասնակիցները պարտիական կազմակերպություններից արդարացիորեն պահանջում էին հաճախակի անցկացնել նման միջոցառումներ։

Տեսական կոնֆերանսներ են անցկացվել նաև պարտիական ու սովետական ակտիվի համար հետևյալ թեմաներով՝ «Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու օրինաչափությունների մասին», «Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը», «Կապիտալիզմի հետ սոցիալիզմի խաղաղ մրցակցության վճռական էտապը»։ Քաղաքի բժիշկների համար տեսական կոնֆերանս անցկացվեց «Ժամանակակից բիոլոգիայի և բժշկության նվաճումները դիալեկտիկական մատերիալիզմի լույսի տակ» թեմայով։

Երևանի աշխատավորները մեծ հետաքրքրությամբ են հետևում մեր լայնածավալ Հայրենիքի կյանքին, գրականության, գիտության ու տեխնիկայի նորություններին և միջազգային իրադարձություններին։ Քաղաքի պարտիական կազմակերպությունները դասախոսությունների, զեկուցումների, զրույցների և այլ միջոցներով սպառիչ պատասխան են տալիս աշխատավորներին հուզող հարցերին։ Այդ նպատակին են ծառայում հարց ու պատասխանի երեկոները, որոնք լավ արդյունք են տալիս։ Վերջերս հարց ու պատասխանի երեկոներ կազմակերպվեցին քաղաքի կուլտուրայի տներում։ Համագումարի որոշումներին, յոթնամյակի առաջադրանքներին վերաբերող աշխատավորների տված շատ հարցերին պատասխանեցին պարտիական, սովետական ղեկավար աշխատողներ և գիտնականներ ։ Այդ երեկոների ժամանակ աշխատավորներն իրենց կոնկրետ առաջարկություններն էին անում յոթնամյա պլանով մայրաքաղաքի բանվորների ու ծառայողների առջև դրված խնդիրների կատարումն ապահովելու համար։

Փորձը ցույց է տալիս, որ հարց ու պատասխանի երեկոները լավագույն միջոց են մասսաների և պարտիական ու սովետական կազմակերպությունների կապի ամրապնդման համար. դրանք օգնում են ավելի լավ և մոտիկից իմանալու մարդկանց պահանջմունքները, բացահայտելու և վերացնելու աշխատանքի թերությունները։ Ահա թե ինչու քաղաքի պարտիական կազմակերպություններն ավելի ու ավելի մեծ տեղ են տալիս հարց ու պատասխանի երեկոների կազմակերպմանը։

ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների պրոպագանդման լավագույն ձև է դարձել բանավոր ամսագիրը։ Արդյունավետ անցավ վերջերս քաղկոմի քաղաքական լուսավորության տանը կազմակերպված բանավոր ամսագիրը՝ հետևյալ թեմաներով՝ «Երևանը յոթնամյակում» «Հայկական կինոարվեստի նվաճումները», «Մաթեմատիկական էլեկտրոնային հաշվիչ մեքենաները և նրանց օգտագործումը ժողովրդական տնտեսության մեջ»։

Բանավոր ամսագրերի, հարց ու պատասխանի, թեմատիկ ու երիտասարդական երեկոների և նման այլ միջոցառումների անցկացման ժամանակ պարտիական կազմակերպությունները ելնում են ՍՄԿՊ XXI համագումարի որոշումից, ըստ որի «Մեր պարտիայի ու պետության գաղափարական ամբողջ աշխատանքը կոչված է զարգացնելու սովետական մարդկանց նոր հատկությունները, նրանց դաստիարակելու կոլեկտիվիզմի և աշխատասիրության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության, նոր



հասարակարգի բարոյականության վեհ սկզբունքների ոգով, մարքսիզմ-լենինիզմի ոգով»։

Աշխատավորների շրջանում պարտիայի XXI համագումարի նյութերը մասսայականացնելու համար լայնորեն օգտագործվում են մայրաքաղաքի ագիտատորների կոլեկտիվները, որոնց հետ շատ պարտիական կազմակերպություններ սիստեմատիկ աշխատանք են կատարում։

Ագիտատորների հետ աշխատանք տանելու և նրանց օգնելու գործում հատկապես ուսանելի փորձ է կուտակել պարտիայի 26 կոմիսարների շրջկոմը։ Այստեղ գործում է ագիտատորների դպրոց, ուր կազմակերպվել են դասախոսություններ, զեկուցումներ, ուսումնասիրվել, ընդհանրացվել և մասսայականացվել է լավագույն ագիտատորների աշխատանքի փորձը։ Ուսուցումը դպրոցում հարստացնում է ագիտատորների գիտելիքները, օգնում նրանց ավելի հետաքրքիր և կոնկրետ վարելու քաղաքական ագիտացիան։

Ագիտկոլեկտիվների ղեկավարների և ագիտատորների հետ սիստեմատիկ աշխատանք է տանում նաև պարտիայի քաղկոմի Քաղաքական լուսավորության տունը։ Ագիտատորների համար այստեղ տեղեկատու նյութեր կան ռեսպուբլիկայի, Երևանի և նրա շրջանների ձեռք բերած հաջողությունների և յոթնամյակում նրանց զարգացման հեռանկարների մասին։ Բացի այդ, ստեղծվել է ագիտատորի կաբինետ, որտեղ զրույցներ են կազմակերպվում «ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները», «Ագիտացիան թաղամասում», «Ագիտատորի խոսքի կուլտուրան» և այլ թեմաներով։

Համագումարի որոշումների պրոպագանդման գործում կարևոր տեղ է գրավում դասախոսական պրոպագանդան, որին ակտիվ մասնակցություն են ցուցաբերում ռեսպուբլիկայի անվանի գիտնականները, արտադրության առաջավորները, բուհերի դասախոսները, պարտիական և սովետական պատասխանատու աշխատողները։ Մայրաքաղաքի բազմաթիվ հիմնարկ-ձեռնարկություններում հետաքրքիր դասախոսություններ են կարդացվում ՍՄԿՊ XXI համագումարի միջազգային նշանակության, սոցիալիզմից կոմունիզմին անցնելու օրինաչափությունների մասին, Երևանը յոթնամյակում, Հայաստանի էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը և սարքաշինությունը յոթնամյակում և այլ թեմաներով։ Քաղկոմի ու շրջկոմների քաղաքական լուսավորության տներում ու կաբինետներում, սկզբնական պարտիական կազմակերպություններում կազմակերպված են լեկտորիումներ և ցիկլային դասախոսություններ՝ նվիրված պարտիայի ՍՄԿՊ XXI համագումարի նյութերին։

Զգալի բեկում է նկատվում ռեսպուբլիկայի քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերության Երևանի բաժանմունքի աշխատանքում։ Բաժանմունքը համագումարի նյութերի շուրջ տարբեր թեմաներով Երևանում կազմակերպել է հազարից ավելի դասախոսություն։ Համագումարի արդյունքների մասին մայրաքաղաքի մի շարք հիմնարկ-ձեռնարկությունների կոլեկտիվների առջև հետաքրքրական զեկուցումներով հանդես են եկել համագումարի պատգամավորներ՝ ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Թովմասյանը, ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետի նախագահ ընկ. Ա. Քոչինյանը, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության նախագահ ընկ. Շ. Առուշանյանը, ՀԿՊ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Հովհ. Բաղդասարյանը, բանվոր ընկ. Գ. Բաբաջանյանը, անվանի գիտնական Ս. Մերգելյանը և ուրիշներ։

Երևանի պարտիական կազմակերպությունները սկսել են ավելի մեծ ուշադրություն նվիրել աշխատավորների գեղարվեստական դաստիարակությանը։ Խրախուսելի է քաղաքում կոմունիստական աշխատանքի բրիգադաների անդամների համար կուլտուրայի համալսարանի կազմակերպումը։ Արդեն սկսել է գործել մայրաքաղաքի պարտիական և սովետական ակտիվի համար կազմակերպված կուլտուրայի երկամյա համալսարանը։ Այստեղ ունկնդիրների համար հետաքրքիր դասախոսություններ կկազմակերպվեն «Մարքսիզմ-լենինիզմը արվեստի մասին», «Երաժշտական արվեստի հիմնական առանձնահատկությունները», «Կերպարվեստի հիմնական բնագավառները և նրանց արտահայտչական միջոցները», «Կինոարվեստը որպես ամենամասսայական արվեստ», «Սովետահայ գրականության նվաճումները» և այլ թեմաներով։ Համալսարանում ելույթներ կունենան մեր արվեստի լավագույն գործիչները, ունկնդիրները կդիտեն սովետահայ նկարիչների ցուցահանդեսները, հանդիպումներ կունենան արվեստի և գրականության աչքի ընկնող գործիչների հետ և այլն։

Կուլտուրայի համալսարանները լավագույն միջոց են աշխատավորների շրջանում կոմունիստական աշխատանքի, գեղարվեստական կուլտուրայի պրոպագանդման համար. այստեղ լավ է կազմակերպվում մեր մարդկանց էսթետիկական դաստիարակությունը։

Հարկավոր է, որ պարտիական և հասարակական կազմակերպությունները ընդհանրացնեն կուլտուրայի համալսարանների առաջին փորձը և օգնեն, որպեսզի նրանք իրենց կարևոր տեղը գրավեն աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում։

Պարտիայի XXI համագումարի նյութերի պրոպագանդման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության հարցերը մշտապես գտնվում են պարտիայի քաղկոմի, շրջկոմների պլենումների և բյուրոների ուշադրության կենտրոնում։ Վերջերս քաղաքային կոմիտեի պլենումը քննարկեց «Աշխատավորների կոմունիստական դաստիարակության խնդիրները՝ կապված ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների հետ» հարցը։ Պլենումն ընդհանրացնելով աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում Երևանի պարտիական կազմակերպությունների ձեռք բերած հաջողությունները, միաժամանակ բացահայտեց այդ գործում եղած թերությունները և կոնկրետ միջոցառումներ նշեց պարտիայի XXI համագումարի որոշումների ոգով աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործը կազմակերպելու համար։ Նույն հարցը քննարկվեց նաև շրջանների պարտիական ակտիվի և սկզբնական պարտիական կազմակերպությունների ժողովներում։

ՍՄԿՊ XXI համագումարի նյութերի ուսումնասիրության ուղղությամբ կատարված աշխատանքի կողքին դեռևս կան նաև թերություններ։ Մի շարք պարտիական կազմակերպություններում անհրաժեշտ ուշադրություն չի դարձվում խմբակների պարապմունքների բովանդակությանը։ Պարապմունքները երբեմն անցնում են անհետաքրքիր, առանց տեսական հարցերի խոր իմաստավորման, աչքաթող է արվում պարապմունքի թեման տվյալ կոլեկտիվի առջև դրված կոնկրետ խնդիրների հետ շաղկապելու կարևոր հարցը։ Համագումարի նյութերն ուսումնասիրող խմբակների պարապմունքները գաղափարական ցածր մակարդակով են անցնում ռադիոցանցի, անհատական պատվերների № 2 ֆաբրիկայի և այլ պարտիական կազմակերպություններում։



Անհրաժեշտ է ամենօրյա օգնություն ցույց տալ քաղաքական ինքնակրթությամբ զբաղվող կոմունիստներին, վերահսկել նրանց աշխատանքը և հասնել այն բանին, որ համագումարի նյութերի ուսումնասիրությունն օգնի նրանց գործունեությանը։ Քաղաքական ինքնակրթության կազմակերպման ուղղությամբ Երևանի մի շարք պարտիական կազմակերպություններում դրական արդյունք են տալիս ինքնուրույն ուսումնասիրողների տեսական սեմինարները. այստեղ լավ է զուգակցվում ինքնուրույն ուսուցումը տեսական կարևոր պրոբլեմների կոլեկտիվ քննարկման հետ։ Սեմինարները կազմակերպվածություն են մտցնում ինքնուրույն ուսումնասիրման գործում, լավագույն ձև են թե՛ օգնության և թե՛ վերահսկողության համար։

Պարտիայի քաղքային կոմիտեն, շրջկոմները և սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է հատուկ ուշադրություն դարձնեն պրոպագանդիստների տեսական աճի, պրոպագանդիստական արվեստի զարգացման հարցերին. սեմինարների, խորհրդակցությունների, անհատական զրույցների և այլ միջոցներով հարկավոր է հասնել այն բանին, որ մեր պրոպագանդիստները ետ չմնան կյանքի առաջադրած պահանջներից։

Քաղաքի որոշ պարտիական կազմակերպություններում հարկ եղած ուշադրություն չի հատկացվում նաև ագիտացիոն-մասսայական աշխատանքների բովանդակությանը. այն երբեմն իր վրա կրում է վերացականության կնիքը։ Ագիտացիան հաճախ կրում է դեկլարատիվ և մակերեսային բնույթ, չի կապվում տվյալ ձեռնարկության առջև կանգնած կոնկրետ խնդիրների հետ, չի օգնում հաղթահարելու աշխատանքի թերությունները, ամրապնդելու աշխատանքային կարգապահությունը և այդ պատճառով էլ չի ազդում արտադրական խնդիրների լուծման վրա։ Հաճախ ագիտատորների զրույցները կոնկրետ նպատակներ չեն հետապնդում։ Ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի միջոցով հասարակական կարծիք չի ստեղծվում աշխատանքային և արտադրական կարգապահությունը, սոցիալիստական համակեցության կանոնները խախտողների նկատմամբ։

Պարտիայի Սպանդարյանի, Շահումյանի և այլ շրջկոմներ անհրաժեշտ աշխատանք չեն կազմակերպում բնակչության, հատկապես ծայրամասերում բնակվող աշխատավորների շրջանում։ Եվ պատահական չէ, որ որոշ աշխատավորներ միշտ չէ, որ ճիշտ պատկերացում ունեն մեր երկրի ներքին և արտաքին դրության, նրա ձեռք բերած հաջողությունների, մեր աշխատանքներում նկատվող թերությունների պատճառների մասին։ Հաճախ ագիտատոր են նշանակում մասսաների մեջ քաղաքական աշխատանք տանելու անընդունակ մարդկանց։ Առաջին շինարարական տրեստի և այլ պարտիական կազմակերպություններում չկան կայուն ագիտկոլեկտիվներ, վատ է նրանց ուսուցման կազմակերպումը, բացակայում է մշտական հսկողությունը ագիտատորների գործունեության նկատմամբ։ Պարտիայի քաղկոմը և շրջկոմները դեռևս հարկ եղած աշխատանք չեն տանում քաղաքական աշխատանքի լավագույն փորձի մասսայականացման ուղղությամբ։

Լուրջ բացեր կան նաև դասախոսական պրոպագանդայի կազմակերպման գործում։ Որոշ դասախոսություններում ու զեկուցումներում խոր կերպով չեն լուսաբանվում համագումարում ընկեր Խրուշչովի զեկուցման մեջ ընդգրկված տեսական հարցերը, յոթնամյա պլանի կոնկրետ խնդիրները։ Կան դասախոսներ, որոնք չեն կարողանում համոզիչ կերպով ցույց տալ սոցիա-

լիզմի առավելությունները կապիտալիզմի նկատմամբ, անհրաժեշտ ուշադրություն չեն հատկացնում ժամանակակից կապիտալիզմի ռեակցիոն էության պարզաբանմանը, բավարար չափով ցույց չեն տալիս վերջին տարիների ընթացքում սովետական ժողովրդի ձեռք բերած վիթխարի նվաճումները։

Մեզանում դեռևս անբավարար աշխատանք է տարվում դասախոսությունները կյանքին մոտեցնելու, ձեռնարկությունների առօրյայի հետ կապելու ուղղությամբ։ Դասախոսը տվյալ կոլեկտիվն է գալիս դասախոսությունից մի քանի րոպե առաջ և երբեմն էլ ուշացած, նա չգիտե այդ կոլեկտիվին, կոլեկտիվի հաջողություններն ու դժվարությունները, յոթնամյա պլանով նրա առջև դրված խնդիրները, ծանոթ չէ ձեռնարկության մարդկանց, նրանցից՝ առաջավորներին և ետ մնացողներին, աշխատանքը լքողներին և սոցիալիստական համակեցության կանոնները խախտողներին։

Աշխատավորների կոմունիստական գիտակցականության բարձրացման գործում մեծ է պարտիական կազմակերպությունների կողմից տարվող պրոպագանդիստական աշխատանքի դերը։ Ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը ստեղծագործական աշխատանք է և չի հանդուրժում անտարբերություն, լճացում և շաբլոն։ Ինչքան հարուստ ու բազմատեսակ են նրա ձևերն ու մեթոդները, այնքան ավելի ակնառու կլինեն հաջողությունները։

Պարտիայի XXI համագումարի որոշումների ուսումնասիրության ու պրոպագանդման գործում Երևանում կատարված են առաջին քայլերը։ Յոթնամյա պլանի առաջադրանքների մեծությունը և նրա հոյակապ հեռանկարները պահանջում են բարձրացնել գաղափարական աշխատանքների տեսական-քաղաքական մակարդակը, նկատի ունենալով համագումարի այն կարևոր ցուցումը, որ «Որքան բարձր է միլիոնավոր զանգվածների գիտակցականությունը, այնքան հաջողությամբ կկատարվեն կոմունիստական շինարարության պլանները»։

Մայրաքաղաքի պարտիական կազմակերպությունները պետք է իրենց հիմնական պարտականությունը համարեն համագումարի պատմական որոշումները հասցնել յուրաքանչյուր աշխատավորի մտքին, սրտին, նրա մեջ դաստիարակել սովետական հայրենասիրություն, քաղաքացիական պարտքի բարձր գիտակցություն և անսահման ձգտում իր բոլոր ստեղծագործ ուժերը նվիրաբերելու յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համաժողովրդական գործին։

---

# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՄԵՐ ՀԱՐԱԶԱՏ ԳՈՐԾՆ Է

**Հ. ԱՍԼԱՆՅԱՆ**

ՀԿՊ Երևանի Լենինյան շրջկոմի քարտուղար

ՍՄԿՊ XXI համագումարի առաջադրած հոյակապ խնդիրների հաջող կատարումը պահանջում է ավելի ու ավելի բարձրացնել սովետական մարդկանց գիտակցականությունը, ուժեղացնել մասսաների կոմունիստական դաստիարակությունը։

Դեպի կոմունիզմ անցում կատարելու համար, ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը, անհրաժեշտ է ոչ միայն զարգացած նյութա-տեխնիկական բազա, այլև հասարակության բոլոր քաղաքացիների գիտակցականության բարձր մակարդակ։ Որքան բարձր է միլիոնավոր զանգվածների գիտակցականությունը, այնքան հաջողությամբ կկատարվեն կոմունիստական շինարարության պլանները։

Հաշվի առնելով այդ, պարտիայի Երևանի Լենինյան շրջկոմը և սկզբնական կազմակերպությունները ՍՄԿՊ XXI համագումարից հետո որոշակի գործ են ձեռնարկել աշխատավորների կոմունիստական դաստիարակությունն ուժեղացնելու ուղղությամբ։ Նրանք սիստեմատիկաբար կազմակերպվող դասախոսությունների, զեկուցումների և զրույցների միջոցով բանվորներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին ու ծառայողներին պարզաբանում են համագումարի նյութերը և ցույց տալիս, որ յոթնամյա պլանի հաջող կենսագործումը ամենից առաջ կախված է սովետական ամեն մի քաղաքացու ջանասեր աշխատանքից, դեպի հանձնարարված գործը նրա կոմունիստական վերաբերմունքից։ Իրենց ամենօրյա դաստիարակչական աշխատանքի ընթացքում պարտիական կազմակերպությունները բանվորների, ինժեներա-տեխնիկական անձնակազմի ու ծառայողների մեջ զարգացնում են աշխատասիրությունն ու նախաձեռնությունը, կյանքում ծնունդ առած նորի, առաջավորի ամենուրեք արմատավորումը, արտադրական պլանների կատարումն ու գերակատարումը։

Շրջանի աշխատավորները ոգեշնչված կոմունիզմի կառուցման ծավալուն պլանով, հանդես են գալիս հայրենասիրական նորանոր նախաձեռնություններով և գործարար սոցիալիստական մրցություն ծավալում՝ ընթացիկ տարվա արտադրական առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար։ Այդ գործում առանձնապես աչքի են ընկնում արտադրական ձեռնարկություններում, շինարարական օբյեկտներում, երկաթուղային տրանսպորտում վերջերս առաջացած կոմունիստական աշխատանքի բրիգադները, որոնք տեխնիկական պրոգրեսի, աշխատանքի արտադրողականության բարձրացման, գործի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի անգնահատելի օրինակներ են ցույց տալիս։ Մտնելով մրցության մեջ, նրանք ստանձնել են բարձր-

պարտավորություններ, որոնց կատարման համար լայն աշխատանք են ծավալել:

Հիդրոհաղորդակ գործարանում կազմակերպված է կոմունիստական աշխատանքի 4 բրիգադա, որոնք արտադրության մեջ ձեռք են բերել բարձր ցուցանիշներ: Ալիկ Իբրահիմովի ղեկավարած բրիգադան սիստեմատիկաբար պլանը կատարում է 226 տոկոսով, տալով բարձր որակի արտադրանք: Աշխատանքը լավ է ընթանում նաև Պարգև Իսպիրյանի ղեկավարած բրիգադայում:

Տեղական շինանյութերի կոմբինատում կազմակերպված կոմունիստական աշխատանքի բրիգադան ընթացիկ տարվա առաջին եռամսյակի պլանը կատարել է 220 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացրել է 62 տոկոսով և տվել է նյութերի խնայողություն՝ 2 տոկոսի չափով: Այսպիսի օրինակներ կարելի է բերել նաև շոգեքարշային դեպոյի, հացի № 1, լաքոներկերի գործարաններից:

Աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում խոշոր նշանակություն ունի ՍՄԿԿ XXI համագումարի որոշումների և նյութերի պրոպագանդումը: Այս ուղղությամբ շրջկոմի ձեռնարկած միջոցառումները հետապնդել են մեկ նպատակ՝ ամբողջ ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը վերակառուցել համագումարի պահանջների ոգով: Շրջկոմը մշակել և բյուրոյում հաստատել է ագիտատորների, պրոպագանդիստների, սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների հետ տարվելիք աշխատանքի պլան: Պլանով նախատեսված միջոցառումների կենսագործումը մեծ չափով նպաստում է պրոպագանդիստական-ագիտացիոն աշխատանքի բարելավմանը:

Ներկայումս շրջանի աշխատավորները մեծ հետաքրքրությամբ ուսումնասիրում են համագումարի որոշումներն ու նյութերը: Շուրջ 1.500 ագիտատոր մասսաներին պարզաբանում են պարտիայի առաջադրած մեծ խնդիրները և նրանց մոբիլիզացնում՝ այդ խնդիրները հաջողությամբ լուծելու համար:

Շրջանում գործող 100 խմբակներում, քաղդպրոցներում, սեմինարներում 3.940 կոմունիստներ ու անկուսակցականներ ուսումնասիրում են ՍՄԿԿ XXI համագումարում ընկեր Ն. Ս. Խրուշչովի տված զեկուցումը, համագումարի որոշումները և մյուս նյութերը, որոնք կենդանի հետաքրքրություն են առաջացրել բոլորի մեջ:

Պարտիական կազմակերպություններում ավելի հաճախակի են դարձել քաղաքական աշխատանքի այնպիսի ձևերի կիրառումը, ինչպիսիք են տեսական կոնֆերանսները, հարց ու պատասխանի երեկոները, բանավոր ամսագրերը, հանդիպումներ հին բոլշևիկների, արտադրության առաջավորների ու վետերանների, արվեստի ու գրականության ականավոր գործիչների հետ: Այս միջոցառումներն աշխատավորներին օգնում են խորապես ըմբռնելու պարտիայի քաղաքականությունը, ճիշտ որոշելու իրենց տեղն ու դերը կոմունիստական շինարարության համար մղվող պայքարում:

Համագումարի նյութերի, որոշումների մասսայականացման գործում դրական աշխատանք են կատարում շոգեքարշային դեպոյի, հիդրոհաղորդակ, էլեկտրատեխնիկական, հացի № 1, ասֆալտի գործարանների, 4-րդ բուժմիավորման, №№ 30, 40, 60 և Նալբանդյանի անվան դպրոցների պարտիական կազմակերպությունները: Այս կազմակերպությունների խմբակներում, քաղդպրոցներում և տեսական սեմինարներում ուսումնասիրվող թեորիական



հարցերը կապում են ձեռնարկությունների և կազմակերպությունների առջև դրված պրակտիկ խնդիրների հետ:

Շոգեքարշային դեպոյի կազմակերպության խմբակում պրոպագանդիստ ընկ. Դ. Խլղաթյանը «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի գլխավոր խնդիրները» թեման անցնելիս, մանրամասնորեն պարզաբանեց կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման հարցը, յոթնամյակում արդյունաբերության, տրանսպորտի, գյուղատնտեսության, կապիտալ շինարարության զարգացման, արտադրողական ուժերի վերաբաշխման, սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման խնդիրները: Նա միաժամանակ կոնկրետ օրինակներով ցույց տվեց, թե ինչպես շոգեքարշային դեպոյի առաջավոր մեքենավարներ Խաչիկ Գասպարյանը, Վլադիմիր Հովհաննիսյանը, Արտավազդ Մանուկյանը, Վլադիմիր Բարոյանը մտնելով սոցիալիստական մրցության մեջ, պատվով կատարեցին իրենց վերցրած պարտավորությունները: Պրոպագանդիստ ընկ. Դ. Խլղաթյանը առաջավոր մեքենավարների օրինակով կարողացավ ներազդել ունկնդիրների վրա, նրանց մեջ առաջացնելով աշխատանքային ջերմ խանդավառություն՝ պարտիայի առաջադրած խնդիրները պատվով կատարելու համար:

Համագումարի նյութերն ուսումնասիրողներին օգնելու նպատակով պարտշրջկոմը քաղլուս կաբինետի և լեկտորական խմբի անդամների միջոցով հաճախակի դասախոսություններ ու զեկուցումներ է կազմակերպում մարքսլենինյան տեսության առանձին հարցերի շուրջը:

Չնայած այդ բոլորին, քաղդպրոցների, խմբակների, տեսական սեմինարների աշխատանքներում կան թերություններ: Առանձին պարտիական կազմակերպությունների քարտուղարներ խորամուխ չեն լինում խմբակների, տեսական սեմինարների գործունեության մեջ, անհրաժեշտ օգնություն ցույց չեն տալիս պրոպագանդիստներին, չեն հետաքրքրվում նրանց աշխատանքով, որի հետևանքով խմբակների պարապմունքներն անցնում են իդեական ցածր մակարդակով: Այսպիսի փաստեր կարելի է բերել երկաթգծի ՕՐՍ-ի 165/9 շինարարության, ՊՉ-ի պարտիական կազմակերպություններից: Երկաթուղայինների համար կազմակերպված տեսական սեմինարներին անկանոն են մասնակցում ՕՐՍ-ի պետ Հ. Ամյանը, շինարարության գլխավոր ինժեներ Հ. Կագրամանովը, երկաթուղայիններ Գ. Մաղոյանը, Խ. Ավետիսյանը և ուրիշներ:

Ալրաղաց կոմբինատի և Բուսապաշտման տրեստի պարտիական կազմակերպություններն այս ուսումնական տարում անբավարար են զբաղվել և կազմակերպության ժողովներում չեն քննարկել կոմունիստների քաղաքական դաստիարակությանը վերաբերող հարցեր:

Մի շարք խմբակներում ուսումնասիրվող թեմաները չեն կապվում տվյալ պարտիական կազմակերպության առջև դրված խնդիրների հետ: Դա բացատրվում է նրանով, որ առանձին պրոպագանդիստներ չեն խորանում ձեռնարկության էկոնոմիկայի մեջ, չեն ուսումնասիրում արտադրության նեղ տեղերը և կոնկրետ օրինակներով ցույց չեն տալիս, թե ինչպես կարելի է վերացնել այս կամ այն թերությունը:

Աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում քիչ անելիքներ չունեն նաև ագիտատորները, որոնք հանդիսանում են պարտիայի ճըշմարտացի խոսքը աշխատավորական լայն մասսաներին հաղորդողները: Պարտիական կազմակերպություններն օգտագործում են ագիտացիոն-մասսայա-

կան աշխատանքի բոլոր ձևերն ու մեթոդները։ Շրջանի շատ հիմնարկ-ձեռնարկություններում լայն ծավալ է ստացել ցուցադրական ագիտացիան։ Արդյունաբերական ձեռնարկությունների ցեխերում փակցված են լոզունգներ, պլակատներ, դիագրամաներ, գեղեցիկ ձևավորված ստենդներ, ֆոտոմոնտաժներ, որոնք նվիրված են ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանին։ Սակայն ագիտացիոն աշխատանքը ոչ բոլոր տեղերում է լավ կազմակերպված։ Շատ ագիտատորներ բավարարվում են միայն առանձին նյութերը հաղորդելով, թերթի ընթերցանությամբ, հաճախ շրջանցում են տվյալ արտադրության հարցերը և կոլեկտիվին ոտքի չեն հանում նկատվող թերությունների վերացման համար։ Էլ չենք խոսում այն մասին, որ առանձին զրույցներ հաճախ անբովանդակ են։ Առանձին ագիտատորների (Հ. Անդրեասյան, Վ. Գալստյան—Հացի № 1 գործարանից, Հ. Երիցյան—Նալբանդյանի անվան դպրոցից և ուրիշներ) մոտ բացակայում է մարտնչող ոգին, մոբիլիզացնող ուժը։

Աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում խոշոր անելիքներ ունեն նաև արհմիութենական կազմակերպությունները։ Ինչ խոսք, որ նրանք այդ բնագավառում զգալի աշխատանք են կատարում։ Բայց, ցավոք սրտի, դեռևս կան արհմիության առանձին աշխատողներ, որոնք սիստեմատիկաբար չեն զբաղվում բանվորների ու ծառայողների կոմունիստական դաստիարակության հարցերով, անբավարար պայքար են կազմակերպում աշխատանքային և պետական կարգապահության բարձրացման համար։ Ավելին. առանձին դեպքերում նրանք հովանավորում են պետական կարգապահության խախտողներին։ Նման երևույթներ են նկատվել մարդատար տաքսամոտորային պարկի և երկաթուղու ռեֆրիժորների խմբի արհմիութենական կազմակերպությունների ղեկավարների կողմից, որոնց վարքագիծը պարտիայի շրջանային կոմիտեի բյուրոն դատապարտեց։

Չնայած այն ձեռնարկումներին, որ շրջկոմն ու սկզբնական պարտիական կազմակերպությունները կատարում են աշխատավորների կոմունիստական դաստիարակության, նրանց աշխատանքային խանդավառության բարձրացման ուղղությամբ, սակայն առանձին պարտիական կազմակերպություններ անհրաժեշտ աշխատանք չեն կատարում կոմունիստներին սկզբունքայնության, թերությունների նկատմամբ անհաշտության ոգով դաստիարակելու համար։ Նրանք լուրջ ուշադրություն չեն դարձնում առողջ, գործարար քննադատության ու ինքնաքննադատության ծավալման վրա։ Ավելին. կան առանձին պարտիական կազմակերպություններ, որոնք հանդուրժում են որոշ հիմնարկության պետերի կողմից թույլ տված խախտումները և փորձ են կատարում այդպիսիներին պաշտպանության տակ վերցնել։ Այսպես, օրինակ, Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության խորհուրդը, առևտրի կանոնների կոպիտ խախտումներ թույլ տալու համար, «Գլավմաշսնաբսբիտ»-ի կառավարիչ ընկ. Գ. Գրիգորյանին ազատել է աշխատանքից։ Դրանից հետո պարտիական կազմակերպության քարտուղար Ռ. Գալստյանը, փոխանակ կոմունիստներին բացատրելու դիրեկտորի թույլ տված սխալները, բռնում է նրան հովանավորելու ուղին։ Պարտիական ժողովում նա պնդում է, թե դիրեկտորը կատարված խախտումների մեջ ոչ մի մեղք չունի, որ նրա նկատմամբ ժողտնտխորհի որոշումը ճիշտ չէ։ Կոծկելով Գրիգորյանի կողմից թույլ տված խախտումները, մի շարք կոմունիստներ, այդ թվում նաև պարտիական կազմակերպության քար-



տուղարը, իրենց ելույթներով հասնում են այնպիսի ծայրահեղությունների, որ իբր ժողտնտխորհի որոշումը չի բխում ՍՄԿՊ XXI համագումարի որոշումներից և խնդրում են պարտիական վերադաս օրգաններից՝ Գրիգորյանին վերականգնել աշխատանքում։

Շրջանի Նոր Արեշի, Վարդաշենի, Սարի թաղի բնակչության ճնշող մեծամասնությունը հայրենադարձներ են։ Դա շրջանի պարտիական կազմակերպություններին պարտավորեցնում է ամենօրյա դաստիարակչական աշխատանք ծավալել այդ թաղամասերի բնակչության շրջանում, հոգատարությամբ շրջապատել հայրենադարձներին, նրանց սիստեմատիկաբար բացատրել ու պարզաբանել յոթնամյա պլանի հիմնական խնդիրները, սովետական ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման ուղղությամբ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության կողմից իրականացվող խոշոր միջոցառումները։ Հենց իրենց՝ հայրենադարձների կյանքից վերցրած կոնկրետ օրինակներով պետք է ցույց տալ, որ մեր պարտիայի ու կառավարության համար չկա ավելի բարձր բան, քան ժողովրդի բարեկեցության բարձրացումը, նրա պայծառ ապագայի՝ կոմունիստական հասարակարգի կառուցումը, որի համար մեր ամեն մի քաղաքացի պետք է նվիրված աշխատանք կատարի։

Գաղտնիք չէ, որ մեզ մոտ դեռևս կան առանձին մարդիկ, որոնց մոտ երբեմն դրսևորվում են կապիտալիզմի մնացուկները՝ մանր սեփականատիրական ձգտումները, հանրօգուտ աշխատանքից խուսափելը, հարբեցողությունը և այլն։ Պարտիական կազմակերպությունները պետք է հետևողականորեն պայքարեն այդպիսի երևույթների դեմ, լուրջ դաստիարակչական աշխատանք տանեն բնակչության տարբեր խավերի հետ և նրանց բոլորին մոբիլիզացնեն կոմունիստական շինարարության ներկա էտապում երկրի առջև դրված խնդիրները պատվով կատարելու համար։

Աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում վիթխարի նշանակություն ունի գիտա-աթեիստական պրոպագանդան։ Այս ուղղությամբ շրջանային կոմիտեն ու սկզբնական պարտիական կազմակերպությունները որոշ աշխատանք կատարել են։ Նրանք կազմակերպել են «Կրոնի ծագումը», «Գիտությունը և կրոնը կյանքի ծագման մասին», «Գիտական կանխատեսումը և կրոնական նախապաշարմունքը», «Վատիկանն իմպերիալիզմի ծառայության մեջ», «Քրիստոնեության ստրկական բնույթը» և այլ թեմաներով դասախոսություններ, զեկուցումներ ու զրույցներ։ Սակայն այդ բավարար համարել չի կարելի։ Պարտիական կազմակերպությունները դեռևս թույլ են ծավալում գիտա-աթեիստական պրոպագանդան, աստծուն հավատացողներին, ինչպես հարկն է, չեն պարզաբանում կրոնի վնասը։ Այդ է պատճառը, որ մեզ մոտ որոշ մարդիկ դեռևս տուրք են տալիս կրոնական նախապաշարմունքներին։

Աշխատավորների շրջանում տարվող պրոպագանդիստական-ագիտացիոն աշխատանքի ընթացքում մի շարք պարտիական կազմակերպություններ լուրջ ուշադրություն չեն դարձնում հակահասարակական երևույթների դեմ տարվող պայքարի վրա, հիմնարկությունների, ձեռնարկությունների կոլեկտիվներին ոտքի չեն հանում անհաշտ վերաբերմունք ցուցաբերելու այն մարդկանց նկատմամբ, որոնք հասարակական վայրերում ու ընտանիքում խախտում են սոցիալիստական համակեցության կանոնները, իրենց վարքով վատ օրինակ են ցույց տալիս երիտասարդներին ու դեռահասներին։ Ճիշտ է, միլիցիայի, դատական ու դատախազական օրգանները նմանների նկատմամբ միջոցներ

են ձեռք առնում, բայց սխալ կլիներ կարծել, որ հակահասարակական արարքների դեմ պայքարի գործով միայն նրանք պետք է զբաղվեն։ Այդ ուղղությամբ մեծ է դաստիարակչական աշխատանքի դերը հատկապես երիտասարդության շրջանում։

Շրջկոմի բյուրոն վերջերս քննության առավ հանցագործությունների և հակահասարակական երևույթների դեմ տարվող պայքարի հարցը և նշեց, որ բնակչության մեջ դեռևս անբավարար են պրոպագանդվում սովետական օրենքները և չեն իրականացվում այնպիսի պրոֆիլակտիկ միջոցներ, որոնք կարող են տեղնուտեղը կանխել հակահասարակական այս կամ այն երևույթը։ Բացի այդ, շրջանի ժողովրդական դատարաններն առանձին դեպքերում հանցագործներին տալիս են մեղմ պատիժ, մեծ կոլեկտիվներ ունեցող հիմնարկություններում և ձեռնարկություններում քիչ են կազմակերպում դռնբաց դատական նիստեր, որոնք դաստիարակության գործոն ձևերից մեկն են։ Անբավարար է աշխատավորների և հասարակական կազմակերպությունների ներգրավումը հակահասարակական երևույթների դեմ մղվող պայքարում. առանձին քաղաքացիների անվայել արարքները հազվադեպ են քննարկվում բանվոր-ծառայողների և ուսանողության ժողովներում։

Միլիցիային և դատական օրգաններին օգնելու, հանցագործությունները կանխելու նպատակով շրջանի բոլոր արտադրական ձեռնարկություններում, շինարարությունում, տրանսպորտում, ուսումնական հաստատություններում, առանձին տնային կառավարչություններում արդեն ստեղծվել է միլիցիային օգնող և հասարակական կարգի պահպանման 31 կամավոր դրուժինա։

Պարտիական և կոմերիտական կազմակերպությունների խնդիրն է՝ միլիցիային օժանդակող կամավոր ջոկատների աշխատանքը կազմակերպել այնպես, որպեսզի խպառ վերացվի այն ամենը, ինչ բացասաբար է անդրադառնում աշխատավորության կոմունիստական դաստիարակության վրա։

Աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը մեր հասարակության զարգացման ներկա էտապում առաջնակարգ նշանակություն ունի։ «Մեր պարտիայի ու պետության գաղափարական ամբողջ աշխատանքը կոչված է զարգացնելու սովետական մարդկանց նոր հատկությունները՝ նրանց դաստիարակելու կոլեկտիվիզմի և աշխատասիրության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության, նոր հասարակարգի բարոյականության վեհ սկզբունքների ոգով, մարքսիզմ-լենինիզմի ոգով։ Կոմունիզմին՝ ամենաարդարացի հասարակարգին հասնելու համար, երբ լիովին բացահայտվում են ազատ մարդու բարոյական բոլոր լավագույն գծերը, մենք պետք է արդեն այժմ դաստիարակենք ապագա մարդուն» (Ն. Ս. Խրուշչով, «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին», Հայպետհրատ, 1959 թ., էջ 70)։

Ուղեցույց ունենալով պարտիայի XXI համագումարի որոշումները, շրջանի պարտիական կազմակերպությունները պրոպագանդիստական ու ագիտացիոն աշխատանքի բոլոր ձևերը ամբողջապես պետք է ի սպաս դնեն աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործին։ Դա հարատև ու մեծ ջանքեր պահանջող շնորհակալ աշխատանք է, որը խոշոր խթան կհանդիսանա յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու և դեպի կոմունիզմ մեր երկրի առաջընթացն արագացնելու վեհ գործին։

---

# ՅՈԹՆԱՄՅԱ ՊԼԱՆԸ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Ա. ՄԱՐԴՈՅԱՆ

ՀԿՊ Կոտայքի շրջկոմի քարտուղար

Կոտայքի շրջանի աշխատավորները զգալի հաջողություններ են ձեռք բերել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման բնագավառում։ 1957 թվականի համեմատությամբ, 1958 թվականին մսի արտադրությունը շրջանի կոլտնտեսություններում ավելացել է 24,4 տոկոսով, կամ 2000 ցենտներով, կաթինը՝ 21,2 տոկոսով, կամ 5500 ցենտներով, ձվինը՝ 49,2 տոկոսով։ Եթե 1953 թվականին ֆուրաժային մեկ կովիցստացվել էր 750 կգ կաթ, ապա 1958 թվականին ստացվեց 1570 կգ։ Կաթի համախառն արտադրությունն այդ նույն ժամանակաշրջանում ավելացավ 2,3 անգամ։ 1953 թվականի համեմատությամբ, 1958 թվականին զգալիորեն ավելացավ նաև անասնաբուծական մյուս մթերքների արտադրությունը։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացումը կոլտնտեսություններին հնարավորություն տվեց զգալիորեն ավելացնելու պետությանը հանձնվող մթերքների քանակը։ Այսպես, 1953 թվականի համեմատությամբ, 1958 թվականին պետությանը հանձնած կաթն ավելացավ 2,5 անգամ, կամ 10.000 ցենտներով, միսը՝ 2,4 անգամ, կամ 3700 ցենտներով, հացահատիկինը՝ 7,5 անգամ, ձվինը՝ 50 տոկոսով, բրդինը՝ 69 տոկոսով, բանջարեղենինը՝ մոտ երկու անգամ։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման շնորհիվ ավելացել են նաև կոլտնտեսությունների դրամական եկամուտները, աշխօրերին տրվելիք բնամթերային ու դրամական վարձատրության ընդհանուր գումարը։

Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և ՄՏ կայանները վերակազմելու վերաբերյալ պարտիայի ու կառավարության որոշումների կենսագործման, մթերումների միասնական կարգի և ըստ գոտիների շերտավորված միասնական գների սահմանման շնորհիվ շրջանի կոլտնտեսությունները գյուղատնտեսական մթերքների վաճառքից 1958 թվականին, 1957 թվականի համեմատությամբ 47 տոկոսով ավելի շատ դրամական եկամուտ ստացան։

Շատ կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպություններ, կատարելագործելով պարտիական-քաղաքական և կազմակերպչական աշխատանքի ձևերը, ապահովելով բոլոր կոմունիստների ակտիվ մասնակցությունը կոլտնտեսությունների առջև դրված խնդիրների կատարմանը, արդյունավետ կերպով օգտագործելով եղած հնարավորություններն ու ռեզերվները, վերջին տարիներում հասել են լուրջ հաջողությունների։ Օրինակ, Արամուս գյուղի կոլտնտեսությունը 1953 թվականի համեմատությամբ, 1958 թվականին կաթի

համախառն արտադրությունը ավելացրել է 4,5 անգամ, ֆուրաժային մեկ կովի կաթնատվությունը՝ 1509 կիլոգրամով։ Միայն 1958 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, կաթի արտադրությունը կոլտնտեսությունում ավելացել է 77,8 տոկոսով։ Եղվարդ գյուղի կոլտնտեսությունը կաթի համախառն արտադրությունը վերջին հինգ տարում ավելացրել է 4 անգամ, ֆուրաժային մեկ կովի կաթնատվությունը՝ 1842 կիլոգրամով, բրդինը՝ 2,5, ձվինը՝ 3,6 անգամ։ Մայակովսկի գյուղի կոլտնտեսությունը 1958 թվականին ծխախոտի յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը հասցրել է 20,3 ցենտների։ Այստեղ 30 հեկտար պլանտացիայի յուրաքանչյուր հեկտարի դրամական եկամուտը կազմել է 36.400 ռուբլի։

Սակայն շրջանում կան նաև այնպիսի կոլտնտեսություններ, որոնք դեռևս տնտեսապես և կազմակերպչորեն թույլ են, չեն ապահովել գյուղատնտեսական մթերքների արտադրության շեշտակի վերելքը։ Օրինակ՝ Գողթ գյուղի կոլտնտեսությունը, որը զարգացման բավականին լայն հեռանկարներ ունի, տնտեսապես ետ է մնում։ Անցյալ գյուղատնտեսական տարում այդ կոլտնտեսությունը ֆուրաժային մեկ կովից ստացել է շրջանի կոլտնտեսությունների միջինից 601 կիլոգրամով պակաս կաթ։ Ծխախոտի յուրաքանչյուր հեկտարից ստացել է շրջանի ծխախոտագործ կոլտնտեսությունների միջինից 8,1 ցենտներով պակաս բերք։ Նույնանման վիճակ գոյություն ունի նաև գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրության ասպարեզում։ Այսպիսին է վիճակը նաև Ողջաբերդ, Հացավան և Սևաբերդ գյուղերի կոլտնտեսություններում։

Կոլտնտեսություններում դեռևս բարձր են արտադրանքի մեկ միավորի վրա կատարված ծախսումները և ինքնարժեքը։ Մի շարք կոլտնտեսություններ, հարկ եղած ուշադրություն չդարձնելով սեփական տնտեսության մեջ կերի անհրաժեշտ պաշարներ ստեղծելու և հանքային պարարտանյութերի հետ միասին օրգանական պարարտանյութերի օգտագործման վրա, անասունները պահել են գնովի կերով, իսկ դաշտերը պարարտացնելու համար օգտագործել են միայն հանքային պարարտանյութեր։ Դաշտերի միակողմանի պարարտացումը, հանքային պարարտանյութերի ոչ ճիշտ կամ բարձր դոզաներով օգտագործումը շատ դեպքերում բացասական ազդեցություն է թողել և չի փոխհատուցվել բարձր բերքով, որը, ինչ խոսք, բարձրացրել է արտադրանքի ինքնարժեքը։ Նշանակում է, սեփական կերի արտադրության հաշվին կերի բազայի ամրապնդումը և հանքային պարարտանյութերի հետ միասին օրգանական պարարտանյութերի ճիշտ դոզաներով, ճիշտ հարաբերակցություններով և ժամանակին օգտագործելը կարևոր գործոններ են գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը իջեցնելու համար և կոլտնտեսությունները հատուկ ուշադրություն պետք է հատկացնեն դրանց։

1958 թվականի գյուղատնտեսական տարվա արդյունքները ցույց տվեցին, որ այն կոլտնտեսությունները, որոնք ճիշտ են կենսագործել հիշյալ միջոցառումները, արդյունավետ են օգտագործել եղած ռեզերվները, բարձրացրել են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը, զգալիորեն կրճատել են արտադրանքի մեկ միավորի վրա կատարված ծախսումները, իջեցրել են ինքնարժեքը։ Իսկ այն կոլտնտեսությունները, որոնք անհրաժեշտ ուշադրություն չեն հատկացրել այդ հարցերին, ընդհակառակը, ավելացրել են ծախսումները և բարձրացրել



ինքնարժեքը։ Այդ են ցույց տալիս բնա-տնտեսական նույնանման պայմաններում գտնվող մի շարք կոլտնտեսությունների արտադրանքի մեկ միավորի վրա կատարված ծախսերի միջև եղած տարբերությունները, որոնք երևում են հետևյալ աղյուսակից.

| Կոլտնտեսության անվանումը | Չափի միավորը | Արտադրանքի տեսակը | Կատարված ծախսումները | | |
|---|---|---|---|---|---|
| | | | Աշխօր | դրամ (ռուբլով) | Ընդամենը (ռուբլով) |
| Եղվարդ | ցենտներ | հացահատիկ | 1,4 | 7 | 19 |
| Գյամրեզ | » | » | 4,5 | 41 | 71 |
| Մայակովսկի | » | ծխախոտ | 38,8 | 94 | 444 |
| Գողթ | » | » | 171,6 | 200 | 1845 |
| Հրազդան | » | կաթ (կովի) | 3,1 | 20 | 51 |
| Կապուտան | » | » | 8,2 | 105 | 178 |
| Գեղադիր | » | կաթ (ոչխ.) | 5,3 | 19 | 67 |
| Ողջաբերդ | » | » | 5,2 | 121 | 591 |
| Եղնիկ | » | միս (տավարի) | 28 | 105 | 357 |
| Նուռնուս | » | » | 36 | 696 | 1026 |
| Քյանքյան | » | միս (խոզի) | 35 | 651 | 966 |
| Սևաբերդ | » | » | 200 | 2340 | 4160 |
| Ակունք | » | բուրդ | 100 | 196 | 1176 |
| Նորագյուղ | » | » | 310 | 170 | 4520 |
| Ջառ | հատ | ձու | 0,04 | 0,52 | 0,88 |
| Գեղարդ | » | » | 0,58 | 0,50 | 5,7 |

Աղյուսակից երևում է, որ Գյամրեզ գյուղի կոլտնտեսությունը մեկ ցենտներ հացահատիկ արտադրելու վրա, Եղվարդ գյուղի կոլտնտեսության համեմատությամբ, ավելի է ծախսել 52 ռուբլի, Գողթ գյուղի կոլտնտեսությունը, Մայակովսկի գյուղի կոլտնտեսության համեմատությամբ, մեկ ցենտներ ծխախոտի արտադրության վրա՝ 1401 ռուբլի, Կապուտան գյուղի կոլտնտեսությունը, Հրազդան գյուղի կոլտնտեսության համեմատությամբ, մեկ ցենտներ կովի կաթի արտադրության վրա՝ 127 ռուբլի և այլն։

Բերված փաստերը հիմք են տալիս ասելու, որ ռեզերվների արդյունավետ օգտագործման, արտադրանքի մեկ միավորի վրա կատարված ծախսումները կրճատելու և ինքնարժեքն իջեցնելու գործում լուրջ թերություններ կան, որոնց վերացումը կոլտնտեսություններին հնարավորություն կտա քիչ ծախսումների միջոցով ավելի շատ և էժան գյուղատնտեսական մթերքներ արտադրել և յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարել։

Ներկայումս պարտիական կազմակերպությունները գործուն միջոցներ են ձեռնարկում եղած թերությունները վերացնելու և յուրքանչյուր կոլտնտեսության էկոնոմիկան իր բնա-տնտեսական պայմաններին համապատասխան զարգացնելու համար։ Հաշվի առնելով շրջանի ցածրադիր-մերձքաղաքային գոտու բնատնտեսական բարենպաստ պայմանները, ոռոգելի տարածությունների ավելացումը և գյուղատնտեսական ճյուղերն ըստ հողակլիմայական պայմանների զարգացնելու արդյունավետությունը, որոշված է գոյություն ունեցող անջրդի հացահատիկային ցանքերը փոխարինել բարձր արդյունավետ կուլտուրաներով և այդ գոտու կոլտնտեսությունները մասնագիտացնել կաթնատու և մսատու անասնաբուծության, մսատու խոզաբուծության, բան-

ջարեղենի, խաղողի, պտուղների և ծխախոտի արտադրության ուղղությամբ։ Այդ նպատակով նախատեսվում է կովերի գլխաքանակը 1965 թվականին ավելացնել 3,3 անգամ կամ 100 հեկտար հողատարածության դիմաց պահել 20 կով, վերացնել կովերի ծնի սեզոնայնությունը, ապահովել տարվա բոլոր ամիսներին կաթի և այլ անարատ կաթնամթերքների ինտենսիվ արտադրությունը, Երևան քաղաքի բնակչությանը մթերքներով անխափան մատակարարումը։

Կովերի գլխաքանակի ավելացման, կաթնատվության բարձրացման և ձեռնարկված այլ միջոցների շնորհիվ կաթի արտադրության ավելացման յոթնամյա առաջադրանքները կոլտնտեսությունները կատարելու են հինգ տարում։ Հատուկ ուշադրություն է հատկացվելու խոզաբուծության և թռչնաբուծության զարգացմանը։ Խոզերի գլխաքանակը 1965 թվականին ավելանալու է 2 անգամ, թռչուններինը՝ 3,6 անգամ։ Ձվի արտադրությունը ավելանալու է 4,5 անգամ, որի շնորհիվ ձվի արտադրության ավելացման յոթնամյա առաջադրանքները կկատարվեն երեք տարում։

Շրջանի վերին գոտու կոլտնտեսությունները մասնագիտացվելու են, գլխավորապես, ինտենսիվ մսատու և բրդատու ոչխարաբուծության զարգացման ուղղությամբ. զգալիորեն ավելացվելու է հատկապես նրբագեղմ և կիսանրբագեղմ ոչխարների գլխաքանակը։ Այդ միջոցառումը հնարավորություն կտա 2,5 անգամ ավելացնելու ոչխարի միսի, 2,6 անգամ բրդի արտադրությունը։ Բրդի արտադրության ավելացման առաջադրանքը կկատարվի հինգ տարում։

Անասունների գլխաքանակը և անասնաբուծական մթերքների արտադրությունը ավելացնելու խնդիրները հաջողությամբ լուծելու համար գործնական միջոցներ են ձեռնարկվելու հողագործության ճիշտ սիստեմ կիրառելու, յուրաքանչյուր կոլտնտեսության բնա-տնտեսական առանձնահատկություններից ելնելով ցանքաշրջանառություն անցկացնելու և անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման բոլոր ռեզերվները օգտագործելու ուղղությամբ։

Այդ միջոցառումների իրականացման շնորհիվ կամրապնդվի կերի բազան։ Կոլտնտեսություններում անասուն պահելու կերի հիմնական աղբյուրը կլինի դաշտային կերահայթայթումը։ Բերքատվությունը շեշտակիորեն ավելացնելուն զուգընթաց մեծ մասշտաբներով կընդարձակվեն բերքատու և բարձր որակի կերաբույսերի՝ առվույտի, եգիպտացորենի, արմատապտուղների և կորնգանի ցանքատարածությունները։ Մերձքաղաքային գոտու կոլտնտեսությունները, փոքր բացառություններով, կանցնեն ամբողջ տարվա ընթացքում կովերի մսուրային կերակրման կազմակերպմանը, ամռան ամիսներին այլևս կովերը չեն փոխադրի հեռավոր արոտավայրեր, այդ ամիսներին կավելանա կաթի արտադրությունը և Երևան քաղաքը կապահովվի թարմ կաթով։

Կատարված հաշվարկների և նախագծումների համաձայն առվույտի ցանքատարածությունը կոլտնտեսություններում յոթնամյակում հասնելու է 500 հեկտարի, միջին բերքատվությունը՝ հեկտարից 120 ցենտների, կորնգանինը՝ 3500 հեկտարի, միջին բերքատվությունը՝ 40 ցենտների, եգիպտացորենինը՝ 1560 հեկտարի, միջին բերքատվությունը՝ (հատիկ, կողրեր և կանաչ մասսա միասին վերցրած) 250 ցենտների։ Բնական խոտհարքներից, հավաքված խոտի հետ միասին, կոլտնտեսությունները կկուտակեն շուրջ 26.000



տոննա խոտ, 38.550 տոննա եգիպտացորենի համախառն բերք, որի մի մասը կկոնսերվացվի խոզերի, մյուս մասը կառանձնացվի թռչունների, մնացածն էլ կսիլոսացվի կովերի համար։

Սեփական տնտեսության մեջ այդ չափերով կերի արտադրությունը հնարավորություն կտա հանրային անասուններին ապահովելու անհրաժեշտ քանակությամբ հյութալի և կոպիտ կերով, որն, իր հերթին, դրականորեն կանդրադառնա արտադրանքի մեկ միավորի արտադրության ուղղությամբ կատարված ծախսումները կրճատելու վրա։

Ցածրադիր գոտու կոլտնտեսությունների էկոնոմիկայի մեջ կարևոր տեղ կգրավի բանջարաբուծությունը։ Կոլտնտեսությունները Երևան քաղաքի բնակչությանը թարմ բանջարեղեն մատակարարելուց բացի մեծ քանակությամբ արժեքավոր հումք կտան ռեսպուբլիկայի պահածոների արդյունաբերությանը։ Բանջարեղենի ցանքատարածությունը հասցվելու է 500 հեկտարի, յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը՝ 125 ցենտների։ Ցանքատարածությունների ավելացման և բերքատվության բարձրացման շնորհիվ բանջարեղենի արտադրությունը, 1958 թվականի համեմատությամբ, 1965 թվականին կավելանա 9,2 անգամ։ Զարգացվելու է նաև ջերմոցային բանջարաբուծությունը, որի միջոցով քաղաքի բնակչությունը ձմռան և վաղ գարնան ամիսներին կապահովվի թարմ բանջարեղենով։

Առանձնահատուկ ուշադրություն է հատկացվելու այգեգործության զարգացմանը, որը հողագործության ամենաեկամտաբեր ճյուղն է։ Խաղողի և պտղատու այգիների տարածությունը շրջանում յոթնամյակի ընթացքում կավելանա ավելի քան 4000 հեկտարով, խաղողի արտադրությունը՝ 20 անգամ, պտղինը՝ 16 անգամ։ Կոտայքի շրջանը կդառնա ռեսպուբլիկայի արդյունաբերական այգեգործության նոր շրջան։

Յոթնամյակի ընթացքում պլանտացիաների ընդարձակման և բերքատվության բարձրացման շնորհիվ երկու անգամ ավելանալու է ծխախոտի արտադրությունը։ Կոլտնտեսությունները մշակելու են 500 հեկտար ծխախոտ և յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը հասցնելու են 15,5 ցենտների, համախառն բերքը՝ 775 տոննայի։ Կոլտնտեսությունների ծխախոտագործությունից ստացվող դրամական եկամուտը կավելանա ավելի քան երկու անգամ։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման առաջին և ամենից կարևոր ռեզերվը տնտեսապես ետ մնացող կոլտնտեսությունները շրջանի առաջավոր կոլտնտեսությունների մակարդակին հասցնելն է։ Այդ հնարավոր կլինի տնտեսության էկոնոմիկայի մեջ բազմակողմանիորեն խորամուխ լինելու, նրա ղեկավարման մակարդակը և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու, քաղաքական և կազմակերպական աշխատանքը արտադրության կազմակերպման, տնտեսության էկոնոմիկայի և աշխատանքի արտադրողականության բարձրացման նպատակին ծառայեցնելու միջոցով։

Վերջերս պարտիայի շրջանային կոմիտեի բյուրոն և շրջգործկոմը քննեցին Ողջաբերդ, Գեղադիր և Հացավան գյուղերի կոլտնտեսությունների տնտեսապես ետ մնալը վերացնելու, Քյանքյան, Զովաշեն և Սևաբերդ գյուղերի կոլտնտեսությունների անասուններին խնամելու, ջրով ապահովելու, Կապուտան, Զառ և Հրազդան գյուղերի կոլտնտեսություններին Կոտայքի ջրանցքից ոռոգման համար ջուր տալու հարցերը և ընդունեցին գործնական

որոշումներ։ Այդ որոշումների համաձայն Ողջաբերդ, Գեղադիր գյուղերի կոլտնտեսություններում այս գարնանը կառուցվելու է մեկական ջրամբար, որը յուրաքանչյուր կոլտնտեսությունում ոռոգելի կդարձնի 20-ական հեկտար անջրդի հողեր։ Գառնի գյուղի ջրանցքը երկարացվելու է 4,5 կիլոմետրով և Հացավան գյուղի կոլտնտեսության հողերից 200—250 հեկտարը դարձվելու է ոռոգելի։ Հարց է բարձրացված ՀՍՍՌ Մինիստրների Սովետի առջև՝ թույլ տալ կոլտնտեսությունների հաշվին Ակնա լճի ջրային սիստեմից Քյանքյան, Զովաշեն և Սևաբերդ գյուղերի կոլտնտեսությունների անասունների համար խմելու ջուր անցկացնել, Կապուտան, Ջառ և Հրազդան գյուղերի կոլտնտեսությունների տեղամասերում ջրհան կայաններ կառուցել և այդ կոլտնտեսությունների հողերից 100-ական հեկտար ոռոգելի դարձնել։ Նշված միջոցառումների իրականացումը հնարավորություն կտա այդ գյուղերի կոլտնտեսություններին՝ մեկից երկու տարվա ընթացքում վերացնելու իրենց տնտեսությունների ետ մնալը, դառնալու բազմաճյուղ տնտեսություն, մշակելու ավելի արդյունավետ կուլտուրաներ՝ խաղող, պտուղ, բանջարեղեն, կերային կուլտուրաներ և այլն։

Կոլտնտեսություններում մսի արտադրության ավելացման կարևորագույն ռեզերվ է անասունների բտման ու գիրացման գործի լավագույն ձևով կազմակերպումը, որը հնարավորություն կտա պետությանը վաճառվող յուրաքանչյուր գլուխ խոշոր եղջերավոր անասունի կենդանի քաշը հասցնել 270 կիլոգրամի, մանրինը՝ 50 կիլոգրամի, խոզինը՝ 80 կիլոգրամի։ Անցյալ տարի շատ կոլտնտեսություններ հասան այդ արդյունքներին։ Այդ միջոցառման շնորհիվ մսի համախառն արտադրությունը կավելանա 1500 ցենտներով, կամ 17,2 տոկոսով։

Մսի արտադրության ավելացման ռեալ ռեզերվ է նաև ստերջության վերացումը։ Անցյալ տարի կոլտնտեսությունները յուրքանչյուր 100 մայր ոչխարից ստացան 80 գառ։ Այս տարի կոլտնտեսությունների առջև խնդիր է դրված յուրաքանչյուր 100 մայր ոչխարից ստանալ և մինչև տարվա վերջը պահպանել 95 գառ։ Այդ դեպքում, նախորդ տարվա համեմատությամբ, ավելի կստացվի 4000 գառ։ Եթե յուրաքանչյուր գառան կենդանի քաշը հասցվի 40 կիլոգրամի, մսի համախառն արտադրությունը կավելանա 1600 ցենտներով, իսկ եթե վերանա կովերի ստերջությունը՝ 400 ցենտներով։

Մսի արտադրության ավելացման ամենախոշոր ռեզերվը անկումների վերացումն է։ Անցյալ տարի կոլտնտեսություններում տեղի է ունեցել 327 գլուխ խոշոր եղջերավոր, 2781 գլուխ մանր եղջերավոր անասունի, 623 գլուխ խոզի անկում։ Պարտիայի XXI համագումարի որոշումների քննարկման ժամանակ կոլտնտեսային պարտիական կազմակերպությունները խնդիր դրեցին անասունների խնամքի, կերակրման և պահպանման պայմանների բարելավման միջոցով 50 տոկոսով կրճատել անկումները․ այդ միանգամայն հնարավոր է և դրա շնորհիվ մսի համախառն արտադրությունը կավելանա ամենաքիչը 1250 ցենտներով։

Այսպիսով, գործադրելով մսի արտադրության ավելացման ռեզերվները, մսի համախառն արտադրությունը, նույնիսկ առանց անասունների գլխաքանակն աճեցնելու, կավելանա 4750 ցենտներով կամ 54,6 տոկոսով, որը կոլտնտեսություններին հնարավորություն կտա մսի արտադրության ավելացման յոթնամյա առաջադրանքները կատարելու հինգ տարում։



Անցյալ տարի ֆուրաժային մեկ կովից ամենից շատ կաթ ստացավ Ելղովան գյուղի կոլտնտեսությունը։ Այս տարի շրջանի կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպությունները խնդիր են դրել հասնել ելղովանցիների մակարդակին։ Նախնական տվյալները ցույց են տալիս, որ նույնիսկ առանց կովերի գլխաքանակն ավելացնելու հնարավոր է կաթի արտադրությունը ավելացնել 20.500 ցենտներով կամ 66,6 տոկոսով։

Հաշվարկները ցույց են տալիս, որ եթե բոլոր կոլտնտեսությունները ֆուրաժային մեկ խուզվող ոչխարից խուզեն այնքան բուրդ, որքան անցյալ տարի խուզեց Ջրաբեր գյուղի կոլտնտեսությունը, այսինքն՝ մեկ ոչխարից 3,5 կգ, ապա առանց ոչխարների գլխաքանակն ավելացնելու բրդի արտադրությունը կավելանա 44,6 տոկոսով։ Այդ կապված չէ առանձին դժվարությունների հետ, քանի որ մնացած կոլտնտեսությունների բնա-տնտեսական պայմաններն ավելի նպաստավոր են, քան Ջրաբերինը։ Հենց այդ նպատակով էլ շրջանի մյուս կոլտնտեսային կազմակերպությունները ծավալել են սոցիալիստական մրցություն և պայքար են տանում մրցությունից պատվով դուրս գալու համար։

Անցյալ տարի Ջառ, Ջրվեժ, Գյամրեզ, Նորագյուղ, Ելղովան գյուղերի կոլտնտեսությունները յուրաքանչյուր ածան հավից ստացան 75—80 հատ ձու։ Կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպությունների առջև խնդիր է դրված՝ օգնել կոլտնտեսություններին ընթացիկ գյուղատնտեսական տարում յուրաքանչյուր ածան հավի ձվատվությամբ հասնել վերոհիշյալ գյուղերի կոլտնտեսություններին, որը հնարավորություն կտա առանց ածան հավերի գլխաքանակն ավելացնելու ձվի արտադրությունը ավելացնել 43 տոկոսով։

Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման ուղղությամբ ձեռնարկված միջոցառումների կիրառման շնորհիվ յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության հաշվով 1965 թվականին կարտադրվի 45—47 ցենտներ միս (սպանդանոցային քաշով), 327—336 ցենտներ կաթ, 370—400 կգ բուրդ, 125—160.000 հատ ձու։

Յոթնամյա պլանը հաջողությամբ և ժամկետից շուտ կատարելու համար կոլտնտեսությունները ստանձնել են սոցիալիստական նոր, ավելի բարձր պարտավորություններ, որոնց համաձայն մսի և բրդի արտադրության ավելացման առաջադրանքները կատարվելու են 5 տարում, իսկ կաթինը և ձվինը՝ 3—4 տարում։

Այդ խնդիրների հաջող լուծումը պահանջում է բարձրացնել կոլտնտեսականների ակտիվությունն աշխատանքի բոլոր ասպարեզներում, մոբիլիզացնել կոմունիստների և կոլտնտեսային գյուղի բոլոր աշխատողների ուժերը կոլտնտեսությունների կոնկրետ առաջադրանքների իրականացման համար։

Յոթնամյակում կոլտնտեսությունների առջև դրված խնդիրների հաջող կատարումը կախված է կոլտնտեսային սկզբնական պարտկազմակերպությունների հաջող գործունեությունից։ Պարտիայի շրջկոմը միջոցներ է ձեռնարկում կոլտնտեսային սկզբնական պարտկազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը բարձրացնելու, արտադրական պլանների կատարման գործում նրանց ազդեցությունն ուժեղացնելու, յուրաքանչյուր կոլտնտեսությունում ստեղծագործական աշխատանքի և արտադրական վերելքի մթնոլորտ ստեղծելու, պարտիական-քաղաքական աշխատանքը պարտիական կազ-

մակերպությունների առջև դրված նոր, վիթխարի խնդիրների մակարդակին
բարձրացնելու ուղղությամբ։

Ընթացիկ տարվա սկզբին պարտշրջկոմի բյուրոն քննության առավ Նոր
գյուղի կոլտնտեսության պարտկազմակերպության կողմից կադրերի հետ տար-
վող աշխատանքի հարցը և լուրջ թերություններ բացահայտեց այդ գործում։
Կադրերին ճիշտ դասավորելու, աշխատանքում նրանց նախաձեռնությունը զար-
գացնելու համար շրջկոմի բյուրոն համապատասխան միջոցառումներ նշեց
և պարտկազմակերպությանը կոնկրետ օգնություն ցույց տվեց կոլտնտեսային
արտադրության մեջ կադրերին ճիշտ տեղաբաշխելու, դաստիարակելու և հանձ-
նարարված գործի նկատմամբ նրանց պատասխանատվությունը բարձրացնե-
լու համար։ Աշխատանքում իրեն չարդարացնելու համար կովաբուծական ֆեր-
մայի վարիչը հանվեց աշխատանքից, նրա փոխարեն ֆերմայի վարիչ նշանակ-
վեց եռանդուն և գործունյա կոմունիստ Ժ. Թադևոսյանը։ Ֆերմա՝ որպես
կթվորներ աշխատանքի ուղարկվեցին նաև կոմունիստներ Գ. Թադևոսյանը և
Ա. Հակոբյանը։ Դրա հետ միասին պարտիական կազմակերպությունը գործա-
րար սոցիալիստական մրցություն ծավալեց անասնապահների ու կթվորների
շրջանում, կոլտնտեսության վարչության հետ միասին նրանց օգնեց արմա-
տապես բարելավելու անասունների խնամքն ու կերակրումը և բարձրացնելու
անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Պարտիական կազմակերպու-
թյան կատարած հետևողական աշխատանքի արդյունքը եղավ այն, որ ըն-
թացիկ տարվա առաջին եռամսյակում, անցյալ տարվա առաջին եռամսյակի
համեմատությամբ, մսի արտադրությունն աճեց 139 տոկոսով, կաթինը՝ 47,7
տոկոսով, ձվինը՝ 210 տոկոսով։ Այդ նույն ժամանակամիջոցում ֆուրաժային
ամեն մի կովի կաթնատվությունը բարձրացավ 252 կիլոգրամով։

Լուրջ և հետևողական աշխատանք է կատարվում, որպեսզի յուրաքանչյուր
սկզբնական պարտիական կազմակերպությունում շարունակ կատարելագործ-
վեն կոլտնտեսականների շրջանում տարվող կազմակերպական աշխատանքի
ձևերը, բարձրացվի նրանց կոմունիստական գիտակցականությունը, լայնո-
րեն պրոպագանդվեն արժեքավոր նախաձեռնությունները և ամեն կերպ ամ-
րապնդվի պարտիական ու պետական կարգապահությունը։ Այդ և մյուս մի-
ջոցառումների շնորհիվ նրանք ամբողջապես գործի կդնեն կոլտնտեսություն-
ների ունեցած հարուստ ռեզերվները և կապահովեն յոթնամյա պլանի ժամ-
կետից շուտ կատարումը, որը պարտիական կազմակերպությունների, կոլ-
տնտեսային գյուղի բոլոր աշխատավորների գործունեության գլխավոր նպա-
տակն է։

---

# ԿՈՆԿՐԵՏ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅՈՒՆ ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻՆ

*Զ. ՍՈՒԼԹԱՆՈՎ*

Աշխատավորների դեպուտատների Սովետները Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի մեծագույն նվաճումներից մեկն են և ներկայացնում են բանվորների, գյուղացիների ու աշխատավոր ինտելիգենցիայի անքակտելի կապը, աշխատավորների համայնապարփակ մասսայական կազմակերպությունը, պետական իշխանության ամենադեմոկրատական և համաժողովրդական ձևը։ Սովետական դեմոկրատիայի համաժողովրդական բնույթը որոշվում է մեր հասարակության տնտեսական և սոցիալական կարգով։ ՍՄԿԿ XX համագումարի որոշումները և նրանց անշեղ կենսագործումը խոշորագույն նշանակություն ունեցան մասսաների քաղաքական ակտիվության բարձրացման գործում։ Այն մեծ չափով նպաստեց երկրի տնտեսական վերելքին, սոցիալիստական պետության հետագա ամրապնդմանը։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում է՛լ ավելի է բարձրանում Սովետների դերը։ Որքան լայն աշխատավորական զանգվածներ ընդգրկվեն պետության կառավարման գործում, այնքան ավելի կամրանա նրա քաղաքական հիմքը։

Այս տարվա ընտրությունների ժամանակ ամբողջ Միության մեջ տեղական Սովետներում ընտրվեցին ավելի շատ թվով դեպուտատներ, քան նախորդ ընտրությունների ժամանակ։ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետը տեղական Սովետների ընտրության կանոնադրության մեջ համապատասխան փոփոխություններ մտցրեց, որոնց համաձայն տեղական Սովետների դեպուտատների թիվն զգալի չափով ավելացավ։ Այս տարվա մարտի 15-ի ընտրությունների ժամանակ Հայկական ՍՍՌ-ի աշխատավորները իրենց տեղական Սովետներում ընտրեցին 17.878 դեպուտատ, 4.511-ով ավելի, քան ընտրվել են տեղական Սովետների նախկին ընտրությունների ժամանակ։

Տեղական Սովետների վերջին ընտրությունների դրական կողմերից մեկն այն է, որ դեպուտատների կազմում զգալիորեն ավելացել է անկուսակցական առաջավորների, շարքային աշխատողների, բանվորների և գյուղացիների թիվը, որը մեծ չափով կնպաստի Սովետների և մասսաների ավելի մերձեցմանը, նրանց կապերի ամրապնդմանը։ Եթե մինչև վերջին ընտրությունները քաղաքային, շրջանային, ավանային և գյուղական Սովետների դեպուտատների կազմում կային 8.265 բանվորներ և գյուղացիներ, ապա վերջին ընտրություններում նրանց թիվը հասավ 12.000-ի, որը տեղական Սովետների ամբողջ կազմի մոտ 74 տոկոսն է։ Տեղական Սովետներում զգալի չափով ավելացել է կանանց թիվը։

*Տեղական Սովետների գործունեության բարելավման համար մեծ նշանակություն ունի նրանց ղեկավար կազմի ճիշտ ընտրությունը։ Ռեսպուբլիկայի պարտիական օրգանների ամենօրյա ուշադրության շնորհիվ վերջին տարիներս նկատելիորեն բարելավվել է աշխատավորների դեպուտատների քաղաքային, շրջանային, ավանային և գյուղական Սովետների գործկոմների նախագահների կազմը։ Նրանց 63 տոկոսից ավելին ունի միջնակարգ և բարձրագույն կրթություն։*

*Ավելի բարեհաջող է Ալավերդու, Հոկտեմբերյանի, Կոտայքի և այլ շրջանների գյուղական, ավանային Սովետների գործկոմների նախագահների ընտրության գործը։ Եթե մինչև վերջին ընտրությունները Ալավերդու շրջանի գյուղական Սովետների գործկոմների 15 նախագահներից 8-ը ունեին տարրական կրթություն, ապա այժմ այնտեղ չկա գյուղական Սովետի գործկոմի մի նախագահ, որի կրթությունը միջնակարգից ցածր լինի։ Սակայն նույնը չի կարելի ասել Ղափանի, Գորիսի, Նոյեմբերյանի, Սիսիանի շրջանների մասին, ուր դեռևս ցածր է գյուղական Սովետների գործկոմների մի քանի նախագահների կրթական մակարդակը։*

*Տեղական Սովետների գործունեության բարելավումը մեծ չափով կախված է կադրերի ճիշտ ընտրությունից և նրանց գործկոմների աշխատանքի ճիշտ կազմակերպումից։ Տեղական Սովետների գործկոմների նախագահներ, բաժինների և վարչությունների ղեկավարներ ընտրելիս պարտիական կազմակերպությունները ելնում են այն բանից, որ նրանք լինեն իրենց գործի ունակ մասնագետներ, աշխատանքի լավ կազմակերպիչներ, իրենց ամբողջ գործունեության ընթացքում հենվեն դեպուտատների ու սովետական բազմաթիվ ակտիվ մարդկանց վրա, ժամանակին կատարեն Սովետների և պետական վերադաս օրգանների որոշումները։*

*Մեր ռեսպուբլիկայի շրջաններում ժողովրդական կրթության, առողջապահության, ֆինանսների և գյուղատնտեսության բնագավառում կադրերի ընտրության հարցը համեմատաբար հաջող է լուծված։ Սակայն նույնը չի կարելի ասել գործկոմների ճանապարհաշինարարության, կոմունալ բաժինների վարիչների ու պլանային հանձնաժողովների նախագահների մասին, որոնց մի զգալի մասը մասնագետներ չեն. իսկ դա բացասաբար է անդրադառնում այդ բաժինների գործունեության վրա։ 1959 թվականի հունվարի մեկի դրությամբ, ռեսպուբլիկայի ճանապարհային շինարարության բաժիններ ունեցող 24 շրջանային Սովետների գործկոմներից միայն երկուսում՝ Արթիկում ու Ստեփանավանում են այդ բաժինների վարիչները մասնագետներ։ Բոլոր շրջաններում չէ, որ պլանային հանձնաժողովների նախագահները տնտեսագետներ են։*

*Չնայած մեծ թվով կանայք են ընտրվել տեղական Սովետներում, սակայն ռեսպուբլիկայում և, հատկապես, առանձին շրջաններում, նրանց առաջքաշման գործը վատ է դրված։ Չկա շրջանային Սովետի գործկոմի ոչ մի կին նախագահ։ Գյուղական և ավանային Սովետների նախագահներից միայն 32-ն են կանայք, իսկ Ազիզբեկովի, Ամասիայի, Արթիկի, Ախտայի, Ղուկասյանի և այլ շրջանների գյուղական Սովետների գործկոմների նախագահների կազմում ոչ մի կին չկա։ Կանանցից կադրեր ընտրելու, դաստիարակելու և առաջ քաշելու գործը պարտկազմակերպությունների աշխատանքի կարևոր բնագավառներից մեկն է և պետք է լուրջ ուշադրության արժանանա նրանց կողմից։*



*Նշենք, որ ռեսպուբլիկայում գաղափարական-կազմակերպական բարձր մակարդակով անցան աշխատավորների դեպուտատների քաղաքային, շրջանային, ավանային և գյուղական Սովետների սեսիաները։ Ընտրվել են գործկոմներ, հաստատվել է Սովետների մշտական հանձնաժողովների կազմը և այլն։ Քաղաքային, շրջանային, գյուղական և ավանային Սովետների կազմը ցույց է տալիս, որ նրանք կարող են լավ հաջողությունների հասնել։ Այժմ կարևորն այն է, որպեսզի դեպուտատները հետևողականորեն կատարեն իրենց պարտականությունները։*

*Ռեսպուբլիկայի տեղական Սովետների աշխատանքի հիմնական բովանդակությունը ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության յոթնամյա պլանի կատարման հաջող կազմակերպումն է։ Գյուղատնտեսության առջև կանգնած խնդիրների լուծման գործում շատ անելիքներ ունեն գյուղական Սովետները։ Հայկական ՍՍՌ-ում կան 455 գյուղական և ավանային Սովետներ, որոնցում ընտրված է ավելի քան 12 հազար դեպուտատ։ Սովետական իշխանության այս ստորին, սկզբնական բջիջները սերտորեն կապված են գյուղի աշխատավորության կյանքի հետ և կոչված են լուծելու ինչպես պետական, այնպես էլ գյուղատնտեսական արտադրության հարցերը։ Կոլտնտեսության էկոնոմիկայի զարգացման, գյուղատնտեսական արտելի Կանոնադրության խիստ պահպանման, բոլոր օղակների գծով արտադրական պլանների կատարման, աշխատանքային կարգապահության ամրապնդման, կոլտնտեսականների նյութական-կենցաղային և կուլտուրական մակարդակի բարելավման և այլ հարցեր հանդիսանում են գյուղական Սովետների գործունեության կարևոր խնդիրները։*

*Աշտարակի շրջանի Աշտարակի գյուղսովետում անցյալում աշխատանքները բարձիթողի էին արված։ Կոլտնտեսության աշխատանքի կազմակերպման և աշխատանքային կարգապահության հարցը շրջանային ղեկավար օրգանների օրակարգից դրեթե չէր հանվում։ Գյուղսովետի գործկոմի նախկին նախագահը ազատվեց աշխատանքից և նրա փոխարեն ընտրվեց նոր ընկեր (Ա.Դադամյան)։ Այժմ զգալիորեն բարելավվել է Աշտարակի գյուղսովետի գործունեությունը, հատկապես կոլտնտեսությանը ցույց տրվող օգնությունը։ Գյուղսովետի գործկոմը հանգամանորեն ուսումնասիրեց և գյուղսովետի սեսիայում քննարկեց աշխատանքային կարգապահության վիճակը կոլտնտեսությունում և համապատասխան որոշում ընդունեց։ Գործկոմն ապահովեց գյուղսովետի սեսիայի որոշումների կատարումը։*

*Աշտարակի գյուղսովետը եռանդուն կերպով զբաղվում է նաև կոլտնտեսային արտադրության այլ հարցերով, օրինակ՝ գյուղատնտեսության առաջավոր փորձի ներդրմամբ։ Հաշվի առնելով, որ գյուղատնտեսության առաջավորների փորձի ներդնելն ու արմատավորելը մեծ դեր են խաղում գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում, գյուղսովետի գործկոմը անընդհատ և լրջորեն զբաղվում է այդ հարցով։ Անցյալ տարի գյուղսովետի սեսիայում երկու անգամ քննարկվեց առաջավոր խաղողագործների աշխատանքի փորձը։ 1958 թվականի հուլիսին կոլտնտեսականների հավաքում զեկուցմամբ հանդես եկավ Աշտարակի կոլտնտեսության առաջավոր բրիգադավար ընկ. Ա. Մելումյանը, որն ստացել էր խաղողի բարձր բերք։ Նրա փորձի փոխանակման կազմակերպումը նպաստեց Աշտարակ գյուղի կոլտնտեսությանը՝ 1958 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, հասնելու ավելի լավ արդյունքների։*

Առևտրական ձեռնարկություններում աշխատանքի օրինակելի և կուլտուրական կազմակերպումը, բնակչության՝ լայն սպառման ապրանքների անընդհատ աճող պահանջմունքների անշեղ բավարարումը մտնում է տեղական Սովետների անմիջական պարտականությունների մեջ:

Պարտիական և սովետական կազմակերպությունների ամենօրյա օգնության շնորհիվ մեր ռեսպուբլիկայում վերջին տարիներս զգալիորեն բարելավվել է սովետական առևտրական կազմակերպությունների աշխատանքը: Սակայն չի կարելի ասել, որ ռեսպուբլիկայի առևտրական կազմակերպությունների աշխատանքում արդեն թերություններ չկան: 1958 թվականին Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի VIII սեսիայում քննվեց առևտրի վիճակը ռեսպուբլիկայում և նրա հետագա բարելավման միջոցառումների հարցը: Ինչպես զեկուցողը, այնպես էլ ելույթ ունեցող դեպուտատները լուրջ քննադատության ենթարկեցին Աղինի, Սպիտակի, Աշտարակի, Ղափանի, Բասարգեչարի, Ալավերդու շրջանների բնակչությանն սպասարկող առևտրական կազմակերպությունների աշխատանքներում եղած թերությունները: Անկասկած, նման թերությունները ամենից առաջ այդ շրջանների տեղական Սովետների և նրանց գործկոմների վատ աշխատանքի հետևանք են, որոնք անբավարար են վերահսկում ու ղեկավարում առևտրական կազմակերպությունների գործունեությունը:

Սովետների գործունեության մեջ ոչ փոքր նշանակություն ունի կոլտնտեսային առևտրի կազմակերպումը, որը սովետական առևտրի բաղկացուցիչ մասն է: Առանձին կոլտնտեսություններ օգտվելով տեղական Սովետների անհրաժեշտ հսկողության և պահանջկոտության բացակայությունից, բավարար քանակությամբ գյուղատնտեսական ապրանքներ չեն փոխադրում քաղաք՝ ռեալիզացիայի ենթարկելու:

Պարտիայի և կառավարության վերջին տարիներս ձեռնարկած միջոցառումներից կարևոր տեղ են գրավում ՍՍՌՄ Գերագույն Սովետի և Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընդունած օրենքները կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու և ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին: Այդ օրենքների գործնական կիրառումը կապահովի երիտասարդության կոմունիստական դաստիարակության ուժեղացումը և ընդմիշտ վերջ կտա ժողովրդական կրթության կտրվածությանը կյանքից, որը խիստ բացասաբար է անդրադառնում աճող սերնդի դաստիարակության վրա: Անկասկած, աշխատանքն ավելի արդյունավետ կլինի այն քաղաքներում ու գյուղերում, որտեղ տեղական օրգանները իրոք կսկսեն զբաղվել ժողովրդական կրթության բոլոր հարցերով, այն է՝ դպրոցական շենքերով, ուսումնական հարմարանքներով, լաբորատորիաների սարքավորումներով, արտադրական օբյեկտներով և այլն: Չի կարելի նորմալ համարել այն, որ ռեսպուբլիկայի տեղական Սովետների և կառուցող կազմակերպությունների մեղքով Ախուրյանի շրջանի Հայկավան, Ոսկեհասկ ու Ջաջուռ, Բասարգեչարի շրջանի Զոդ, Մարտունու շրջանի Վերին Գետաշեն, Զոլաքար և այլ գյուղերի դպրոցական շենքերի շինարարությունը տարիներով ձգձգվում է:

Սոցիալիստական օրինականության պահպանումը, հասարակական վայրերում կարգ պահպանելը, հակահասարակական տարրերի, խուլիգանության, հարբեցողության, պետական և կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականությունը հափշտակողների և այլ հանցագործությունների դեմ պայքար կազմակերպելը տեղական Սովետների և նրանց գործկոմների աշխատանքի կարևոր բնագավառներից է:



Խորապես սխալվում են տեղական Սովետների գործկոմների այն ղեկավարները, որոնք կարծում են, թե հանցագործությունների դեմ մղվող պայքարը միայն դատական և միլիցիայի օրգանների գործն է: Անկասկած, դատաքննչական օրգանները կոչված են պահպանելու սոցիալիստական օրինականությունը, բայց այդ չի նշանակում, որ Սովետները չպետք է հոգան ժողովրդական դատարանների, միլիցայի և դատախազության գործունեության բարելավման նկատմամբ: Տեղական Սովետները և նրանց գործկոմները ելնելով ՍՄԿՊ ԿԿ-ի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի հասարակական կարգի պահպանման գործում աշխատավորների մասնակցության մասին որոշումից, պարտավոր են պրոֆմիությենական, կոմերիտական կազմակերպությունների և թաղային ու տնային կոմիտեների միջոցով հետևել, որպեսզի պահպանվի հասարակական կարգ ու կանոնը:

Իհարկե, միայն ադմինիստրատիվ միջոցառումները քիչ են հանցագործությունների դեմ պայքար կազմակերպելու համար: Այդ գործը հաջող կազմակերպելու համար անհրաժեշտ է, որ պարտիական և սովետական կազմակերպությունները ծավալուն դաստիարակչական աշխատանք տանեն բնակչության շրջանում:

Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների գործունեության բարելավումը օրգանապես կապված է կոլեգիալ ղեկավարության սկզբունքի պահպանման և սովետական դեմոկրատիայի հետագա զարգացման հետ: Դրա համար անհրաժեշտ է, որ պարտիայի քաղկոմները, շրջկոմները և սկզբնական կազմակերպությունները մշտապես օգնեն քաղաքային, շրջանային, ավանային և գյուղական Սովետների գործկոմներին՝ Սովետների սեսիաները ժամանակին հրավիրելու և բարձր մակարդակով անցկացնելու:

Տեղական Սովետների սեսիաները պետք է անցկացվեն կյանքի գործնական, ակտուալ հարցերի գործարար քննարկմամբ: Անհրաժեշտ է անընդհատ լայնացնել սեսիաներում քննարկվող հարցերի շրջանակը և սիստեմատիկաբար լսել գործկոմների և սովետական ու տնտեսական ապարատների ղեկավարների հաշվետվությունները: Սեսիաներում բարենպաստ պայմաններ պետք է ստեղծվեն՝ քննադատության և ինքնաքննադատության ծավալման միջոցով վեր հանելու մեր աշխատանքի թերությունները, պետք է ընդունվեն կոնկրետ, գործնական և մոբիլիզացնող որոշումներ: Գործկոմների նախագահներն ու տեղակալները, տեղական Սովետների դեպուտատները պարտավոր են հաճախ զեկուցումներով հանդես գալ ընտրողների առաջ և ծանոթացնել նրանց Սովետների գործունեության հետ:

Տեղական Սովետների գործունեության բարելավման և մասսաների հետ նրանց կապի ամրապնդման համար մեծ նշանակություն ունեն մշտական գործող հանձնաժողովները, որոնք Սովետներին տեղյակ են պահում, թե տեղամասերում ինչպիսին է իրերի դրությունը, բնակչության կուլտ-կենցաղային սպասարկման վիճակը, արտադրական առաջադրանքների կատարումը: Բայց, ցավոք սրտի, դեռևս շատ տեղական Սովետների գործկոմներ անհրաժեշտ ուշադրություն չեն հատկացնում մշտական հանձնաժողովներին, որի հետևանքով նրանք մատնվում են անգործության կամ իրենց պարտականությունները կատարում են անբավարար:

Տեղական Սովետների աշխատանքների աշխուժացումն ու հետագա բարելավումը պահանջում են, որպեսզի պարտիայի քաղաքային, շրջանային ու սկզբնական կազմակերպությունները սիստեմատիկորեն ղեկավարեն Սովետներին և օժանդակեն նրանց պրակտիկ աշխատանքում։ Այս ուղղությամբ որոշակի աշխատանք են կատարել Աշտարակի և Թալինի պարտիայի շրջկոմները։ Ինչպես Աշտարակի, այնպես էլ Թալինի պարտիայի շրջկոմների հերթական պլենումներում քննարկվել են տեղական Սովետների աշխատանքի հետ կապված հարցեր և ընդունվել կոնկրետ որոշումներ։ Այդ շրջանների պարտիական կազմակերպությունները մեծ հետևողականություն են հանդես բերում պարտիայի ընդունած որոշումները կենսագործելու համար։ Ցույց տրված գործնական օգնության հետ միասին պարտշրջկոմների բյուրոների և շրջսովետի գործկոմների նիստերում հաճախակի քննարկվել են գյուղական և ավանային Սովետների նախագահների, գործկոմի բաժնի վարիչների հաշվետվությունները, լուրջ ուշադրություն է հատկացվել մշտական հանձնաժողովների և տեղական Սովետների դեպուտատների գործունեությանը։ Հրավիրվել են գյուղական և ավանային Սովետների նախագահների սեմինարներ։ Նման միջոցառումները բավականին աշխուժացրել են այդ շրջանների տեղական Սովետների աշխատանքը։

Սովետական ժողովուրդը բուռն խանդավառությամբ ձեռնամուխ է եղել ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի իրագործմանը։ Կոմունիզմի կառուցման ներկա էտապում պատվավոր խնդիրներ են դրված տեղական Սովետների առջև։ Դրանց հաջող լուծումը նրանցից պահանջում է մոբիլիզացնել աշխատավորության արտադրական եռանդն ու քաղաքական ակտիվությունը ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները կենսագործելու համար։

---

# ՇՐՋԱՆԱՅԻՆ ԹԵՐԹԻ ԳԼԽԱՎՈՐ ԽՆԴԻՐԸ

## ԳՐ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

«Պղնձի համար» թերթի խմբագիր

ՍՄԿՊ XXI համագումարից հետո անցած ժամանակաշրջանում Ղափանի շրջանային «Պղնձի համար» թերթը որոշ աշխատանք է կատարել համագումարի նյութերի պարզաբանման, յոթնամյա պլանի հաջող կենսագործման համար աշխատավորների ուժերը մոբիլիզացնելու ուղղությամբ։ Թերթի կատարած աշխատանքը միայն սկիզբն է, նախնական քայլերը այն մեծ ու շնորհակալ գործի, որ մենք ծրագրել ենք կատարել առաջիկա տարիների ընթացքում։

Կոմունիզմ կառուցողների համագումարի փաստաթղթերի, յոթնամյա պլանի վիթխարի խնդիրների պրոպագանդման նպատակով թերթի էջերում տպագրվել են մի շարք հոդվածներ, զրույցներ և իլյուստրիացիոն նյութեր։ Պարզաբանվել են նաև յոթնամյակում Ղափանի շրջանի արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման հեռանկարները։ «Ղափանի արդյունաբերությունը յոթնամյակում» խորագրի տակ զետեղված նյութերը ընթերցողին պատմում են, թե առաջիկա տարիներին ինչպես կզարգանան գունավոր մետալուրգիան, տեղական արդյունաբերությունը և լեռնագործների քաղաք Ղափանը։

Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի ինժեներ Գ. Բաբայանցը թերթում գրել է, որ 1959—1965 թթ. ընթացքում կոմբինատի համախառն արտադրանքը կավելանա 2,7 անգամ, իսկ կոնցենտրատի թողարկումը՝ 2,5 անգամ։ Առաջիկա տարիներում այստեղ կկառուցվեն էքսկավատորային դեպո, մեխանիկական և բուլդոզերային վերանորոգման արհեստանոցներ, պահեստային ճոպանուղի և այլն։ Ջանգեզուրի հանքավարչության դիրեկտոր Ղ. Մաթևոսյանն իր հոդվածում պատմում է, որ երկրաբանական ուսումնասիրությունների շնորհիվ հայտաբերվել են պղնձաքարի խոշոր պաշարներ։ Ելնելով դրանից, առաջիկա յոթնամյակում հանքվարչության արտադրական կարողությունն ավելանալու է 1,5 անգամ, իսկ ֆլոտացիոն ֆաբրիկայինը՝ երեք անգամ։ Ապա նա պատմում է, թե հանքագործներն ինչ են անում 1959 թվականի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար։

Թերթի մի այլ համարում ընթերցողը նյութեր կգտնի շրջանի գյուղատնտեսության զարգացման հեռանկարների մասին։ Կոնկրետ փաստերով ցույց է տրված, թե յոթնամյակում ինչպես է աճելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ «Ինչի համար է պայքարում Ստալինի անվան կոլտնտեսությունը յոթնամյակում» վերնագրի տակ զետեղված հոդվածում

հանգամանորեն, կոնկրետ փաստերով ու թվերով, դիագրամաների օգնությամբ պատմվում է կոլտնտեսության աշխատանքի ու պայքարի պայծառ հեռանկարները 1959—1965 թվականներին: Նախատեսված է 1965 թվականին արտադրել 4020 ցենտներ հացահատիկ՝ 1958 թվականի 2914 ցենտների դիմաց, յոթնամյակի վերջում հարյուր հեկտար հողատարածության հաշվով արտադրվելու է 210 ցենտներ կաթ, 80 ցենտներ միս, յուրաքանչյուր հավի ձվատվությունը հասցվելու է 150-ի: Կոլտնտեսության դրամական եկամուտները կրկնապատկվելու են: Այդ նյութերը խմբագրության օգնությամբ պատրաստել են վերոհիշյալ կոլտնտեսության աշխատողները: Ծանոթանալով հրապարակված նյութերին, ընթերցողը գաղափար է կազմում, թե որոնք են այն վճռական բնագծերը, որ տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառներում պետք է նվաճվեն մոտակա տարիներին:

Պարտիայի XXI համագումարը մշակեց մարքս-լենինյան տեսության մի շարք կարևորագույն պրոբլեմներ, որոնց լայն պարզաբանումը մեր առաջնահերթ խնդիրն է: Այդ նպատակով նախատեսված է պարբերաբար նյութեր տպագրել այդ հարցերի շուրջը: Անցած ամիսներին լույս տեսած համարներում տպագրվել են «Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը», «Սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը», «Սոցիալիզմից դեպի կոմունիզմ», «Ինչո՞ւ բաշխման գործում չպետք է հավասարեցում լինի», «Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան» և այլ զրույցներ: Դրանք որոշ օգնություն են մեր պրոպագանդիստներին և պարտիական լուսավորության ցանցի ունկնդիրներին, որոնք այս օրերին մեծ հետաքրքրությամբ ուսումնասիրում են համագումարի պատմական փաստաթղթերը, բարձրացնում իրենց տեսական պատրաստականությունը:

Համագումարի որոշումների, յոթնամյա պլանի պարզաբանման հետ մեկտեղ, թերթում ցույց է տրվում, թե տեղերում ինչպես է կազմակերպված համագումարի նյութերի ուսումնասիրումը, ինչ է արվում յոթնամյա պլանի կատարման ուղղությամբ: Այդ առումով արժե նշել «Կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագրի անթերի կատարման համար», «Ուժեղացնել ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը» հոդվածները, «Խոր և ստեղծագործաբար ուսումնասիրել պարտիայի XXI համագումարի նյութերը» խորագրի տակ զետեղված նյութերը և այլն: Լավ է գրված հանքվարչության պարտիական կոմիտեի քարտուղարի տեղակալ Գ. Հովհաննիսյանի հոդվածը, ուր հանգամանորեն ցույց է տրված, թե պարտկազմակերպությունը ինչպես է կազմակերպել պարտիայի համագումարի որոշումների պրոպագանդան: Թերթը միաժամանակ քննադատել է Նորաշենիկի սովետական տնտեսության, մսի կոմբինատի, Կաղնուտի, Բհարլուի, Սրաշենի կոլտնտեսությունների պարտկազմակերպությունների գործունեությունը, որոնք լավ չեն կազմակերպել ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների մասսայականացումը, լայնորեն չեն ծավալել դասախոսական պրոպագանդան: Վերջերս թերթի խմբագրությունը հրավիրեց Հանքվարչության հանքերի ու ցեխերի պարտիական կազմակերպությունների քարտուղարների խորհրդակցություն, ուր մի շարք քարտուղարներ պատմեցին, թե իրենց մոտ ինչ է արվում համագումարի որոշումներն ուսումնասիրելու, աշխատավորների շրջանում քաղաքական-մասսայական աշխատանքը կազմակերպելու ուղղությամբ: Դա փորձի փոխանակություն էր, ուր դրական աշխատանքի հետ մեկտեղ վերհանվեցին նաև եղած թերու-



թյունները: Այդ խորհրդակցության նյութերը հրապարակվեցին թերթի հերթական համարներից մեկում:

Յոթնամյա պլանի կատարման հաջողությունն անմիջականորեն վճռվում է արդյունաբերական ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում: Մեր խնդիրն է վառ ու գունեղ լուսաբանել սովետական մարդկանց ստեղծարար աշխատանքը, սոցիալիստական մրցության ընթացքը, պատմել մեր աշխատավորների աղնիվ խոհերի ու նպատակադրումների, առաջավոր փորձի, ամեն օր կյանքում ծնվող նորի մասին և այն դարձնել բոլորի սեփականությունը:

«Պղնձի համար» թերթի համարներում պարբերաբար տպագրվում են զանազան նյութեր, ռեպորտաժներ, ակնարկներ, ուր պատմվում են հանքաշխարհի մարդկանց և կոլտնտեսային աշխատավորության հերոսական գործերի մասին: Ահա դրանցից մի քանիսը: «Հանքագործները խիզախում են» վերնագրով հոդվածում նկարագրված է Լենինյան հանքախմբի լեռնագործների աշխատանքային սխրանքներով լի մեկ օրը, յոթնամյակի առաջին տարվա սովորական օրերից մեկը: Այդ հոդվածի նպատակն է ցույց տալ հոյակապ պլանի կատարումը գործողության մեջ, հանքագործների ամենօրյա ներդրումը պարտիայի համագումարի որոշումների իրականացման գործում: Թերթի մի այլ համար գրեթե ամբողջապես նվիրված է Ղափանի շրջանի աշխատավորների պայքարի ու աշխատանքի մեկ օրվան՝ մարտի 17-ին: Հարուստ ու բեղուն էր յոթնամյակի այդ օրը: Լավ են աշխատել, հատկապես, Ջանգեզուրի հանքվարչության լեռնագործները, որոնք ժամկետից շուտ կատարեցին առաջին եռամսյակի պլանը: № 1—2 հանքի մի խումբ երիտասարդ հորատողներ, որոնք ջանում են արժանանալ կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման, այդ օրն իրենց առաջադրանքը կատարեցին 132,5 տոկոսով, տասնհինգ օրում կատարելով 22 օրվա արտադրական նորմա: Նյութերը պատմում են, որ շրջանի անասնաբույծները, որոնք վերջին երկու ամսում, անցած տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, կաթի համախառն արտադրանքն ավելացրել են 669 ցենտներով, միայն մարտի 17-ին պլանից ավելի արտադրել են 1.200 կիլոգրամ կաթ և այլն:

Շրջանային թերթն իր էջերում մեծ տեղ է հատկացնում սոցիալիստական մրցության ծավալման, մրցության առաջավորների աշխատանքի փորձի ընդհանրացման ու տարածման հարցերին: Հրապարակելով յոթնամյակի առաջին տարվա առաջադրանքը ժամկետից շուտ և բարձր ցուցանիշներով կատարելու մասին արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների, կոլտնտեսությունների ստանձնած պարտավորությունները, թերթը սկսել է ուշադիր հետևել, թե ով և ինչպես է կատարում իր խոստումը, ինչպես են հաղթահարվում դժվարությունները:

Պատմելով առաջավոր հանքերի ու ցեխերի, հերթափոխների, կոլտնտեսությունների և բրիգադների աշխատանքի դրական փորձի մասին, թերթը ձգտում է այն դարձնել բոլորի սեփականությունը: «Աշխատում են կոմունիստաբար», «Վարպետն ու աշակերտը», «Ավտովարորդը», «Նրանք կարժանանան այդ կոչմանը», «Հմուտ լեռնագործը», «Շինարար կանայք», «Յոթնամյա պլանը՝ 5 տարում» և այլ հոդվածներում, ակնարկներում ու ռեպորտաժներում նկարագրված է, թե առանձին հերթափոխներ, բրիգադներ և աշխատողներ ի՛նչ մեթոդով են աշխատում, աշխատանքի ինչպիսի՛ փորձ են կուտակել և

իրենց առաջադրանքների կատարման գործում ի՛նչ հաջողությունների են հասել։ Խմբագրության ուշադրության կենտրոնում են այն մարդիկ, ովքեր որոշել են աշխատել ու ապրել կոմունիստաբար։ Շրջանի արտադրական ձեռնարկություններում 13 բրիգադա պայքարում է կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչմանն արժանանալու համար։ Թերթը նրանց աշխատանքին հաճախակի է անդրադառնում։

Թերթի էջերում բարձրացվում են ինքնարժեքի իջեցման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրության ներքին ռեզերվների օգտագործման, գյուտարարության և այլ հարցեր։ «Ռացիոնալիզատորական առաջարկությունները ներդնել արտադրության մեջ» հոդվածում, որի հեղինակն է հանքվարչության ինժեներ Գ. Պետրոսյանը, ցույց է տրված, թե ինչպես Կոմերիտմիության անվան հանքում ինժեներներ Է. Դանիելյանի և Հ. Զորանյանի կոմպլեքսային առաջարկի կիրառումով վերացվեց գիշերային հերթափոխությունը և տնտեսվեցին զգալի աշխատանք ու միջոցներ։ Այդ փորձի մասին թերթը լայն հասարակական կարծիք ստեղծեց և այն տարածեց մյուս հանքերում։

Հրապարակվող նյութերում կենտրոնական դեմքը մարդն է՝ հորատողն ու էքսկավատորավարը, շինարարն ու էլեկտրաքարշավարը, հովիվն ու կթվորուհին, նրանք, ովքեր նյութական բարիքներ են ստեղծում և դրանով իսկ մեզ մոտեցնում լուսաշող ապագային՝ կոմունիզմին։

Ոչ մի թերթ, որքան էլ որ նա լավ գործի, չի կարող բազմակողմանիորեն և խոր կերպով լուսաբանել մեր բովանդակ կյանքը, լավ պրոպագանդել պարտիայի XXI համագումարի որոշումները, դրանք կենսագործելու համար մոբիլիզացնել աշխատավորների ուժերը, եթե նա ամուր թելերով կապված չէ մասսաների հետ, եթե չունի հեղինակային լայն ակտիվ և իր ամենօրյա գործունեության մեջ չի հենվում նրա վրա։ Ահա այս ճշմարտության գիտակցությամբ էլ «Պղնձի համար»-ի խմբագրությունը վարում է իր աշխատանքը՝ ամրապնդելով իր կապերը թղթակցական ակտիվի, աշխատավորական լայն զանգվածների հետ։ Բավական է ասել, որ խմբագրության աշխատանքի պրակտիկայում արմատավորվել են այնպիսի ձևեր, ինչպիսիք են՝ թերթի աշխատանքի պլանների քննարկումը թղթակիցների հետ, խմբագրության պարբերաբար հաշվետվությունը ընթերցողների առջև, բանգյուղթղթակիցների խորհրդակցություններ հրավիրելը, թղթակցական ռեյդերի կազմակերպումը և այլն, որոնք օգնում են թերթի խմբագրությանը՝ ավելի լուսաբանելու շրջանի կյանքը, ժամանակին նկատելու թերությունները, նշելու դրանց վերացման ուղիները։ Վերջին հինգ ամսում հրավիրվել է բանգյուղթղթակիցների երկու խորհրդակցություն, ուր թղթակիցների կողմից մեր թերթի աշխատանքի մասին արվել են բազմաթիվ արժեքավոր առաջարկություններ ու դիտողություններ։ Հաշվի առնելով դրանք, թերթի խմբագրությունը սկսեց ավելի հաճախ հանդիպել թղթակիցների ու ընթերցողների հետ, թերթի պլանը մշակելիս խորհրդակցել նրանց հետ և այլն։ Այդ խորհրդակցություններից հետո կրկնապատկվեց ստացվող նամակների ու թղթակցությունների քանակը, զգալիորեն ընդարձակվեց հեղինակային ակտիվի շրջանակը։ Բացի այդ, խմբագրությունն արդեն կազմակերպել է «Բանգյուղթղթակցի կաբինետ», որի միջոցով կոնսուլտացիաներ, սեմինարներ են կազմակերպվում թղթակիցների և ստորին մամուլի աշխատողների համար։



Շրջանի ոչ բոլոր արդյունաբերական ձեռնարկություններն են, որ ապահովում են առաջադրված խնդիրների կատարումը, մի շարք կոլտնտեսություններ ետ են մնում, առանձին մարդկանց գիտակցության մեջ դեռևս զգալի են անցյալի մնացուկները, սոցիալիստական հասարակությանը խորթ երևույթները։ Այսպես, Քաջարանի կոմբինատը ետ է մնում, չի կատարում ստանձնած պարտավորությունները։ Թերթը ցույց է տվել, թե ինչու կոմբինատը չի կատարում իր առաջադրանքները, փորձելով իր քննադատությամբ օգնել կոլեկտիվին՝ դուրս գալու այդ վիճակից։ Դեռևս տարվա առաջին օրերին թերթը գրել էր, որ Քաջարանի կոմբինատը չի կատարում բացման աշխատանքների պլանը։ Դա լուրջ հարց էր։ Սակայն կոմբինատի ղեկավարությունը չունկնդրեց մամուլի ահազանգին։ Հարկ եղավ, որոշ ժամանակ անց, կրկին անդրադառնալ այդ թեմային, ցույց տալով, թե ինչն է պատճառը, որ կոմբինատը ետ է մնում, չի կատարում արտադրական պլանները։

Թերթի էջերում քննադատվել են մի շարք կոլտնտեսություններ, որոնք վճռական պայքար չեն տանում անասնաբուծության մթերքների արտադրության ավելացման համար, հաջող չեն կազմակերպել գարնան գյուղատնտեսական աշխատանքները։ Այդ քննադատությունը, անշուշտ, գործին օգնել է։ Բայց պետք է նշել, որ մեր թերթում դեռևս անբավարար է քննադատության մակարդակը, միշտ չէ, որ հանդես է բերվում հետևողականություն։

Խմբագրության աշխատանքներում դեռևս լուրջ բացեր ու թերություններ կան, որոնց վերացումը նրա առաջնահերթ խնդիրն է։ Ամենից առաջ պետք է նշել, որ համակողմանիորեն չի լուսաբանվում յոթնամյակի առաջավորների փորձը։ Դեռևս անբավարար է լուսաբանվում շրջանի արդյունաբերության ձեռնարկությունների ու կոլտնտեսությունների կոնկրետ էկոնոմիկայի կարևորագույն հարցերը։ Խմբագրությունը ոչ միշտ է հետևում, թե ստանձնած պարտավորությունները ինչպես են կատարվում, ովքեր են ետ մնում և ինչ է հարկավոր անել ետ մնացողներին առաջավորներին հասցնելու համար։ Թերթում քիչ են հանդես գալիս, հատկապես, պարտիական կազմակերպությունների քարտուղարները. հազվադեպ են Սովետների ու արհմիությունների գործունեությանը վերաբերող նյութերը։ Առանձին հոդվածներ մակերեսային են, միապաղաղ, չոր ու ցամաք։ Դեռևս քիչ ուշադրություն է հատկացվում աշխատավորների կոմունիստական դաստիարակության հարցերին։

Խմբագրությունը ծրագրել է է՛լ ավելի լայնորեն, բազմակողմանիորեն, խոր և հետաքրքրական ձևով լուսաբանել շրջանի էկոնոմիկայի հարցերը, պատմել թերթի ընթերցողներին լեռնաշխարհի մարդկանց սխրանքների մասին, ցույց տալ այն նորն ու առաջավորը, որ ծնվում է պարտիայի XXI համագումարի որոշումների կատարման համար մղվող պայքարում։

> «Անհրաժեշտ է միջոցառումներ ձեռնարկել ետ մնացող կոլտնտեսությունները տնտեսապես ամրապնդելու և յուրաքանչյուր շրջանում այդպիսիներն առաջավոր կոլտնտեսություններին հասցնելու համար»:
>
> ՀԿՊ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԲԱՆԱՁԵՎԻՑ

# ԼԵՆԻՆԻ ՇՔԱՆՇԱՆԱԿԻՐ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ

Գյուղատնտեսության մեջ բոլոր տեսակի բարիքների արտադրության մայր աղբյուրը հողն է։ Այն որքան ռացիոնալ օգտագործվի ու կուլտուրապես մշակվի, այնքան շատ կլինի գյուղատնտեսական մթերքների արտադրանքը, այնքան արագորեն կզարգանա կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը, կբարձրանա կոլտնտեսականների կենսամակարդակը։ Այս բանը լավ են հասկացել Էջմիածնի շրջանի Լենինի անվան խոշորացված կոլտնտեսության աշխատավորները, որոնք վերջին տարիների ընթացքում վճռական քայլեր են արել այդ ուղղությամբ և լուրջ հաջողությունների հասել։ Նրանց ձեռք բերած հաջողություններն այնքան նշանակալից են, որ կոլտնտեսությունը իրավամբ համարվում է առաջավոր և ընթանում վերելքի ուղիով։

Կոլտնտեսությանը պետության կողմից առհավետ ամրացված է 3260 հեկտար հողային տարածություն, որից 1050 հեկտարը արոտավայր է։ Կոլտնտեսության ամրացված հողային տարածությունը չի ավելացել, հողը նույն հողն է, բայց նրանից ստացվող եկամուտը, հատկապես 1954 թվականից սկսած, տարեցտարի բարձրացել է։ Դա հետևանք է այն բանի, որ կոլտնտեսության վարչությունը և սկզբնական պարտիական կազմակերպությունը լավ են կազմակերպել հանրային տնտեսության աշխատանքները, արմատապես բարելավել են հողամշակության կուլտուրան, բարձրացրել են կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը և զարգացրել նրանց աշխատանքային նախաձեռնությունը։

Հանրային տնտեսության զարգացման գործում բացառիկ կարևոր դեր է խաղացել գյուղատնտեսության պլանավորման նոր կարգը։ Պարտիական և սովետական կազմակերպությունների օգնությամբ կոլտնտեսային արտադրությունը պլանավորել է տեղական կոնկրետ պայմաններից ելնելով. այդ միջոցառման շնորհիվ խոշոր չափով աճել է կոլտնտեսության մթերային արտադրանքը, բարձրացել է նրա դրամական եկամուտները։ Այսպես, կոլտնտեսության բոլոր դրամական եկամուտները միասին վերցրած 1953 թվականին կազմել են 8.730.542 ռ., իսկ 1958 թվականին՝ 16.325.290 ռուբլի։ Անցած 1958 թվականին՝ կոլտնտեսության բոլոր եկամուտները (մթերային և դրամական) հասան 21.841.877 ռուբլու, որը 9.091.284 ռուբլով ավելի է 1953 թվականի համախառն եկամտից։ Եկամուտների մեծ աճ է նախատեսված յոթնամյակի



տարիներին։ Գյուղատնտեսական մթերքների արտադրությունը ավելացնելու միջոցով 1965 թվականին կոլտնտեսության համախառն եկամուտը հասնելու է 40 միլիոն ռուբլու։

***

Կոլտնտեսության համախառն եկամտի 80 տոկոսից ավելին ստացվում է դաշտավարությունից, որի համար էլ առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում գյուղատնտեսական այնպիսի կուլտուրաների մշակության վրա, որոնք արժեքավոր են ու եկամտաբեր։ Այդպիսի կուլտուրաների ցանքատարածությունն ու մշակությունն ընդարձակվում է այն կուլտուրաների հաշվին, որոնք դրանց նկատմամբ տվյալ հողակլիմայական պայմաններում սակավ եկամտաբեր են։ Կոլտնտեսությունն ընդարձակում է նաև կերային կուլտուրաների ցանքատարածությունը, որպեսզի հանրային անասնաբուծությունն ապահովի կերի անհրաժեշտ բազայով և դրանով իսկ բարձրացնի անասնաբուծության մթերատվությունը։ Այդ բոլորից ելնելով, կոլտնտեսությունը վերջին տարիներում լուրջ փոփոխություններ է մտցրել ցանքատարածությունների և այգիների ստրուկտուրայում, որը երևում է հետևյալ աղյուսակից.

Կոլտնտեսության ցանքատարածություններն ու այգիները (հեկտարներով)

| Թվական | Հացահատիկ | Խաղող |  | Բամբակ | Բանջարեղեն | Ցանովի խոտ | Եգիպտացորեն |
|---|---|---|---|---|---|---|---|
|  |  | ընդամենը | որից բերքատու |  |  |  |  |
| 1953 | 868 | 405 | 335 | 500 | 71 | 108 | — |
| 1958 | 553 | 551 | 350 | 616 | 101 | 230 | 200 |

Ինչպես տեսնում ենք, 1958 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները 345 հեկտարով կրճատվել են, իսկ մյուս կուլտուրաներինը՝ ընդարձակվել։ Հացահատիկային կուլտուրաների ցանքատարածության կրճատումը բխում է հանրային տնտեսության մասնագիտացումից, ըստ որի կոլտնտեսության էկոնոմիկայում առաջատար ճյուղերը համարվում են բամբակն ու խաղողը։ Այդ կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից ստացված եկամուտը բոլոր դեպքերում գերազանցում է հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից ստացված եկամտից։ Սակայն այդ բնավ էլ չի նշանակում, թե կոլտնտեսությունն անտեսել կամ երկրորդական պլանի վրա է մղել հացահատիկային կուլտուրաների մշակությունը։ Ընդհակառակը։ Սերմնաբուծությունը բարելավելու, վարի, ցանքի ու մշակության աշխատանքներն ագրոտեխնիկական ճիշտ ժամկետներում կատարելու և բերքահավաքն անկորուստ ավարտելու շնորհիվ 1958 թվականի 523 հեկտարից ավելի շատ բերք է ստացվել, քան 1953 թվականի 868 հեկտարից։ Այսպես, 1953 թվականին հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը կազմել է 7.632 ցենտներ, իսկ 1958 թվականին՝ 10.826 ցենտներ։

Ինչպես վերը նշեցինք, կոլտնտեսության էկոնոմիկայում վճռական տեղ ունի բամբակը, որի ցանքատարածությունը 1958 թվականին կազմել է 616

հեկտար: Այդպիսի մեծ տարածություն կազմող բամբակի պլանտացիաների մշակությունը լուրջ ջանքեր է պահանջում: Հաշվի առնելով այդ, կոլտնտեսության բամբակագործներն սկսել են պրակտիկայում կիրառել երկրի առաջավոր բամբակագործների փորձը, որի արմատավորումը ոչ միայն բարձրացնում է բերքատվությունը, այլև կրճատում է ձեռքի աշխատանքը, արտադրանքի յուրաքանչյուր միավորի վրա կատարվող ծախսերը և իջեցնում է բամբակի հումքի ինքնարժեքը: Օրինակ՝ 1958 թվականին 200 հեկտար բամբակենու դաշտում մեքենաներով կատարվեց երկկողմանի մշակում՝ քառակուսի-բնային եղանակով: Դա հնարավորություն տվեց այդ տարածության վրա թագուջակներով (ուրագներով) կատարվող փխրեցման աշխատանքը երկու անգամ կրճատելու, որի շնորհիվ տնտեսվեց 4.640 աշխօր: Չորս մարդ 2 տրակտորով այդ տարածության վրա փխրեցման աշխատանքն ավարտեց 12 օրում, մինչդեռ ձեռքի աշխատանքի դեպքում 4 մարդ այդ գործը կկատարեր 183 օրում:

Կոլտնտեսության գլխավոր գյուղատնտես ընկ. Նշան Պետրոսյանը համոզիչ փաստեր է բերում այն մասին, թե ինչպես մեքենայական սեփական պարկը այժմ հնարավորություն է տալիս պլանտացիաները քառակուսի-բնային եղանակով մշակելու հետ միասին ավելի էֆեկտիվ պայքար ծավալելու բամբակենու չոռի և այլ հիվանդությունների դեմ: Այժմ բամբակենու չոռի դեմ առանձին պլանտացիաներում բուժում է կատարվում մինչև չորս անգամ: Այդ, ինչպես նաև իրագործված մի շարք միջոցառումների շնորհիվ 1958 թվականին պետությանը կոլտնտեսության հանձնած բամբակի ամբողջ հումքի 80 տոկոսը եղել է առաջին տեսակի, 15 տոկոսը՝ երկրորդ տեսակի, 1957 թվականի 67 տոկոսը՝ առաջին տեսակի և 5 տոկոս՝ երկրորդ տեսակի փոխարեն:

Լենինի անվան կոլտնտեսությունը, որը ռեսպուբլիկայի բամբակագործական առաջավոր ու խոշոր կոլտնտեսություններից մեկն է, 1958 թվականին պատվով կատարեց սոցիալիստական մրցությունում ստանձնած պարտավորությունները և 616 հեկտարից հավաքեց 18.369 ցենտներ բամբակ: Այլ կերպ ասած, յուրաքանչյուր հեկտարի բերքը հասավ 29,8 ցենտների: Այդ թվականին կոլտնտեսությունը բամբակագործությունից ստացավ 5.771.910 ռ. եկամուտ, որը կազմում է նրա ամբողջ դրամական եկամտի 35 տոկոսը:

Բամբակագործության զարգացման ասպարեզում կոլտնտեսականների ներկայիս կատարած աշխատանքը, նրանց ձեռք բերած հաջողությունները, ինչ խոսք, գոհացուցիչ են ու խրախուսանքի արժանի: Բայց այդ երբեք չի նշանակում, թե նրանց ձեռք բերած հաջողությունները վերջնական սահմանն են: Բամբակի բերքատվության բարձրացման բնագավառում կոլտնտեսությունն ունի դեռևս լրիվ չօգտագործված ռեզերվներ և, եթե դրանք ամբողջապես գործի դրվեն, զգալիորեն ավելի շատ բամբակ կստացվի, քան ստացվել է 1958 թվականին:

Լրիվ չօգտագործված ռեզերվներից առաջինը՝ բամբակենու քառակուսի-բնային եղանակով մշակումն է: Այդ եղանակով ցանքի մշակության առավելությունը և տնտեսական մեծ շահավետությունը ապացուցված է պրակտիկայում և, ասենք, հենց Լենինի անվան կոլտնտեսության առաջավոր բամբակագործների փորձով: Եթե մի երկու տարի առաջ կոլտնտեսությունում կային մարդիկ և նույնիսկ բրիգադավարներ, որոնք դիմադրում և առանձին դեպքերում արգելակում էին այդ առաջավոր եղանակի կիրառումը, ապա այժմ այդ քանը չի նկատվում և չկա մեկը, որ չխոսի բամբակի ցանքատարածությունը



քառակուսի-բնային եղանակով մշակելու առավելության մասին: Ուստի օրինական հարց է առաջանում, ապա ինչո՞ւ 1958 թվականին բամբակի 616 հեկտար ցանքից միայն 200 հեկտարը մշակվեց այդ եղանակով. արդյո՞ք հնարավորություն չկար ավելին կատարելու: Հնարավորություն, իհարկե, կար, բայց պակասեց խսկական, համարձակ նախաձեռնությունը, նորը լայն մասշտաբներով արմատավորելու հաստատակամությունը:

Դա լուրջ թերություն է: Այդ թերությունը վերացնելու համար կոլտնտեսության վարչությունը և պարտիական կազմակերպությունն ընթացիկ տարվա սկզբից կոնկրետ միջոցառումների են դիմել բամբակի ցանքատարածությունների մեքենայական մշակությունը ամեն կերպ ընդարձակելու և բամբակի բերքատվությունը բարձրացնելու այն հաշվով, որպեսզի 1965 թվականին բամբակի համախառն բերքը հասնի 1.975 տոննայի: Այդ քանակությամբ բամբակ ստանալու համար յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը պետք է միջին հաշվով հասնի 32 ցենտների: Կոլտնտեսությունը մրցության է դուրս եկել ամենակարճ ժամկետում հասնելու այդ ցուցանիշին, որի համար կան բոլոր պայմանները: Ընթացիկ տարում կոլտնտեսության բամբակագործները 250 հեկտար պլանտացիա կմշակեն քառակուսի-բնային եղանակով, իսկ 200 հեկտարի վրա կկատարեն փնջավորում՝ երկկողմանի մեքենայական մշակություն կատարելու համար: Առաջիկա տարիներին կոլտնտեսությունն ամբողջապես կանցնի բամբակենու քառակուսի-բնային եղանակով ցանքին ու մշակությանը: Լուրջ քայլեր կարվեն նաև բամբակենու բարձր բերքատու և վաղահաս սորտեր մշակելու ուղղությամբ, որպեսզի բերքահավաքը չձգձգվի և ուշ աշնանը բերքը ցրտահարության չենթարկվի:

Էջմիածնի կոլտնտեսությունը ռեսպուբլիկայում հայտնի է նաև իր խաղողագործությամբ: Խաղողը կոլտնտեսության էկոնոմիկայում առաջատար կուլտուրա է և իր եկամտաբերությամբ անփոխարինելի: Հաշվի առնելով խաղողագործության զարգացման հեռանկարները, կոլտնտեսությունը վերջին տարիներին որոշակի աշխատանք է կատարել խաղողի այգիներն ընդարձակելու և բերքատվությունը բարձրացնելու ուղղությամբ: Բավական է նշել, որ 1957 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, խաղողի այգիների տարածությունն աճել է 24 տոկոսով, բերքատվությունը՝ 62,3 տոկոսով, իսկ դրամական եկամուտը՝ 60,3 տոկոսով: Խաղողի այգիների տարածությունն առանձնապես մեծ չափով աճեց 1958 թվականին և հասավ 551 հեկտարի, որից բերքատու է 350 հեկտար: Չնայած ցրտահարությանը, կոլտնտեսությունն անցած տարի ստացավ 14.000 ցենտներ խաղողի բերք, որի դրամական եկամուտը կազմեց 6.211.593 ռուբլի, կամ կոլտնտեսության ամբողջ դրամական եկամտի 38 տոկոսը:

Խաղողը պատկանում է գյուղատնտեսական այն արժեքավոր կուլտուրաների թվին, որի մշակությունն անհամեմատ քիչ ծախս է պահանջում, բայց մեծ եկամուտ տալիս: Կոլտնտեսությունն անցած տարի մեկ հեկտար խաղողի այգու մշակության վրա ծախսել է 2.924 ռուբլի, բայց եկամուտ է ստացել 17.747 ռուբլի: Կոլտնտեսության խաղողից ստացվող դրամական եկամուտը նշանակալից չափով կաճի յոթնամյակի տարիներին, երբ այգիների տարածությունը, գլխավորապես Ջվարթնոցի տերիտորիայում, մոտ 200 հեկտարով ընդարձակելու հետ միասին, ավելի կբարելավվի ու կկատարելագործվի նրանց մշակությունը: Այգիների մշակության ձեռքի աշխատանքի մեծ մասը ասու-

*ճանաբար փոխարինվելու է մեքենայական մշակությամբ։ Այդ ուղղությամբ կոնկրետ քայլեր են սկսված։ Անցյալ տարի 180 հեկտարի վրա այգետունկ է կատարված շարային սիստեմով։ Թմբային հին այգիներից 15 հեկտար նույնպես վերածված է շարայինի։ Այդ այգիների միջշարային տարածությունները այժմ փորվում կամ փխրեցվում են տրակտորների միջոցով, որը շատ էժան է նստում և մեծ արդյունք տալիս։*

*Կոլտնտեսության գլխավոր գյուղատնտես ընկ. Ն. Պետրոսյանի հաշվումների համաձայն ոչ բերքատու այգիների (1—3 տարեկան) մեկ հեկտարի միջշարային տարածությունը ձեռքի բահերով փորելու դեպքում ծախսը կազմում է 1.000 ռուբլի, իսկ մեքենաներով փորելու դեպքում՝ 100 ռուբլի։ Ինչպես տեսնում ենք, մեքենայական և ձեռքի աշխատանքի ծախսերի (դրամականի վերածած) միջև 10 անգամ տարբերություն կա։ Սակայն բանը միայն ծախսերի մեջ չէ. դա խնդրի մի կողմն է։ Հարյուրավոր հեկտարների հասնող այգիների մշակության համար անհրաժեշտ են մեծ քանակությամբ աշխատող ձեռքեր, որոնք, մանավանդ դաշտային աշխատանքների լարված շրջանում, հնարավոր չէ ապահովել և դրա պատճառով ձգձգվում են այգիների մշակումը։*

*Ձեռքի աշխատանքի դժվարությունը պատկերացնելու համար բավական է նշել հետևյալ փաստը։ Եղած արտադրական նորմաների համաձայն 2,9 հեկտար այգու միջշարային տարածությունները բահերով 2 մարդ պետք է փորի 72 օրում, մինչդեռ տրակտորի միջոցով 2 մարդ (տրակտորիստն ու նրա օգնականը) այդ աշխատանքը կատարում է մեկ օրում։ Այս հանգամանքը նկատի ունենալով, կոլտնտեսությունն արդեն ամեն կերպ ձգտում է ընդարձակել այգիների մեքենայական մշակումը, առանց որի հնարավոր չէ ապահովել այգեգործության զարգացման մեծ պլանի կատարումը։*

*Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանով նախատեսված է խաղողի արտադրությունն ավելացնել 2,9 անգամ։ Այդ պլանի իրագործման նպատակով Լենինի անվան կոլտնտեսության խաղողագործները պարտավորվել են 1958 թվականի 14.000 ցենտների դիմաց 1965 թվականին արտադրել 40.000 ցենտներից ավելի խաղող։*

*Կոլտնտեսությունը զբաղվում է նաև բանջարաբուծությամբ, որի զարգացման համար նպաստավոր լավ պայմաններ ունի։ Այստեղ 1958 թվականին, 1953 թվականի համեմատությամբ բանջարեղենի արտադրանքը կրկնապատկվել է։ Բայց, չնայած դրան, բանջարեղենի ներկայիս բերքատվությունը (հեկտարից 160 ցենտներ) դեռևս գոհացուցիչ չէ։ Բանջարաբուծությունը հանրային տնտեսության առաջավոր ճյուղերին հասցնելու նպատակով ընթացիկ տարվանից կոլտնտեսության վարչությունը կոնկրետ միջոցառումներ է իրականացնում բանջարանոցային կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու և կոլտնտեսության սելեկցիոն սերմնաբուծական կայանին կից մեխանիզացիայի ենթարկված ջերմոցային տնտեսություն կազմակերպելու համար, որի միջոցով հնարավոր կլինի Երևան քաղաքի ազգաբնակչությանը տարվա բոլոր ամիսներին մատակարարել թարմ բանջարեղեն։ Ջերմոցային տնտեսության կազմակերպման համար կոլտնտեսությունը կատարելու է 2 միլիոն ռուբլու կապիտալ ներդրում։*

*Բանջարաբուծության զարգացման գործը կազմակերպվում է այնպես, որպեսզի 1958 թվականի 1.573 տոննայի դիմաց բանջարեղենի արտադրությունը 1965 թվականին հասնի 2.250 տոննայի։*



*Դաշտավարության ասպարեզում կոլտնտեսության վերջին հինգ տարվա կատարած աշխատանքի արդյունքները նշանակալից են։ Այդ գործում վճռական դեր է խաղացել մեքենաների լայնորեն օգտագործումը։ Գոհունակությամբ պետք է նշել, որ կոլտնտեսությունը վարի, ցանքի, փոցխման, բույսերի բուժման, հացահատիկի և բազմամյա խոտերի բերքահավաքի և սիլոսի պատրաստման աշխատանքները գրեթե ամբողջովին մեքենայացրել է։*

*Կոլտնտեսության համար գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման ուղղությամբ ավելի լայն ու նպաստավոր պայմաններ են ստեղծվել ՄՏ կայանների վերակազմումից հետո։ Լինելով տնտեսապես հզոր և ունենալով մեծ գումարների հասնող անբաժանելի ֆոնդ, կոլտնտեսությունն անցած տարի պետությունից գնեց տարբեր մարկայի 30 տրակտոր, 4 կոմբայն, 110 զանազան տեսակի մեքենաներ ու գործիքներ, որոնց դիմաց միանվագ պետական գանձարկղ մուծեց 866.837 ռուբլի։*

*Գյուղատնտեսական մեքենաների և կցվող գործիքների գնման պահին կոլտնտեսությունը չուներ արհեստանոցներ, ծածկեր և այլ հարմարություններ։ Այդպիսիք ստեղծվեցին վեց ամսում։ Այժմ կոլտնտեսությունն ունի գարաժներ, ծածկոցներ, խոշոր դարբնոց ու փայտամշակման արհեստանոց, աղացարան և այլ հարմարություններ։*

*Կոլտնտեսության վարչությունը հոգատար վերաբերմունք է ցուցաբերում մեխանիզատորական կադրերի նկատմամբ. նրանց համար ստեղծված է աշխատանքի ու վարձատրության լավ պայմաններ։ Այժմ կոլտնտեսությունում աշխատում են 70 տրակտորիստներ ու կոմբայնավարներ, մեխանիկներ, ինժեներներ և 25 ավտովարորդ, որոնց զգալի մասը տիրապետում է մի քանի մասնագիտության։ Մեկ կենտրոնից՝ կոլտնտեսության վարչությունից, ստանալով ամենօրյա կոնկրետ ղեկավարություն, մեխանիզատորներն սկսել են ավելի կազմակերպված ու արդյունավետ աշխատանք կատարել։ Նրանց լավ աշխատանքի շնորհիվ 1958 թվականին մեկ հեկտար փափուկ վարի վրա 17 ռ. 30 կ. պակաս գումար է ծախսվել, քան ծախսվում էր ՄՏ կայանի կողմից կոլտնտեսությանը սպասարկելու ժամանակ։ Էլ չենք խոսում այն մասին, որ զգալիորեն բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը և հազվադեպ են դարձել անորակ աշխատանքի փաստերը։*



*Չնայած նրան, որ ռեսպուբլիկայի նախալեռնային և լեռնային շրջանների կոլտնտեսությունների համեմատությամբ Էջմիածնի կոլտնտեսությունում անասնաբուծության զարգացման հնարավորությունները որոշ չափով սահմանափակ են, բայց, այնուամենայնիվ, վերջին հինգ տարում տնտեսության այդ կարևոր ճյուղի զարգացման ուղղությամբ քիչ աշխատանք չի կատարված։ Բնական խոտհարքների բացակայության և հեռու ընկած սակավ արոտավայրերի պայմաններում կոլտնտեսության ղեկավարությունը կարողացավ գործն այնպես կազմակերպել, որ ավելացավ անասունների, առանձնապես կովերի և խոզերի գլխաքանակը։ 1958 թվականին կոլտնտեսության անասնապահական ֆերմաներում արդեն կար 1.040 գլուխ խոշոր (որից 360 կով), 4.211 գլուխ մանր եղջերավոր անասուն, 417 գլուխ խոզ և 2.919 հավ։*

*Այստեղ հիմնական ուշադրությունը նվիրվում է ոչ այնքան անասունների գլխաքանակի ավելացմանը, որքան նրանց մթերատվության բարձրացմանը։ Անասունների ցեղը, խնամքն ու կերակրումը բարելավելու միջոցով կոլտնտեսությունը 1958 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, ավելի է արտադրել՝ միս 586 ցենտներ, կաթ 4.799 ցենտներ, բուրդ 70 ցենտներ, ձու 201.184 հատ։ Անցած տարի 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրվել է 44,5 ցենտներ միս։ Մսի արտադրության ավելացման գործում լուրջ դեր է խաղացել խոզաբուծության զարգացումը։ Այստեղ խոճկորները լավ կերակրվում ու 2—3 ամսական հասակում հանձնվում են բտման կետին, ուր նրանց յուրաքանչյուրի քաշը հասցվում է 75—80 կիլոգրամի և ապա վաճառվում պետությանը։*

*Կոլտնտեսությունը յոթնամյա պլանով նախատեսել է յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց 1965 թվականին արտադրել՝ միս՝ 119 ցենտներ, կաթ՝ 400 ցենտներ, բուրդ՝ 433 կիլոգրամ, ձու (100 հեկտար հացահատիկային կուլտուրաների ցանքատարածության դիմաց)՝ 200.000 հատ։ Մտնելով սոցիալիստական մրցության մեջ, անասնաբուծության ֆրոնտի աշխատողները պարտավորվել են այդ ցուցանիշներին հասնել ոչ թե 1965 թվականին, այլ առաջիկա տարիներին։ Դա նրանց հնարավորություն կտա բարձրացնելու անասնաբուծության եկամտաբերությունը, որը տնտեսության մյուս ճյուղերի համեմատությամբ դեռևս ետ է մնում։*

*Անասնաբուծական մթերքների արտադրության նախատեսված առաջադրանքների կատարումն ամենից առաջ կախված է կերի կայուն բազայի ստեղծումից։ Այդ ուղղությամբ կոլտնտեսությունը դեռ. անցյալ տարվանից որոշ քայլեր է ձեռնարկել։ 1953 թվականի 108 հեկտարի դիմաց, 1958 թվականին ցանովի խոտերի մշակությունը հասցվել է 230 հեկտարի։ Ցանքի ու նրա մշակության հաջող կատարման շնորհիվ խոտի բերքատվությունը կրկնապատկվել է և 1958 թվականին կուտակվել է 21.283 ցենտներ խոտ։*

*Կերի հաստատուն բազայի ստեղծման մյուս հիմնական աղբյուրը եգիպտացորենի մշակությունն է։ Եգիպտացորենը այս կոլտնտեսության համար նոր, բայց չափազանց օգտավետ կուլտուրա է։ Կոլտնտեսականներն արդեն գիտակցում են, որ առանց այդ արժեքավոր կուլտուրայի մշակության, մանավանդ իրենց կոլտնտեսության յուրահատուկ պայմաններում, հնարավոր չէ լուծել կերի կայուն բազայի ստեղծման խնդիրը։ Ահա թե ինչու նրանք 1958 թվականին ցանեցին 180 հեկտար եգիպտացորեն, որից 80 հեկտարը աշնանային խոզանացան էր։ Գարնանը կատարված ցանքի յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 220, իսկ խոզանացանի յուրաքանչյուր հեկտարից՝ 100 ցենտներ կանաչ մասսա։ Առավել լավ ցուցանիշների հասավ Մ. Եղիազարյանի ղեկավարած բրիգադան, որը խոզանացանի յուրաքանչյուր հեկտարից ստացավ 180 ցենտներ մասսա։ Հետևելով երկրի առաջավոր կոլտնտեսությունների փորձին, բրիգադան 10 հեկտար խոզանացանի մշակությունը կատարեց քառակուսի-բնային եղանակով։ Այդ եղանակով բրիգադան ցանքը երեք անգամ մեքենայացված մշակության ենթարկեց և ծախսեց 12 աշխօր։ Նույն ցանքատարածությունը ձեռքով մշակելու դեպքում կծախսվեր 160 աշխօր։ Հենվելով այդ փորձի վրա, կոլտնտեսությունն ընթացիկ տարում եգիպտացորենի ցանքատարածությունները հիմնականում կմշակի քառակուսի-բնային եղանակով, որը նրան*



*հնարավորություն կտա քիչ աշխօրերի ծախսումով ստանալ կանաչ մասսայի առատ բերք, որից անհրաժեշտ չափով հյութալի սիլոս կպատրաստվի անասունների համար։*



*Հանրային տնտեսության ընդլայնման կարևորագույն միջոցներից մեկը անբաժանելի ֆոնդի ավելացումն է ու նրա նպատակահարմար ծախսումը։ Այս գործում կոլտնտեսության վարչությունը (նախագահ՝ Եղիա Մարգարյան) միանգամայն ճիշտ մոտեցում է ցուցաբերել։ Վերջին վեց տարում իր ստացած եկամտից կոլտնտեսությունն անբաժանելի ֆոնդին հատկացրել է 12 միլիոն 202 հազար ռուբլի։ Այդ գումարի մեծ մասը ծախսված է արտադրության զարգացման վրա. գնված են գյուղատնտեսական մեքենաներ, գործիքներ, ինվենտար, կառուցված են գոմեր, պահեստներ, արհեստանոցներ, գցված են նոր այգիներ և այլն։ Միայն 1958 թվականին անբաժանելի ֆոնդին հատկացված է 2.938.552 ռ., որից գյուղատնտեսական մեքենաների ու գործիքների գնման համար ծախսված է 866.837 ռ., այգեգործության (հատկապես այգետնկումների) վրա՝ 234.267 ռ., ոռոգման և մելիորացիայի վրա՝ 82.408 ռ. և այլն։ Այսպիսի մեծ կապիտալ ներդրումների շնորհիվ կոլտնտեսությունն այսօր ունի այնպիսի լայն հնարավորություններ ու արտադրական ամուր բազա, որ նույնիսկ բնական անբարենպաստ տարում անգամ ավելացնում է իր եկամուտները։ Բնական այնպիսի աղետ, ինչպիսին երաշտն է, չի սարսափեցնում էջմիածնի կոլտնտեսականներին։ Ոռոգման լայն ցանցի միջոցով նրանք պայքարում են երաշտի դեմ և ապահովում կայուն բերքի ստացումը։*

*Անբաժանելի ֆոնդը, իհարկե, միայն արտադրության վրա չի ծախսվում։ Նրանից խոշոր հատկացումներ են կատարվում նաև կուլտուրական շինարարության վրա։ Այդ ֆոնդի հաշվին կառուցվել և 1956 թվականին շահագործման է հանձնվել կոլտնտեսության կուլտուրայի հոյակապ պալատը իր 650 տեղանոց հանդիսասրահով, հեռուստատեսության փոքր դահլիճով, ճեմասրահներով, խաղասենյակներով, փորձասենյակներով ու վարչական կաբինետներով։ Դա ճարտարապետական մի լավ կառույց է, որի վրա ծախսվել է 8 միլիոն ռուբլի։ Կոլտնտեսության անբաժան մասը կազմող Զվարթնոց ավանում ջուր և էլեկտրական լուսավորություն է անցկացված։*

*Այժմ, երբ կոլտնտեսությունն ունի արտադրական ամուր բազա, անբաժանելի ֆոնդից խոշոր կապիտալ ներդրումներ է կատարելու կուլտուր-կենցաղային շինարարության բնագավառում։ Մոտակա տարիներին կառուցելու է 5 կիլոմետր ճանապարհ, մանկապարտեզի, մանկամսուրի շենքեր, բաղնիք, չորս դաշտամասում՝ կանոնավոր շենքեր, ուր կոլտնտեսականներն աշխատանքի ընդմիջման ժամանակ կճաշեն ու կանցկացնեն իրենց կուլտուրական հանգիստը։ Ընթացիկ տարվա սկզբից սկսվել և տարվա վերջին կավարտվի Զվարթնոց ավանի դպրոցի ու ակումբի շենքի շինարարությունը։ Յոթնամյակի տարիներին շինարարության գծով կիրականացվեն նաև այլ միջոցառումներ։*

*Առաջիկայում մի շարք նոր միջոցառումներ են իրականացվելու նաև տընտեսվարման ու վարձատրության գործը կատարելագործելու ուղղությամբ։ Ընթացիկ տարվանից կոլտնտեսության սելեկցիոն սերմնաբուծական կայանը, որը ղեկավարում է ակադեմիկոս Գ. Բաբաջանյանը, անցնելու է տնտեսական հաշվարկի, իսկ ամբողջ կոլտնտեսությունը տնտեսական հաշվարկի կանոնի*

1960 թվականից։ Դա հնարավորություն կտա արտադրությունն ավելի ռացիոնալ վարելու և տնտեսության բոլոր ճյուղերը եկամտաբեր դարձնելու։

Լուրջ վերակառուցում է անցկացվելու արտադրության կազմակերպման ու ղեկավարման գործում։ Ներկայումս եղած 25 այգեգործական, դաշտավարական, 3 տրակտորային բրիգադների և 4 անասնապահական ֆերմաների փոխարեն կազմակերպվելու են կոմպլեքսային 4 խոշոր բրիգադներ, որոնց կամրացվի համապատասխան չափով հողային տարածություն, այգիներ, մեքենաներ ու գործիքներ, տրանսպորտ, բանող և մթերատու անասուններ։ Նախատեսվող վերակառուցման շնորհիվ տարեկան կտնտեսվի մոտ 14.000 աշխօր։ Դրա հետ միասին կոմպլեքսային բրիգադների գլուխ կկանգնեն գյուղատնտեսության մասնագետներ, հարուստ փորձ ունեցող պրակտիկ աշխատողներ, որով արտադրության կառավարումը կդրվի ավելի բարձր մակարդակի վրա։

Վերջին տարիներում որոշակի փոփոխություններ են տեղի ունեցել վարձատրության ասպարեզում։ Կոլտնտեսականների աշխօրերի դիմաց տրվող վարձատրության մեջ մթերային մասն իջել է, իսկ դրամականը՝ բարձրացել։ 1953 թվականին յուրաքանչյուր աշխօրի դիմաց տրված 11 ռ. 20 կ. դրամական վարձատրությունը 1958 թվականին հասել է 19 ռ.։ Այդ նույն թվականին ամեն մի աշխօրի դրամական և մթերային վարձատրությունը կազմել է 22 ռ. 77 կոպեկ։ Կոլտնտեսությունը որոշել է առաջիկայում անցնել լրիվ դրամական վարձատրության, ամեն մի աշխօրի դիմաց վճարելով 25 ռ., որի 60 տոկոսը լինելու է երաշխավորված վարձատրություն։ Ծերացած կամ աշխատունակությունը կորցրած ամեն մի կոլտնտեսականի ամսեկան տրվելու է 250 ռ. թոշակ, իսկ հղի կանանց՝ 3 ամսյա արձակուրդ, պահպանելով նրանց միջին վաստակի 50 տոկոսը։ Կոլտնտեսության միջոցներով կպահպանվեն մանկապարտեզներ, մանկամսուրներ, իսկ ամառային ամիսներին՝ դպրոցականների ճամբար։

Լրիվ դրամական վարձատրության անցնելը ավելի կբարձրացնի կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը, նրանց ստեղծագործական աշխատանքի թափը, որով հանրային տնտեսության բոլոր ճյուղերը նոր վերելք կապրեն։ Տնտեսական տեսակետից կոլտնտեսությունը կդառնա ավելի ամուր և հնարավորություն կունենա իր անդամների անձնական պահանջմունքները բավարարելու մրգեղենով, բանջարեղենով և կաթով։ Այս դեպքում կոլտնտեսականների անձնական տնտեսությունը կկորցնի իր նշանակությունը, կոլտնտեսականները կազատվեն անձնական տնտեսության մեջ կատարվող ամենօրյա սակավ արդյունավետ աշխատանքից. դա և՛ տնտեսական, և՛ կուլտուրական հանգստի տեսակետից նրանց ավելի ձեռնտու կլինի։



Արտադրողական ուժերի աճի, կոլտնտեսային հանրային սեփականության զարգացման ու ամրապնդման հետ միասին փոխվել ու արմատապես բարելավել են էջմիածինցիների կյանքի պայմանները։ Կոլտնտեսությունից ստացած եկամտով կոլտնտեսականները վարում են բարեկեցիկ ու կուլտուրական կյանք։ Արդեն նրանց կենցաղի մեջ է մտել տնային սառնարանների, լվացքի մեքենաների, փոշեծծիչների, ռադիոընդունիչների ու հեռուստացույցների օգտագործումը։ Կոլտնտեսականների 50—60 տոկոսը կառուցել են նոր բնակարաններ, իրենց բոլոր հարմարություններով։ Կոլտնտեսության վարչությունը լայն օգնություն է ցույց տալիս նոր բնակարաններ կառուցող կոլտնտեսականներին և պայմաններ ստեղծում նրանց կուլտուրական կյանքի համար։



Խոսելով կուլտուրայի աճման մասին, չի կարելի չնշել այն փաստը, որ տարեցտարի կոլտնտեսային արտադրություն են գալիս բարձրագույն ուսումնական հաստատություններն ավարտած մասնագետներ, միջնակարգ կրթությամբ պատանիներ ու աղջիկներ, որոնք աչքի են ընկնում իրենց լավ ու ջանասեր աշխատանքով։

Լավ աշխատանքից հետո կոլտնտեսականներին անհրաժեշտ է լավ հանգիստ, կուլտուրական սպասարկում։ Այդ նպատակով կոլտնտեսության վարչությունն ու պարտիական կազմակերպությունը սիստեմատիկաբար օգնում ու տոն են տալիս կուլտուրայի պալատին կից կազմակերպված թատերական, երգի ու պարի, նկարչական խմբակների աշխատանքին։ Դա նրանք համարում են իրենց սեփական, հարազատ գործը, որը կարևոր նշանակություն ունի կոլտնտեսականների, մանավանդ երիտասարդության կոմունիստական դաստիարակության համար։

— Մեր երիտասարդները,— ներքին գոհունակությամբ պատմում է կոլտնտեսության նախագահը,— հետաքրքրվում են ոչ միայն թատրոնով, կինոյով, գրականությամբ ու նկարչությամբ, այլև երաժշտությամբ։ Ընդառաջելով նրանց ցանկությանը, վերջերս կոլտնտեսությունը գնեց 18 փողային գործիք և կազմակերպեց փողային նվագախումբ, որն ունի իր ղեկավարը։ Մենք գոհ ենք, որ ունենք գեղարվեստական այնպիսի ինքնագործ խմբեր, որոնք հաջողությամբ ելույթներ են ունենում ոչ միայն էջմիածնի աշխատավորների, այլև հարևան շրջանների կոլտնտեսականների համար։

Իր գոյության 31 տարում կոլտնտեսության ձեռք բերած խոշոր հաջողությունների մեջ աչքի է ընկնում նոր, սովետական առաջավոր մարդու ձևավորումը, նրա հոգեկան հարստության աճը։ Որոշակի գիտելիքներ ձեռք բերած և պրակտիկ աշխատանքում կոփված բազմաթիվ մարդիկ դարձել են հրաշալի կազմակերպիչներ, արտադրության նորարարներ, որոնք հանրային տնտեսության զարգացման գործում աչքի են ընկնում իրենց նվիրված ու ստեղծագործական աշխատանքով։

Ոգեշնչված մեր հարազատ պարտիայի XXI համագումարի պատմական որոշումներով, էջմիածնի Լենինի շքանշանակիր կոլտնտեսության անդամները ներկայումս կազմակերպված կերպով առաջ են տանում գարնան-դաշտային աշխատանքները։ Նրանք անում են ամեն ինչ, որպեսզի ընթացիկ տարում աճեցնեն բարձր բերք և բոլոր գծերով գերակատարեն գյուղատնտեսական մթերքների արտադրության առաջադրանքը, ամուր հիմք դնելով յոթնամյա պլանի ժամկետից շուտ կատարմանը։ Դա նրանք համարում են իրենց հայրենասիրական ազնիվ պարտքը, ամենագլխավոր խնդիրը, որի հաջող կատարման համար ուժ ու եռանդ չեն խնայում։

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ՄԱՄՈՒԼԻ ՄԱՍԻՆ

Մամուլը մեր երկրում Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ աճել ու դարձել է գաղափարական հսկայական ուժ։ Քառասնյոթ տարի առաջ, երբ սկսեց լույս տեսնել «Պրավդա»-ն՝ բանվորական լեգալ և մասսայական առաջին լրագիրը Ռուսաստանում, Վ. Ի. Լենինը այդ համարեց մեծ իրադարձություն, առաջին ծիծեռնակն այն գարնան, երբ ամբողջ երկիրը կծածկվի բանվորական թերթերի լայն ցանցով։ Լենինի այդ երազանքն այսօր իրականություն է դարձել։ Ցարական Ռուսաստանում 1913 թվականին հրատարակվում էին 1055 թերթեր՝ 3,3 միլիոն օրինակ ընդհանուր տիրաժով, իսկ Սովետական Միությունում ներկայումս 60-ից ավելի լեզուներով լույս են տեսնում ավելի քան տասը հազար թերթ, որոնց ընդհանուր տիրաժն անցնում է 60 միլիոն օրինակից։ Գիրքը մեր երկրում դարձել է աշխատավորների լայն մասսաների սեփականությունը։ Ժողովրդին անհրաժեշտ գրականությունը հարյուր-հազարավոր օրինակներով տարածվում է քաղաքում և գյուղում։ 1958 թվականին ՍՍՌՄ-ում հրատարակվել է 63.641 անուն գիրք, 1 միլիարդ 103 միլիոն օրինակ ընդհանուր տիրաժով։

Սովետական մամուլը իսկական ժողովրդական մամուլ է, ժողովրդի խոհերի ու ձգտումների ազնիվ թարգմանը։ Մեր թերթերի էջերում բանվոր և գյուղացի թղթակիցները, ժուռնալիստները ու հրապարակախոսները, Լենինի արտահայտությամբ, գրում են «արդիականության պատմությունը»։ Մամուլը պատմում է սովետական մարդկանց հերոսական գործերի ու խիզախումների մասին, հանրագումարի է բերում կոմունիզմ կառուցող միլիոնավոր մասսաների ստեղծարար աշխատանքի արդյունքները, սոցիալիստական հաղթական շինարարության վիթխարի փորձը, մոբիլիզացնում՝ ժողովրդի ուժերը Կոմունիստական պարտիայի առաջադրած հոյակապ խնդիրները կենսագործելու համար։ Մեր թերթերն ու ժուռնալները, հավատարիմ բոլշևիկյան մամուլի տրադիցիաներին, մասսաներին են հաղորդում մարքսիզմ-լենինիզմի անմահ գաղափարները, բազմակողմանիորեն լուսաբանում Կոմունիստական պարտիայի կազմակերպական ու դաստիարակչական վիթխարի աշխատանքը. մամուլը անհաշտ պայքար է մղում մասսաների ստեղծագործական նախաձեռնությունն ու ակտիվությունը կաշկանդող պահպանողականության, հնամոլության դեմ, բուրժուական գաղափարախոսության ու հոգեբանության մնացուկների դեմ։

Սովետական մամուլը մեր պարտիայի գաղափարական ամենահեռահար հրետանին է, նրա մերձավոր ու հավատարիմ օգնականը։

Անհամեմատ աճում են մամուլի դերն ու նշանակությունը արդի պայմաններում, կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։ ՍՄԿՊ XXI համագումարը նշեց պարտիայի ու ժողովրդի գլխավոր խնդիրները առաջիկա յոթնամյակում, ցույց տվեց այն բնագծերը, որ կարճ ժամանակամիջոցում լենինյան պարտիայի ղեկավարությամբ պետք է նվաճի սովետական ժողովուրդը իր պատմական զարգացման մեծ ճանապարհին։ Այստեղից էլ բխում են մեր մամուլի խնդիրները, որն իր ամբողջ աշխատանքը ենթարկում է ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի կենսագործման համար ժողովրդական լայն մասսաների մոբիլիզացման, նրանց կոմունիստական դաստիարակության վսեմ նպատակներին։

Պարտիայի կողմից սովետական մամուլին ներկայումս առաջադրվող բարձր պահանջների խոր ըմբռնման տեսակետից հսկայական նշանակություն ունի լենինյան գաղափարական ժառանգությունը։ Քաղաքական գրականության պետական հրատարակչությունը ռուսերեն լույս է ընծայել «Լենինը մամուլի մասին» ստվարածավալ ժողովածուն*, ուր ամփոփված են մեծ առաջնորդի և ուսուցչի կարևորագույն հոդվածները, ելույթները, նամակները և բազմաթիվ այլ նյութեր, որոնք վառ կերպով պատկերում են Վ. Ի. Լենինի ժուռնալիստական գործունեությունը, նրա վիթխարի աշխատանքը բոլշևիկյան մամուլի ստեղծման ու ղեկավարման գործում։ Դրանք ընդգրկում են պատմական խոշոր իրադարձություններով հարուստ մի ժամանակաշրջան, սկսած Կոմունիստական պարտիայի սաղմնավորման, լենինյան «Իսկրայի» շրջանից մինչև սոցիալիստական ռևոլյուցիայի, պրոլետարիատի դիկտատուրայի հաղթանակի, սոցիալիստական շինարարության անցնելու ժամանակաշրջանը։

* „Ленин о печати“, Москва, Госполитиздат, 1959, 774 стр.



Բոլշևիկյան մամուլի ամբողջ պատմությունը անխզելիորեն կապված է Կոմունիստական պարտիայի հերոսական պատմության հետ, Վլադիմիր Իլյիչ Լենինի անվան հետ։ Կազմակերպելով ու ղեկավարելով Ռուսաստանի ռևոլյուցիոն պրոլետարիատի մամուլը, Լենինը մերկացրեց բուրժուական մամուլի ողջ կեղծիքը, նրա կախվածությունը միլիոնատերերի և միլիարդատերերի ոսկու քսակից։ Մերկացնելով «մամուլի ազատության» բուրժուական առասպելը, Լենինը ցույց տվեց, որ բուրժուական թերթերը մասսաներին շահագործելու կապիտալիստական ձեռնարկություններ են։ Կապիտալիստական երկրներում աշխատավորները զրկված են «մամուլի ազատությունից»։ Մոնոպոլիաների ու նրանց կամակատարների ձեռքում են գտնվում տպարանները, պոլիգրաֆիական տեխնիկան, թղթի հսկայական պաշարները։ «Բուրժուական հասարակության «մամուլի ազատությունը»,— գրել է Լենինը,— հարուստների ազատությունն է սիստեմատիկաբար, անշեղորեն, ամեն օր միլիոնավոր օրինակներով խաբել, այլասերել, հիմարացնել ժողովրդի շահագործվող և ճնշված մասսաներին, չքավորությանը» (էջ 579)։

Բուրժուական մամուլի այդ այլանդակ ու գիշատիչ կերպարանքը ավելի ցայտուն կերպով է դրսևորվում մեր օրերում, երբ իմպերիալիստների ծախու գրչակներն իրենց տերերի կամքով հրահրում են անսանձ պատերազմական պսիխոզ, բորբոքում «սառը պատերազմ», հանդես են գալիս միջազգային լարվածության թուլացման դեմ, տարածում ամեն տեսակ սուտ ու կեղծիք, կեղտոտ հերյուրանք սոցիալիստական երկրների, ազատության ու խաղաղության համար պայքարող ժողովուրդների դեմ։

Զարգացնելով գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի ժուռնալիստական, հրապարակախոսական գործունեության տրադիցիաները, պարտիան ու նրա առաջնորդը ձևակերպեցին պրոլետարական մամուլի սկզբունքներն ու խնդիրները։ Վ. Ի. Լենինը հռչակեց պրոլետարական գրականության և մամուլի պարտիականության սկզբունքը, որ գրականությունը պետք է դառնա համապրոլետարական գործի մի մասը, պարտիայի միասնական, մեծ մեխանիզմի «անիվն ու պտուտակը», որ շարժման մեջ է դրվում ամբողջ բանվոր դասակարգի, նրա գիտակից ավանգարդի կողմից։ Պարտիական օրգանը պետք է ունենա իր կայուն և հստակ քաղաքական գիծը, անհաշտ լինի պարտիայի գաղափարական հակառակորդների դեմ մղվող պայքարում։ «...Մենք մտադիր չենք մեր օրգանը դարձնել բազմազան հայացքների մի պարզ պահեստ,— գրել է Լենինը «Իսկրա»-յի խմբագրության հայտարարության մեջ,— ընդհակառակը, մենք նրան վարելու ենք խիստ որոշ ուղղության ոգով։ Այդ ուղղությունը կարելի է արտահայտել մարքսիզմ բառով, և մենք դժվար թե կարիք ունենանք ավելացնելու, որ կողմնակից ենք Մարքսի և Էնգելսի գաղափարների հետևողական զարգացմանը..» (էջ 111)։

Պարտիականության, գաղափարայնության դիրքերից էր ելնում Լենինը պարտիական տպագիր օրգանի խմբագրության և նրա աշխատակիցների կազմը որոշելիս։ «Բանվորական մամուլին այս կամ այն գրականագետի աշխատակցելու նկատմամբ եղած քաղաքական տեսակետն այն է,— գրել է Լենինը,— որ այդ մասին մենք դատենք ոչ թե տվյալ գրողի ոճի, սրամտության, հանրամատչելի բացատրելու տաղանդի տեսակետից, այլ նրա ամբողջ ուղղության տեսակետից, թե նա իր ուսմունքով ինչ է մտցնում բանվորական մասսաների մեջ» (էջ 509)։

Պարտիական թերթի խմբագրությունը, նրա աշխատակիցների կազմը պետք է բաղկացած լինի գաղափարապես տոկուն և սկզբունքային, Կոմունիստական պարտիայի գործին մինչև վերջ նվիրված ընկերներից։ Լունաչարսկուն գրած նամակներից մեկում Լենինը կրկին անդրադառնալով այդ հարցին, գրել է. «Տեսե՛ք, ուրեմն, մի՛ մոռացեք, որ Դուք պարտիական թերթի աշխատակից եք և այդ բանը թույլ մի՛ տվեք մոռանալ շրջապատողներին» (էջ 364)։

Ելնելով պարտիականության սկզբունքներից, որը բխում է բոլշևիկյան պարտիայի բուն էությունից, Լենինը ստեղծեց մի մամուլ, որն իր արմատներով գնում է դեպի ժողովրդի խորքը, սնվում նրանից, հանդիսանում ռևոլյուցիոն, մարքսիստական գաղափարների տրիբունա, աշխատավոր մասսաների պայքարի խիզախ կազմակերպիչ։ Մամուլը հավաքում, ընդհանրացնում է պարտիայի ու ժողովրդի կոլեկտիվ իմաստությունը, նրանց կոլեկտիվ փորձը և ռևոլյուցիոն պրակտիկան։

Լենինը մշակելով Ռուսաստանում մարքսիստական պարտիա ստեղծելու իր հանճարեղ պլանը, առանձնահատուկ տեղ հատկացրեց մամուլին։ Պարտիայի կազմակերպման ուղղությամբ ռուսական մարքսիստների գործունեության ելակետը, առաջին գործնական քայլը Լենինը համարում էր համառուսական քաղաքա-

կան լրագրի ստեղծումը, որը պետք է լինի ոչ միայն կոլեկտիվ պրոպագանդիստ և կոլեկտիվ ագիտատոր, այլև կոլեկտիվ կազմակերպիչ։ Լենինը բնութագրելով մարքսիստական մամուլի դերը, նրան համեմատում էր «այն փայտամածի հետ, որով շրջապատում են կառուցվող շենքը, նշում են շենքի կոնտուրները, դյուրացնում են առանձին կառուցողների հաղորդակցությունները, օգնում են նրանց աշխատանքը բաշխելու և դիտելու այն ընդհանուր արդյունքները, որ ձեռք են բերված կազմակերպված աշխատանքով» (էջ 139)։

Մարքսիստական ռևոլյուցիոն օրգանի դերի վերաբերյալ մոտավորապես 60 տարի առաջ գրված այս խոսքերը ո՛չ միայն այսօր էլ պահպանել են իրենց ակտուալությունը, այլ է՛լ ավելի նշանակալից ու խորիմաստ են դարձել մեր օրերում, երբ սովետական ժողովուրդը «կազմակերպված աշխատանքով» բարձրացնում է կոմունիստական հասարակարգի հոյակապ շենքը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայից հետո բուռն կերպով աճեց կապիտալիզմի կապանքներից ազատագրված ժողովրդի ազատ մամուլը, որը կոչված էր ծառայելու աշխատավոր մասսաներին, օգնելու նրանց՝ կառուցելու նոր կյանք, պայքարելու պրոլետարական ռևոլյուցիայի նվաճումները պաշտպանելու, ամրապնդելու և խորացնելու համար։ Վ. Ի. Լենինը ղեկավարում և ուղղություն էր տալիս սովետական մամուլի օրգաններին։ Ժողովածուում տեղ գտած մի շարք աշխատություններում և հոդվածներում, որոնք գրված են 1918 թվականին («Սովետական իշխանության հերթական խնդիրները», «Մեր թերթերի բնույթի մասին» և այլն), Լենինը ձևակերպել է սովետական մամուլի հիմնական սկզբունքները, նրա կարևոր դերը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո օրակարգում դրվեցին պրոլետարական պետության կառավարման, նրա ապարատի ստեղծման, սոցիալիստական շինարարության անցնելու հարցերը։ Լենինը հիմնավորեց սոցիալիստական էկոնոմիկայի հիմքերի կառուցման կարևորագույն դրույթները։ Հնի կործանումից նորի կառուցմանն անցնելու ժամանակաշրջանում Վ. Ի. Լենինը մեծ տեղ հատկացնելով սովետական մամուլին, առաջադրեց հետևյալ մարտական նշանաբանը.

— Մամուլը պետք է սոցիալիստական շինարարության գործիք լինի։

Առաջադրելով այդ նշանաբանը, Լենինը կոնկրետացրեց մամուլի խնդիրները բանվոր դասակարգի դիկտատուրայի, սոցիալիստական շինարարության դարաշրջանում։ Մամուլը ո՛չ միայն պետք է լինի Կոմունիստական պարտիայի և սովետական պետության քաղաքականության բացահայտ ագիտատորը և անդուլ պրոպագանդիստը, այլև մասսաների անխոնջ կազմակերպիչը կյանքի նոր ձևերի, սոցիալիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։

Սոցիալիստական ռեսպուբլիկայում մամուլի գլխավոր խնդիրներից մեկը պետք է դառնա ժողովրդական ամենալայն մասսաների տնտեսական վերադաստիարակության գործը։ «Մենք, — գրել է Լենինը,— պետք է մամուլը սենսացիայի օրգանից, քաղաքական նորությունները հաղորդող պարզ ապարատից, բուրժուական կեղծիքի դեմ պայքարող օրգանից դարձնենք, և կդարձնենք, մասսաների տնտեսական վերադաստիարակության գործիք, մի գործիք՝ մասսաներին ծանոթացնելու այն բանին, թե ինչպես պետք է աշխատանքը կազմակերպել նոր ձևով» (էջ 587)։

Վ. Ի. Լենինն իր հոդվածներում բազմիցս անդրադարձել է սոցիալիստական շինարարության առաջավոր փորձը մամուլի էջերում պրոպագանդելու հարցերին։ Նա գրում էր, որ մեր թերթերի աշխատանքում ամենավատը՝ դա ընդհանուր դատողությունների «չափից դուրս առատությունն է», և որ «խիստ պակասում է տեղական փորձի ուսումնասիրությունը»։ Լենինը թերթերից պահանջում էր ամենայն կոնկրետությամբ, մանրամասնություններով ուսումնասիրել «տեղական փորձը», խորանալ «իսկական կյանքի մեջ», ցույց տալ, թե «որտեղ, ում, ինչո՛ւ (ի՛նչ եղանակներով)» հաջողվել է հասնել գործի «իրական, թեկուզ և փոքր բարելավման»։ Մամուլի կարևորագույն պարտականությունն է «ամբողջ ուժով ժողովրդականացնել և ռեկլամել ամեն մի քիչ թե շատ աչքի ընկնող տեղական աշխատողի, նրան ցույց տալ որպես օրինակ» (էջ 681), որպեսզի բոլորն ընդօրինակեն նրա փորձը, որպեսզի ժողովուրդը ճանաչի իր առաջավոր մարդկանց։

Ինչպես բոլոր հարցերում, այնպես էլ նորի, առաջավորի մասսայականացման գործում, Լենինը թերթերից պահանջում էր բարձր սկզբունքայնություն, հեռու մնալ ամեն տեսակ սենսացիայից և դատարկաբանությունից, որը միայն կարող է վնասել սոցիալիստական շինարարությանը։ «Ավելի քիչ քաղաքական ճոռոմաբանություն և ինտելիգենտական դատողություններ և «ավելի շատ ՄՏՈՒԳՈՒՄ այն բանի, թե որքան ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ է այդ նորը» (էջ 602)։

Սովետական մամուլի ուժը նրա սերտ կապն է կյանքի հետ։ Լենինը պահանջում էր մեր թերթերից՝ խորապես թափանցել ժողովրդի



կյանքի բոլոր ծալքերը, ետ չմնալ կյանքից, սոցիալիստական շինարարության պրակտիկայից, զգայուն կերպով ունկնդրել մասսաների պահանջներին։ Նա մամուլի գլխավոր խնդիրներից էր համարում նաև սոցիալիստական մրցության կազմակերպումը, նրա հրապարակայնության ապահովումը։ Սոցիալիստական մրցության մեջ Լենինը տեսավ միլիոնավոր մասսաների վերադաստիարակության այն հզոր միջոցը, որն ընդունակ է արմատապես փոխելու մարդկանց հոգեբանությունը, նրանց հասկացողություններն ու վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ։ Մենք նույնիսկ չենք կարողանում ներկայումս ճշտությամբ պատկերացնել, ասում էր Լենինը, թե ինչ հարուստ ուժեր են թաքնված դեռևս երեկ կապիտալիզմի կողմից ճնշված աշխատավորների մասսայի մեջ և որոնք սոցիալիստական կարգերում կարող են փթթել ու ծավալվել։ Սովետական մամուլը պարտիայի ղեկավարությամբ պատվով կատարեց լենինյան այդ պատգամը։ Քաղաքի և գյուղի միլիոնավոր աշխատավորների սոցիալիստական մրցության ծավալման, նրա բարձր ձևերի զարգացման գործում իրենց մեծ, պատվավոր բաժինն ունեն մեր թերթերը։ Սովետական մարդիկ ոգևորված պարտիայի XXI համագումարի պատմական որոշումներով՝ բարձրացնում են կոմունիստական մրցության դրոշը, որի վրա փայլփլում է «Աշխատենք և ապրենք կոմունիստաբար» նշանաբանը։

«Իսկական կոմունիզմի հասարակ, համեստ, առօրյա, բայց կենդանի ծիլերը» Վլադիմիր Իլյիչը տեսավ դեռևս քառասուն տարի առաջ, 1919 թվականին, առաջին կոմունիստական շաբաթօրյակների մեջ։ Դա սկիզբն է մի հեղաշրջման, գրել է Լենինը, որն ավելի վճռական նշանակություն ունի, քան բուրժուազիայի տապալումը։ Նա հավատում էր, որ ժողովրդական մասսաների կենդանի ստեղծագործությունը կկատարի իր պատմական մեծ գործը՝ մասսաները կստեղծեն նոր հասարակական կարգապահություն, նոր վերաբերմունք դեպի աշխատանքը և այն ժամանակ «կոմունիզմը կդառնա իրոք անպարտելի»։

«Լենինը մամուլի մասին» ժողովածուում զետեղված բազմաթիվ նյութեր ցույց են տալիս, թե ինչպես Լենինը ուշի-ուշով հետևում էր մամուլի գործունեությանը, նրա կողմից առաջ քաշված կարևոր պրոբլեմներին։ Թերթերը հարուստ նյութ էին տալիս շոշափելու, զգալու բանվորների և գյուղացիների տրամադրությունները, իմանալու թե ինչով է ապրում և շնչում աշխատավոր ժողովուրդը։ Թերթերում հրապարակված նամակների միջից Լենինը լսում էր ժողովրդական մասսաների ձայնը և համապատասխան հետևություններ անում պարտիայի քաղաքական գիծը ճշտելու համար։ Ինչպես հայտնի է, նոր տնտեսական քաղաքականության հիմունքները մշակելիս Լենինը հաշվի է առել այն առաջարկները, որ արել են գյուղացիները իր հետ ունեցած զրույցների ժամանակ, մամուլում հրապարակված բազմաթիվ նամակներում։ Վ. Կարպինսկուն գրած նամակում (1922 թ. հունվար) Լենինը խնդրում է նրան երկու ամիսը մեկ անգամ համառոտակի գրել, թե քանի նամակ կա գյուղացիներից «Բեդնոտա» թերթում, նշելով, թե առանձնապես ի՛նչ կարևոր, նոր բան կա այդ նամակներում, ի՛նչ տրամադրություններ են արտահայտում, ի՛նչ հարցեր են հուզում գյուղացիներին։

Լենինի այս բացառիկ հետաքրքրությունը բանգյուղթղթակիցների թղթակցությունների, աշխատավորների նամակների նկատմամբ բխում էր նրա հատուկ վերաբերմունքից դեպի մամուլը։ Թերթը ստեղծում են ոչ թե մի խումբ գրականագետներ և ժուռնալիստներ, այլ իրենք՝ աշխատավորները։ 1904 թվականին, բոլշևիկյան «Վպերյոդ» թերթի լույս ընծայման առթիվ Լենինը գրել է. «Ավելի լայն հնարավորություն տվեք բանվորներին գրելու մեր լրագրում, գրելու բացարձակապես ամեն բանի մասին, որքան կարելի է ավելի շատ գրելու իրենց առօրյա կյանքի մասին, շահերի ու աշխատանքի մասին — առանց այդ նյութի սոցիալ-դեմոկրատական լրագիրը մի գրոշ չի արժենա և նա արժանի չի լինի սոցիալ-դեմոկրատական կոչման» (էջ 268)։ Բազմաթիվ նամակներում, գրված պարտիայի՝ Ռուսաստանում աշխատող գործիչներին, Լենինը խնդրում, հորդորում է շարունակ, պահանջում նրանցից, որ ուղարկեն բանվորների թղթակցություններ, որովհետև առանց դրանց ռևոլյուցիոն պարտիայի օրգանը գոյություն ունենալ չի կարող։

Այսպիսով, բանգյուղթղթակիցների շարժման հիմքում, որն ուժգին ծավալվեց մեր երկրում հետագայում, սոցիալիստական շինարարության տարիներին, ընկած են լենինյան գաղափարները մամուլի մասսայականության մասին, այն, որ թերթերին պետք է ակտիվ աշխատակցեն սոցիալիզմի կառուցման անմիջական մասնակիցները։

Լենինը սովետական մամուլի կարևոր խնդիրը համարում էր պետական և տնտեսական աշխատանքում մեր թերությունների, սխալների բացահայտումն ու քննադատությունը։ Լենինը սովետական ժուռնալիստներին սովորեցրել է, որ այստեղ բանը վերաբերում է հնի տրադիցիաների, մնացուկների քննադատությանը, պետական կառավարման և սոցիալիստական շինարարության պրակտիկայում թույլ տրված

տարելագործումը։ Մեր կարծիքով, առաջին հընգամյա պլանի մշակման պատմությունը շարադրելիս հարկավոր էր նաև հանգամանորեն վերլուծել տրոցկիստների տնտեսական հայացքների հակալենինյան բնույթը։ Այնինչ հեղինակը բավարարվել է միայն առաջին հնգամյա պլանի մինիմալ և օպտիմալ վարիանտների նկատմամբ աջ կապիտուլյանտների «թեորիաների» քննադատությամբ։

Նույն գլխի հետագա էջերում քննված են երկրորդ հնգամյակի հիմնական խնդիրներն ու ժողովրդա-տնտեսական կարևորագույն պրոբլեմները, նրանց իրականացման համար ձեռնարկված կոնկրետ միջոցները։ Այստեղ հեղինակը կոնկրետ օրինակներով ցույց է տալիս, որ երկրորդ հնգամյա պլանն իր գիտական հիմնավորվածությամբ, արտադրողական ուժերի տեղաբաշխման սոցիալիստական սկզբունքների անշեղ կիրառմամբ, ցուցանիշների լայն սիստեմով և նրանց բալանսային հիմնավորվածությամբ նշանավորում էր նոր և ավելի բարձր էտապ ժողովրդական տնտեսության պլանավորման մեջ։ Գրքում առանձին-առանձին վերլուծվել են մեքենաների ու սարքավորումների, էլեկտրաէներգիայի, վառելիքի, բանվորական ուժի բալանսները, որոնք ո՛չ միայն ցույց են տալիս ժողովրդական տնտեսության պլանավորման զարգացումը, այլև այն համարձակ տեղաշարժերը, որոնք նախատեսվել են երկրորդ հնգամյա պլանում։ Աշխատության այս մասը հատուկ հետաքրքրություն է ներկայացնում և լրջորեն բարձրացնում է գրքի արժանիքը։ Ցանկալի կլիներ, եթե առնվազն այդ մի քանի կարևոր բալանսները բերվեին և վերլուծվեին նաև հետագայում։ Դա ցույց կտար պլանավորման բալանսային մեթոդի կատարելագործումը, այդ բալանսներում աստիճանաբար տեղի ունեցած կառուցվածքային փոփոխությունները։

Երրորդ գլուխը, որ կազմում է աշխատության մոտ կեսը, նվիրված է ժողովրդական տնտեսության պլանավորման զարգացմանը՝ սկսած երրորդ հնգամյակից մինչև մեր օրերը։ Փաստական նյութի հիման վրա նախ ցույց է տրված ժողովրդական տնտեսության, նրա առանձին ճյուղերի ու բնագավառների պրոպորցիոնալ զարգացումը և ապա դրան զուգընթաց պլանավորման գործի աստիճանաբար բարելավումն ու կատարելագործումը մեր երկրում։ Այստեղ իրավացիորեն մեծ տեղ է հատկացված պլանավորման զարգացման հարցերին, հատկապես 1953 թվականից հետո ընկած ժամանակաշրջանում։ Դա երկրի տնտեսական, քաղաքական, կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում բուռն իրադարձությունների, պլանավորման մեջ արմատական-որակական փոփոխություններ իրականացնելու ժամանակաշրջան էր։ Աշխատության մեջ հեղինակը հանգամանորեն քննարկել է գյուղատնտեսության պլանավորման նոր կարգը սահմանելու, արդյունաբերության և շինարարության կառավարումը վերակառուցելու, ժողտնտխորհներ ստեղծելու, ՄՏԿ-ները վերակազմավորելու, պլանային օրգանները վերակառուցելու և ամրապնդելու, տեղերի իրավունքներն ընդլայնելու ուղղությամբ իրականացված միջոցառումները, ցույց է տվել դրանց էությունն ու նշանակությունը։ Նա, այդ միջոցառումների հետ ունեցած ընդհանուր կապի մեջ էլ հենց, հաջող ձևով շարադրել է պլանավորման գործի բարելավումն ու կատարելագործումը վերջին տարիներին։

Բացի այն թերություններից, որոնք նշվեցին առանձին գլուխները բնութագրելիս, կարելի է նշել և ուրիշները։

Հեղինակը անհրաժեշտ չափով ուշադրություն չի դարձրել ժողովրդատնտեսական պլանների քանակական և որակական ցուցանիշների պլանավորման զարգացման վրա։ Մինչդեռ դա նպատակադրված հարցի կարևորագույն կողմերից մեկն է հանդիսանում։ Ոչ թե ժողովրդական տնտեսության, այլ բուն պլանավորման զարգացումը ենթադրում է ո՛չ միայն նրա ընդգրկող շրջանակների ընդարձակում, ո՛չ միայն դիրեկտիվ ու հաշվարկային ցուցանիշների թվաքանակի մեծացում և այլն, այլ նաև այդ ցուցանիշները պլանավորելու եղանակների ու մեթոդիկայի բարելավում ու կատարելագործում։ Եթե մեր պլանները գնալով դառնում են ավելի ռեալ, է՛լ ավելի գիտականորեն հիմնավորված ու ավելի մեծ ճշտությամբ են արտացոլում պլանաչափ պրոպորցիոնալ զարգացման օրենքի և սոցիալիզմի մյուս տնտեսական օրենքների պահանջները, ապա դա բացատրվում է նաև նրանով, որ նրանցում սահմանվող ցուցանիշները պլանավորվում են անվերջ ճշգրտվող գիտական մեթոդներով։ Դա նշանակում է, որ ժողովրդական տնտեսության պլանավորման զարգացումը ըստ էտապների շարադրելիս հեղինակը, միաժամանակ, պետք է ցույց տար գոնե մի քանի կարևորագույն ցուցանիշների (համախառն և ապրանքային արտադրանքի, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման) պլանավորման մեթոդիկայի զարգացումը։

Աշխատության կառուցվածքը, ինչպես սկզբից ասվեց, ճիշտ է։ Այն շարադրված է ըստ ՍՍՌՄ պլանավորման զարգացման երկու խոշոր ժամանակաշրջանների (մինչև սոցիալիզմի հաղթանակը և ապա նրանից հետո)։ Սակայն վատ չէր լինի, եթե որոշակիորեն թվարկվեին և սահմանազատվեին այդ երկու ժամանակաշրջանների ներսում եղած բոլոր էտապները, առանձին-առանձին տրվեր դրանց բնորոշումը։

Բավարար չափով տեղ չի հատկացված նաև պլանավորող օրգանների զարգացման պատմությանը։ Դրա կարևորության մասին երկու կարծիք լինել չի կարող, քանի որ խոսքը վերաբերում է սոցիալիստական պլանավորման կազմակերպական նախադրյալներին։ Անհրաժեշտ էր բերել, գոնե 1939 թվականին ժողկոմսովետի կողմից հաստատված ՍՍՌՄ Պետպլանի կառուցվածքի սխեման և ցույց տալ նրա մեջ հետագայում կատարված փոփոխությունների անհրաժեշտությունը՝ կապված սոցիալիստական շինարարության զարգացման հետ։

Աշխատության առանձին էջերում նկատվում են լեզվական, ոճական որոշ անհարթություններ, սխալներ (տես էջ՝ 19, 20, 28, 29, 31, 45, 62, 84—85, 107, 194—195 և այլն)։

Նշված թերություններով հանդերձ Հ. Թումանյանի գրքի օգտավետությունն ու նշանակությունը ո՛չ միայն տնտեսագիտական կադրերի ու բուհերի ուսանողության, այլև ընթերցող հասարակության համար անառարկելի է։ Դիտողությունների ձևով մեր ներկայացրած պահանջը, իհարկե, ավելին է, քան հեղինակի նպատակադրվածությունը։ Կարծում ենք, որ ներկա աշխատությամբ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության պլանավորման պատմությանը նվիրված գիրք ստեղծելու հիմքն արդեն դրվել է և մնում է այն շարունակել ու ավարտել։

Ա. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ



## ԷՋԵՐ ՀԱՅ-ՎՐԱՑԱԿԱՆ ԴԱՐԱՎՈՐ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԻՑ

Վ. Նալբանդյանի «Թբիլիսին հայ մատենագրության մեջ» ուսումնասիրությունը իր տեսակի մեջ միանգամայն ինքնատիպ և շատ կարևոր մի աշխատանք է։ Գրքի հեղինակը համարյա լիովին օգտագործել է միջնադարի այն բոլոր հայ տպագիր ու ձեռագիր աղբյուրները, որոնց մեջ տեղեկություններ են պահպանվել վրաց պանծալի մայրաքաղաքի՝ Թբիլիսիի մասին։ Բացի հայ աղբյուրներից, մեջ են բերված նաև վրաց և այլ պատմիչների հիշատակությունները։ Այսպիսով, ըստ էության, գրքի հեղինակը աշխատել է իր վերցրած թեման ավելի ամբողջական ձևով ներկայացնել ընթերցողներին։

Ուսումնասիրության մեջ փաստական նյութը ներկայացված է պատմականորեն և պատմության դեպքերի հետ կապակցված. հեղինակը Թբիլիսիի հիմնադրման օրից քայլ առ քայլ հետևում է ստեղծված պատմական իրադարձություններում քաղաքի աճող նշանակությունը թե՛ վրաց և թե՛ Անդրկովկասի եղբայրական մյուս ժողովուրդների կյանքում։ Բայց, իհարկե, ուսումնասիրության արժեքը միայն փաստական նյութի հարստության մեջ չէ։

Գրքում ամենից առաջ խոսվում է հայ-վրացական դարավոր բարեկամության մասին, որից ելնելով բացատրվում է այն իրողությունը, թե ինչու մեր հին մատենագիրները այնքան ջերմ են արտահայտվել Թբիլիսիի մասին և տարբեր առիթներով այնքան բազմաթիվ հիշատակություններ են թողել. «Երկու եղբայրական ժողովուրդների բարեկամության համար մի տեսակ խորհրդանշան է եղել Վրաստանի հինավուրց մայրաքաղաքը՝ Թբիլիսին։ Հազար ու մի հրաշալիքներով ու հմայքներով առլեցուն այդ քաղաքը, հիրավի, եղել է Անդրկովկասի ժողովուրդների եղբայրության բնօրրանը»,— գրում է հեղինակը։

Գիտական-բանասիրական տեսակետից մեծ հետաքրքրություն են ներկայացնում Թբիլիսիի հիմնադրման ժամանակի վերաբերյալ հայկական և վրացական աղբյուրների տվյալների քննական ուսումնասիրությունը և համադրումները, այլ խոսքով, հեղինակը իր եզրակացությունները բխեցնում է փաստերի մանրակրկիտ հետազոտությունից։ Թբլիսի քաղաքի անվան ծագման հարցում նա պաշտպանում և հիմնավորում է այն տեսակետը, որ այդ անունը առաջացել է տեղի տաք աղբյուրներից, որ Թբլիսին քաղաք է դարձել 5-րդ դարի վերջերին՝ վրացական Վախթանգ Գորգասալ թագավորի ժամանակ։

Թբլիսի քաղաքի անվան հիշատակությունը հին հայկական աղբյուրների մեջ հանդիպում է 7-րդ դարից սկսած։ Այդ դարի մատենագիրներից Թբիլիսիի մասին խոսում են Անանիա Շիրակացին, Սեբեոսը և Մովսես Կաղանկատվացին. վերջինիս գործածած էպիտետները («վաճառաշահ», «հռչակավոր մեծ քաղաքն Տփխիս» և այլն), ցույց են տալիս, որ քաղաքը դեռևս այն ժամանակ Անդրկովկասի հռչակ վայելող կենտրոններից մեկն էր։ Հետագայում 10-րդ դարի պատմիչ Ուխտանեսը հենց 6—7-րդ դարերի անցքերի մասին խոսելիս գրում է. «...հրաշաշեն և հրաշալի, հռչակավոր և ականավոր մեծ մայրաքաղաք Տփխիս»։ Ելնելով առատ փաստերից Նալբանդյանը նշում է պատմականորեն անչափ հետաքրքրական մի երևույթ. դժվար է մատնացույց անել Թբիլիսիի կյանքում պատահած քիչ թե շատ կարևոր մի դեպք, ասում է նա, որ այս կամ այն կերպ իր արձագանքը գտած չլինի հայ մատենագրության

երկրում։ Եվ դա հասկանալի է. հնօրյա, հազար ու մի հմայքներով լեցուն Թբիլիսին իր ողջ պատմության ընթացքում եղել է Անդրկովկասյան ժողովուրդների անկաշառ բարեկամության և եղբայրության բնօրրանն ու խորհրդանշանը։

Պատմական հանգամանքների բերումով Թբիլիսին՝ վրաց երկրի մայրաքաղաքը, ժամանակի ընթացքում դառնում է հարազատ քաղաք նաև հայերի համար, որոշ շրջաններում հանդիսանալով հայ հասարակական-քաղաքական և կուլտուրական կյանքի կարևոր օջախներից մեկը։ Դարեր շարունակ, գրում է Վ. Նալբանդյանը, այս հյուրընկալ քաղաքում հայը առատորեն օգտվել է վրացու սրտաբաց հյուրընկալությունից և փոխարենը հատուցել նրան իր անկեղծ ու անկաշառ բարեկամությամբ։ Եվ միանգամայն պարզ է, թե ինչու Թբիլիսիին հասած դժբախտությունները ու արհավիրքները այնքան խորն են խոցել ո՛չ միայն վրացու, այլև հայի սիրտը և, ընդհակառակը, վրաց մայրաքաղաքի ամեն մի հաջողություն բերկրանքով է լցրել ո՛չ միայն վրացու, այլև նրա հարևան հայի սիրտը։

Հայ պատմիչների թողած տեղեկությունները որոշակի գաղափար են տալիս վրաց մայրաքաղաքի հնության և հարստության մասին։ Թբիլիսիի պատմության ուսումնասիրության համար առանձնապես արժեքավոր են հայ գրական հուշարձանների պահպանած այն տեղեկությունները, որոնք վերաբերում են արաբական տիրապետության շրջանին։

Արաբական տիրապետության դեմ ժողովրդական ապստամբությունները Անդրկովկասում, առանձնապես 9-րդ դարի կեսերին, մեծ ծավալ ստացան։ Այդ հուժկու ապստամբությունները, սկսվելով Հայաստանում, շուտով տարածվեցին Վրաստանում և հարևան երկրներում։

Խալիֆաթի դեմ ուղղված ազատագրական պայքարի մեջ աչքի ընկնող դեր է կատարել Թբիլիսին։ Օգտվելով խալիֆաթի կենտրոնական իշխանության որոշ թուլացումից, 9-րդ դարի սկիզբներից սկսած, ծայրամասային երկրների էմիրները սկսեցին չենթարկվել խալիֆաթի իշխանությանը և վարում էին անկախանալու քաղաքականություն։ Այդպես վարվեցին նաև Թբիլիսիի էմիրները։ Թբիլիսիի էմիրության անկախ վիճակը առանձնապես ցայտուն արտահայտվեց Սահակ էմիրի ժամանակ, որը մոտ 15 տարի բոլորովին չէր ճանաչում խալիֆաթի իշխանությունը։ Մութաքքիլ խալիֆը հանդուրժելով այս վիճակը՝ Սահակին պատժելու ու Քարթլիի անկախությանը վերջ տալու համար Վրաստան է ուղարկում խալիֆաթի դեմ Հայաստանում ծագած Սասունի ապստամբությունը խեղդող դահճին՝ Բուղային, մեծ բանակով, որի մեջ ըստ Թովմա Արծրունու, 20.000 զինվոր էր հաշվվում։ Բուղան շարժվում է դեպի Վրաստան և 853 թվականի օգոստոսի 5-ին գրավում Թբիլիսին։ Այդ աղետի մասին մանրամասնություններ են պատմում հայկական մատենագրական աղբյուրները, մասնավորապես, ժամանակակից Թովմա Արծրունին։ Թբիլիսին գրավելու առթիվ Վ. Նալբանդյանը ուշադրություն է առնում այդ դեպքերի ժամանակակից արաբ պատմիչ Տաբարիի մի վկայությունը, ըստ որի Բուղայի բանակի դեմ վրաց մայրաքաղաքի պաշտպանների թվում կռվել են նաև քաջարի խութեցիները՝ սասունցի հայերը, որոնք հանդիսանում էին արաբական խալիֆաթի դեմ 851—852 թվականի ձմռանը Սասունում ծագած ժողովրդական ապստամբության ոգին։ Ենթադրվում է, որ հետագայում Սասունի ճնշված ապստամբության մասնակիցները խույս տալով Բուղայի հետապնդումներից, եկել են Վրաստան և ապաստան գտել Թբիլիսիում՝ արաբական խալիֆաթից իրեն անկախ հայտարարած Սահակի էմիրության մեջ, իսկ որոշ ժամանակ անց մասնակցել Թբիլիսիի պաշտպանությանը՝ նույն Բուղայի հրոսակների դեմ։ Գրքի հեղինակը հավանական է համարում մի այլ ենթադրություն ևս, այն, որ լսելով Յուսուֆի դեմ կռվող խութեցիների քաջության մասին, թերևս ինքը՝ Թբիլիսիի Սահակ էմիրն է խութեցիներին կանչել ու բերել Թբիլիսի՝ նրանց ուժը Բուղայի սպասվող հարձակման դեմ օգտագործելու նպատակով։

Նույնիսկ արաբական տիրապետության ծանր շրջանում, ինչպես երևում է մատենագրական աղբյուրների վկայություններից, Թբիլիսին էական նշանակություն է ունեցել Անդրկովկասի երկրների տնտեսական կյանքում։ Ուշագրավ է, որ 10-րդ դարում Անդրկովկասի առևտրի նշանավոր կենտրոններից մեկի՝ Դվինի հինգ դարպասներից մեկը կոչվել է Բաբ-Թիֆլիս (Թբիլիսիի դարպաս)։

Գրքի հեղինակը առանձնապես հետաքրքրական ու արժեքավոր վկայություններ է բերում Դավիթ Շինարարի ձեռքով Թբիլիսին չորսհարյուրամյա գերությունից ազատագրելու վերաբերյալ։ Հայկական աղբյուրները պատմում են, որ սելջուկները ամեն ջանք գործ էին դնում Թբիլիսին իրենց ձեռքը պահելու համար. սակայն անհնար էր վրացիների վճիռը — ինչ գնով էլ լինի, ազատագրել մայրաքաղաքը և նրա շրջակայքը օտար լծից, որով փաստորեն պետք է ավարտվեր երկրի միավորման գործը։

Մատենագրական աղբյուրները ցույց են տալիս, ավելին է գրքում, որ Դավիթ Շինարարի ժամանակից սկսած Թբիլիսիի կյանքում նշանակալից մասնակցություն են ունենում Վրաստան գաղթած հայերը։ Մեծ հետաքրքրություն են ներկայացնում նաև հայ գրական հուշարձանների այն տեղեկությունները, որոնք վերաբերում են խորեզմցիների արշավանքների ու մոնղոլների դաժան տիրապետության շրջանի Թբիլիսիի կյանքին։



Առանձնապես հարուստ ու հետաքրքրական են Կիրակոս Գանձակեցու, որը ականատես էր մոնղոլների ներխուժման դեպքերին, հաղորդած տեղեկությունները։ Նա հիացական խոսքերով է նկարագրում վրաց ժողովրդի հերոսական պայքարը՝ ընդդեմ մոնղոլական հորդաների։ Ուշագրավ է, որ նույնիսկ մոնղոլական հարյուրամյա տիրապետությունը անզոր եղավ Թբիլիսին ոտնատակ անելու. Թբիլիսին դարձյալ հայ մատենագիրների համար մնում է որպես «Մեծ քաղաք Տփխիս»։

18-րդ դարի առաջին կեսին Վրաստանում լայնորեն զարգանում է կուլտուրան, որի մեջ վճռական դեր է խաղում Թբիլիսին։ Վախտանգ թագավորը հովանավորում է հոգևոր կուլտուրային նվիրված մարդկանց, այդ թվում և հայ գրողներին, նրանց տալով ստեղծագործելու հնարավորություններ։ Հայտնի է, օրինակ, որ հայ նշանավոր բանաստեղծ ու նկարիչ Նաղաշ Հովնաթանին Շոռոթ ավանից Թբիլիսի, իր պալատն է հրավիրում Վախտանգը, նրան դարձնելով պալատական երգիչ ու նկարիչ։

Միանգամայն խրախուսելի է այն, որ գրքում հեղինակը աշխատում է նաև վեր հանել Թբիլիսիի նշանակությունը երկրի տնտեսական կյանքի ու սոցիալական հարաբերությունների զարգացման բնագավառում։ Այստեղ, թերևս, իբրև թերություն պետք է նշել այն հանգամանքը, որ այդ կապակցությամբ հեղինակի բերած փաստերը և արած դիտողությունները անհամեմատ քիչ են, եթե նկատի չառնենք այն իրողությունը, որ միջնադարյան հայ աղբյուրները շատ ժլատ են այդ կարգի տեղեկությունների մեջ։ Այնուամենայնիվ մենք խորհուրդ կտայինք հեղինակին իր վերցրած շնորհակալ թեմայի վրա շարունակել իր աշխատանքները և նոր պրպտումներ կատարել նշված ուղղությամբ նյութեր հայտաբերելու իմաստով։ Գրքի մասնակի թերություններից է այն, որ Թբիլիսիի հետ անմիջապես չառնչվող պատմական իրադարձությունները տեղ-տեղ նկարագրված են պահանջվող չափից ավելի մանրամասն։

Վերջում՝ նորից անդրադառնալով «Թբիլիսին հայ մատենագրության մեջ» աշխատության արժանիքներին՝ առանձնապես պիտի նշել ուսումնասիրության քաղաքական հագեցվածությունը և շարադրանքի կենդանի ոճը։ Գրքի հեղինակն ունեցել է իր որոշակի նպատակը, այն է՝ իր աշխատությամբ օգտակար լինել ընթերցողների ինտերնացիոնալ դաստիարակության գործին։ Մենք կարծում ենք, որ լավ կլիներ Վ. Նալբանդյանի ուսումնասիրությունը հրատարակել նաև ռուսերեն լեզվով։

Մ. ՄԿՐՅԱՆ

## ՉԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ

Ապրիլի 2—5-ը տեղի ունեցած Չինաստանի Կոմունիստական պարտիայի Կենտկոմի ութերորդ գումարման VII պլենումը քննարկեց և հաստատեց ՉԺՌ-ի ժողովրդական տնտեսության 1959 թվականի պլանի նախագիծը: Այնուհետև ժողովրդական ներկայացուցիչների համաչինական ժողովի երկրորդ գումարման առաջին սեսիայում օրենք ընդունվեց 1959 թվականի ժողովրդական տնտեսության զարգացման մասին: Պլանով նախատեսվում է, որ ՉԺՌ-ն այս տարի կարտադրի 18 միլիոն տոննա պողպատ (1958 թվականին՝ 10.7 մլն. տոննա), 380 մլն. տոննա քարածուխ (1958 թվականին՝ 270,2 միլիոն տոննա), 23 միլիոն տոննա չուգուն (1958 թվականին՝ 13,69 միլիոն տոննա), կարտադրվի 40 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա (1958 թվականին՝ 27,5 միլիարդ կիլովատ-ժամ), 12,5 միլիոն տոննա ցեմենտ (1958 թվականին՝ 9,3 միլիոն տոննա): Ըստ պլանի, այս տարի կրոմիլիոն տոննա): Ըստ պլանի, այս տարի կրողարկվի 70—75 հազար մետաղահատ հաստոց (չհաշված հասարակ տիպի հաստոցները), այսինքն 40—50 տոկոսով ավելի, քան 1958 թվականին: Այնուհետև նախատեսվում է այս տարի հավաքել 1.050 միլիարդ ցզին հացահատիկ (525 միլիոն տոննա) և 100 միլիոն դան բամբակ (5 միլիոն տոննա), որն աննախընթաց է Չինաստանի ամբողջ պատմության մեջ: Խոշոր եղջերավոր անասունների թիվը կհասնի 90 միլիարդ գլխի, խոզերի գլխաքանակը կկազմի մինչև 280 միլիոն գլուխ, այսինքն 56 տոկոսով կգերազանցի 1958 թվականի մակարդակը:

Արդյունաբերության և գյուղատնտեսության համախառն արտադրանքը 1959 թվականին կկազմի 287 միլիարդ յուան, այսինքն 40 տոկոսով ավելի, քան 1958 թվականին:

Գյուղատնտեսության և ծանր արդյունաբերության մեջ մեծ թռիչքի շնորհիվ արագ թափով կզարգանա թեթև արդյունաբերությունը: Բամբակյա գործվածքների, թղթի, բուսական յուղերի, շաքարի և աղի արտադրության աճը, 1958 թվականի համեմատությամբ, կկազմի 25—67 տոկոս:

Այս տարի բարձրագույն ուսումնական հաստատությունների ուսանողների թիվը կհասնի 830 հազար մարդու, այսինքն 1958 թվականի համեմատությամբ կաճի 25,8 տոկոսով, միջին հատուկ ուսումնական հաստատություններում սովորողների թիվը՝ 1.820 հազար մարդու, այսինքն նախորդ տարվա համեմատությամբ 23,8 տոկոսով ավելի, երկրորդ աստիճանի դպրոցներում սովորողների թիվը կավելանա 28,8 տոկոսով և կկազմի 1.520 հազար մարդ: Հետագա զարգացում կստանան կուլտուրան, գիտությունը, առողջապահությունը և ֆիզկուլտուրան:

1959 թվականին է՛լ ավելի կծավալվի Սովետական Միության և եղբայրական մյուս սոցիալիստական երկրների օգնությունը Չինաստանին: ՍՍՌՄ-ի օգնությամբ կառուցվող 166 արդյունաբերական օբյեկտներից արդեն լրիվին կամ մասամբ կառուցվել և շահագործման են հանձնվել 113 օբյեկտ: Այս տարվանից Սովետական Միությունը, բացի վերոհիշյալ օբյեկտներից, ՉԺՌ-ին կօգնի ևս 125 օբյեկտներ կառուցելու գործում:

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի տնտեսության զարգացման 1959 թվականի պլանի հաջող իրագործումը մի նոր նշանակալից քայլ կլինի սոցիալիզմի կառուցման ուղղությամբ:

## ՉԵԽՈՍԼՈՎԱԿՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ

Չեխոսլովակիայի Կոմունիստական պարտիայի պատմության ինստիտուտը պատրաստում է և 1959 թվականի վերջին լույս կընծայի պարտիայի պատմության դասագիրքը: Դա առաջին գիրքն է, ուր մարքսիստական-լենինյան դիրքերից շարադրվում է Չեխոսլովակիայում կոմունիստական շարժման պատմությունը՝ սկսած նրա սաղմնավորումից մինչև մեր օրերը:

Դասագրքի ստեղծման աշխատանքներին մասնակցում են գրեթե բոլոր պարտիական կազմակերպությունները: Չեխոսլովակիայի Կոմպարտիայի Կենտկոմը առավել աչքի ընկնող պատմաբաններից ու պարտիական գործիչներից կազմել է խմբագրական կոլեգիա, որի վրա դրվել է դասագրքի հրատարակման գործի ամբողջ ղեկավարությունը: Աշխատության պլանը հանգամանորեն մշակելուց հետո, մոտ հարյուր պատմաբաններ շարադրեցին դասագրքի թեզիսները, ուր լուսաբանված են պարտիայի զարգացման յուրաքանչյուր ժամանակաշրջանի պատմական ու տեսական հիմնական պրոբլեմները: Այդ թեզիսները, որոնք անցյալ տարի հրապարակվեցին



որպես ապագա դասագրքի ծրագիր ու ժամանակավոր ուսումնական ձեռնարկ, ենթարկվեցին համաժողովրդական քննարկման: Այժմ Կենտկոմի հաստատած հեղինակային կոլեկտիվը, հաշվի առնելով քննարկման արդյունքները, ձեռնամուխ է եղել դասագրքի շարադրմանը:

***

Վերջին տասը տարում (1948—1958 թթ.), նախապատերազմյան տարիների համեմատությամբ, ավելի քան երեք անգամ ավելացել է ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության արտադրանքը: Ներկայումս արհեստական մանրաթելի արտադրությամբ Չեխոսլովակիան աշխարհում գրավում է VI տեղը. բնակչության մեկ շնչին ընկնող մի շարք նյութերի արտադրությամբ, ինչպիսիք են՝ ծծմբաթթուն, նատրի հիդրօքսիդը, ազոտային պարարտանյութերը, կարբիդ կալցին, Չեխոսլովակիան անցել է Ֆրանսիայից ու Իտալիայից:

Քիմիական արդյունաբերության հետագա հուժկու զարգացման նպատակով Չեխոսլովակիայի Կոմպարտիայի XI համագումարը մշակեց լայն ծրագիր. քիմիական արդյունաբերության արտադրության ծավալը 1965 թվականին կավելանա 2,5 անգամ, ընդ որում գլխավոր ուշադրությունը դարձվելու է սինթետիկ կաուչուկի և սինթետիկ նոր նյութերի արտադրության ավելացման վրա: Սոցիալիստական երկրների, մասնավորապես Սովետական Միության և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի օգնությամբ կառուցվելու են նոր գործարաններ, ընդլայնվելու են արդյունաբերական մի շարք ձեռնարկություններ: Նախատեսված է 1965 թվականին ազոտային պարարտանյութերի արտադրությունն ավելացնել չորս անգամ, իսկ պլաստմասսաներինը՝ հինգ անգամ. այդ նույն տարում արտադրվելու է 90—95 հազար տոննա արհեստական մանրաթել:

## ԲՈՒԼՂԱՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ

Այժմ Բուլղարիայում հաջողությամբ իրագործվում է պետական ապարատի և տնտեսական կառավարման վերակազմում, որը նոր, ավելի բարձր էտապ է նշանավորում ռեսպուբլիկայի սոցիալիստական հասարակական և պետական կարգի զարգացման մեջ: Վերակազմման հիմնական սկզբունքը դեմոկրատական ցենտրալիզմն է: Պետական ապարատի և ժողովրդական տնտեսության կազմակերպման նոր ստրուկտուրան նպատակ ունի ավելի պարզեցնել, հեշտացնել և էժանացնել կառավարման ապարատը:

Վերակազմվում և վերացվում են պետական և տնտեսական ղեկավարության սխտեմում բոլոր միջանկյալ օղակները: Նախկին օկոլիաների և օկրուգների փոխարեն ստեղծվում են 30 ագրոինդուստրիալ-տնտեսական միավորներ՝ օկրուգներ, որոնք տվյալ տերիտորիայում քաղաքական, պետական, տնտեսական և կուլտուրական կյանքի միջնակետն են: Օկրուգներում պետական և տնտեսական ղեկավարությունը իրականացնելու են օկրուգային ժողովրդական խորհուրդները:

Վերոհիշյալ սկզբունքների հիման վրա ստեղծվում է ժողովրդական տնտեսության նոր կազմակերպություն: Գյուղատնտեսության բնագավառում ագրոինդուստրիալ-տնտեսական օկրուգի հիմնական արտադրական-տնտեսական միավորը աշխատանքային կոոպերատիվ հողագործական տնտեսությունն է:

Արդյունաբերության բնագավառում ագրոինդուստրիալ-տնտեսական օկրուգի տերիտորիայի վրա հիմնական արտադրական միավորը արդյունաբերական ձեռնարկությունն է, որին անմիջականորեն ղեկավարում է օկրուգային ժողովրդական խորհուրդը: Ընդ որում ձեռնարկության դիրեկտորի իրավունքները չեն նեղացվում, այլ, ընդհակառակը, ընդլայնվում են: Ռեսպուբլիկայի պետական և տնտեսական նոր կառուցվածքը չի նվազեցնում պետական իշխանության կենտրոնական օրգանի՝ Մինիստրների Խորհրդի դերը: Կառավարման նոր կարգը կնպաստի պետության և ժողովրդական տնտեսության կառավարման գործում ժողովրդական զանգվածների լայն մասնակցությունը, ժողովրդի սոցիալիստական գիտակցականության բարձրացմանը, բարոյա-քաղաքական միասնությանը:

Բուլղարական պետության և ժողովրդական տնտեսության կառավարման վերակազմումը վկայում է երկրի կոնկրետ տնտեսական, հասարակական և կուլտուրական պայմաններում մարքսիստական-լենինյան սկզբունքները ստեղծագործաբար կիրառելու մասին: Ժողովրդական տնտեսության կառավարման բնագավառում հաշվի է առնվել ՍՍՌՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների փորձը, ինչպես նաև Բուլղարիայի յուրահատկությունները:

## ԼԵՀԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ

Ներկայումս ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի մակարդակը համարյա թե հինգ անգամ բարձր է, քան 1938 թվականին: Լեհական Միացյալ Բանվորական պարտիայի III համագումարի հաստատած ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների դիրեկտիվները նոր փայլուն հեռանկարներ են բացում Լեհաստանի տնտեսության զարգացման ու ամրապնդման գործում: Առաջիկա յոթ տարիների ընթացքում արդյունաբերության արտադրանքը 1938 թվականի մակարդակը կգերազանցի տասն անգամ: Արդյունաբերության արտադրանքի հիմնական տեսակների արտադրությունը 1965 թվականին կլինի.

| | Չափի միավորը | 1958 թ. | 1965 թ. |
|---|---|---|---|
| *Քարածուխ* | *միլիոն տոննա* | 95 | 112—113 |
| *Էլեկտրաէներգիա* | *միլիարդ կիլովատտ-ժամ* | 23,9 | 43,5—45 |
| *Պողպատ* | *միլիոն տոննա* | 5,6 | 9 |
| *Բեռնատար ավտոմեքենա* | *հազար հատ* | 10,1 | 35 |
| *Գյուղմեքենաների արտադրություն* | *միլիոն զլոտի* | 1269 | 2200 |
| *Ծովային նավեր* | *հազար դեդվեյտ տոննա* | 174,8 | 450 |
| *Ազոտային պարարտանյութեր* | *հազար տոննա* | 227,5 | 480 |
| *Սինթետիկ կաուչուկ* | *հազար տոննա* | — | 50 |
| *Արհեստական մանրաթել* | *հազար տոննա* | 66,3 | 113,8 |
| *Բամբակյա գործվածքներ* | *միլիոն մետր* | 598,4 | 790 |
| *Բրդյա գործվածքներ* | *միլիոն մետր* | 78,3 | 101 |
| *Կաշվե կոշիկ* | *միլիոն զույգ* | 34,1 | 48 |
| *Ռադիոընդունիչներ* | *հազար հատ* | 789,5 | 1100 |
| *Հեռուստացույցներ* | *հազար հատ* | 57,1 | 440 |

## ՌՈՒՄԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ

1958 թվականին ՌԺՌ-ն զգալի հաջողությունների հասավ տնտեսության զարգացման և ժողովրդի նյութական ու կուլտուրական բարեկեցության բարձրացման գործում: Ընդհանուր առմամբ ռեսպուբլիկայի սոցիալիստական արդյունաբերության համախառն արտադրանքի պլանը կատարվեց 103,9 տոկոսով: 1957 թվականի համեմատությամբ արդյունաբերության համախառն արտադրանքն աճեց 9,7 տոկոսով, ընդ որում արտադրության միջոցների արտադրանքը՝ 10,1 տոկոսով, սպառման առարկաների արտադրանքը՝ 9,1 տոկոսով: 1957 թվականի համեմատությամբ աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 5,3 տոկոսով: Ամրապնդվեց գյուղատնտեսության սոցիալիստական սեկտորի նյութա-տեխնիկական բազան: Գյուղատնտեսությունը ստացավ ևս 8,700 տրակտոր (15 ձիաուժի հաշվով), 5.820 կոմբայն և գյուղատնտեսական այլ մեքենաներ և սարքավորում: 1958 թվականին հացահատիկի արտադրությունը կազմեց 7,3 միլիոն տոննա, իսկ խաղողի բերքը՝ 45 տոկոսով և մրգերինը՝ 43 տոկոսով գերազանցեց վերջին հինգ տարիներին խաղողի և մրգերի արտադրանքի միջին մակարդակը:

1958 թվականին երկրի աշխատավորները ստացան 13.500 բնակարան՝ 950 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ: 1958 թվականին Ռումինիայի աշխատավորների ձեռք բերած նվաճումները շատ կարևոր նախադրյալներ են սոցիալիզմի կառուցման ուղղությամբ հետագա հաղթանակների համար:

## ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ

Աշխարհի գեղեցիկ ու մեծ քաղաքներից մեկը՝ Բեռլինը, երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում ավերվեց. հիմնահատակ եղավ հատկապես նրա կենտրոնական մասը: Այժմ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի մայրաքաղաք Բեռլինը հառնում է ավերակներից ու մոխրակույտերից: Ոչ միայն վերականգնվում, այլև կառուցվում է գերմանական ժողովրդի նոր մայրաքաղաքը: Ծրագրված է, մինչև 1965 թվականը հիմնականում ավարտել Բեռլինի կենտրոնական մասի վերականգնման աշխատանքները, նրա ճարտարապետական ձևավորումը:



Մայրաքաղաքի ամենագեղեցիկ փողոցը՝ Ստալինի ալեան, կշարունակվի մինչև Բեռլինի ամենահայտնի վայրը՝ Ալեքսանդերպլացը: Անցյալում այստեղ շատ խիտ էր բնակչությունը, ամեն մի հեկտարի վրա ապրում էր մինչև 1.400 մարդ: Շուտով կկառուցվի երկու բլոկով նոր թաղամաս՝ 5.256 ընդարձակ ու լուսավոր բնակարաններով. դրա շնորհիվ յուրաքանչյուր հեկտարի վրա կապրի 535 մարդ: Այդ փողոցն ունենալու է իր մեծ գրոսայգին, ռեստորանը, հյուրանոցը, թատրոնը և այլն: Ամեն մի բնակելի թաղամաս կունենա իր առևտրական կենտրոնը, կստեղծվեն կուլտուրական, կոմունալ-կենցաղային օբյեկտներ և այլն:

Ստալինի ալեան հարմոնիկ կերպով անցում է կատարելու դեպի բեռլինյան «մագիստրալը», այն փողոցը, ուր բարձրանում է Բեռլինի ռատուշի մեծ կարմիր շենքը: Մեծ աշխատանքներ են կատարվելու Ունտեր Դեն Լինդեն փողոցում, լիովին կվերականգնվի Ֆրիդրիխշտրասեն: Մայրաքաղաքի հենց ամենակենտրոնական մասի ճարտարապետական ձևավորումը պետք է համապատասխանի սոցիալիզմի հաղթական իդեաներին:

## ԿՈՐԵԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ

Ռեսպուբլիկայում 1958 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, պետական և կոոպերատիվ արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացավ 40 տոկոսով, 1956 թվականի համեմատությամբ՝ 2 անգամ, իսկ 1949 թվականի համեմատությամբ՝ 4 անգամ:

1958 թվականի երկրորդ կեսին երկրի բոլոր շրջաններում կառուցվեց ավելի քան 1.060 տեղական արդյունաբերական ձեռնարկություն:

1958 թվականին կորեական արդյունաբերությունն առաջին անգամ յուրացրեց տրակտորների, էքսկավատորների, բեռնատար ավտոմեքենաների, բուլդոզերների, դիզելային շարժիչների, ավտոմատ տեքստիլ դազգահների, ունիվերսալ ֆրեզերային դազգահների, գրամեքենաների և արտադրանքի շատ այլ տեսակների արտադրությունը:

Չնայած ուժեղ երաշտին, անցյալ տարի հացահատիկի համախառն բերքի պլանը կատարվեց 112 տոկոսով և հավաքվեց 3 միլիոն 700 հազար տոննա հացահատիկ: Մսի արտադրությունն ավելացավ 2 անգամ, կաթինը՝ 2,7 անգամ, ոչխարի բրդինը՝ 11 տոկոսով: Բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը 1958 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, ավելացավ 13 տոկոսով: Զգալի չափով մեծացան նաև գյուղացիների եկամուտները: 1958 թվականին բանվորները և ծառայողները ստացան 2 միլիոն 240 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն:

1958 թվականի նոյեմբերի մեկից լիովին իրականացվել է համընդհանուր պարտադիր ոչ լրիվ միջնակարգ կրթությունը և հաջողությամբ նախապատրաստական աշխատանք է տարվում պարտադիր համընդհանուր տեխնիկական ուսուցում կիրառելու ուղղությամբ: 1957 թվականի համեմատությամբ, 1958 թվականին բժշկական ստացիոնար հիմնարկությունների թիվն ավելացավ 27-ով, իսկ հիվանդանոցային մահճակալների թիվը՝ ավելի քան 3 հազարով:

Բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակներով Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկան ընթացիկ տարում կհասնի Ճապոնիային: Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում սոցիալիստական արտադրական հարաբերությունների հաղթանակի և արտադրողական ուժերի բուռն զարգացման շնորհիվ, հնարավորություն է ստեղծվել երկրում մոտակա տարիներում ավարտել սոցիալիզմի կառուցումը:

## ԱԼԲԱՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ

Մեծ զարգացում է ապրում ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը: Խոշոր գործ է կատարվում հողագործության մեքենայացման, ոռոգման և գյուղատնտեսական կադրերի պատրաստման ուղղությամբ: Տարեցտարի ավելանում է հացահատիկային կուլտուրաների արտադրությունը. ներկայումս մշակելի բոլոր հողերի ավելի քան 75 տոկոսը գտնվում է գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվների ձեռքում:

Գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերված հաջողությունների հիման վրա Ալբանիայի Աշխատանքի պարտիայի Կենտկոմի պլենումը որոշել է մոտակա տարիներին խոշոր չափով երկրում ավելացնել կաթի և մսի արտադրությունը: Այսպես, 1957 թվականի համեմատությամբ, 1965 թվականին մսի արտադրությունը կավելանա 2,3, իսկ կաթինը՝ 2,4 անգամ: Դա հնարավորություն կտա լիովին բավարարել բնակչության աճող պահանջմունքները կաթով ու մսով: Եթե 1957 թվականին բնակչության մեկ շնչին ընկնում էր 12 կիլոգրամ սպանդանոցային քաշով միս, ապա 1965 թվականին այն կկազմի 24 կիլոգրամ, այդ նույն ժամանակաշրջանում կաթի սպառումը 95 կիլոգրամից կհասնի 194 կիլոգրամի:

Շրջկոմի բյուրոն հանձնարարեց սկզբնական պարտիական կազմակերպություններին և կոլտնտեսությունների վարչություններին, սովետական տնտեսությունների դիրեկտորներին՝ ապահովել առաջավորների փորձի ուսումնասիրումն ու տարածումը։

Շրջսովետի գյուղտեսչությանը և ՆՏ կայանին հանձնարարված է առանձնացնել Կոշի և Ուջանի կոլտնտեսություններում որոշակի տարածություն և կազմակերպել եգիպտացորենի ցանք քառակուսի-բնային եղանակով։

Հանձնարարված է կոլտնտեսությունների, սովետական տնտեսությունների սկզբնական պարտկազմակերպություններին ու շրջսովետի գյուղտեսչությանը՝ կազմակերպել առաջավոր կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների փորձի փոխանակություն։

## ՇՐՋԿՈՄԻ ՀՐԱՀԱՆԳԻՉՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅՈՒՆ

Վերջերս կայացավ պարտիայի Ալավերդու շրջկոմի հաստիքային և արտահաստիքային հրահանգիչների համատեղ խորհրդակցություն։ Խորհրդակցությունում հանրագումարի բերվեցին շրջանային կոմիտեի աշխատանքն առանց բաժինների և արտահաստիքային հրահանգիչների աշխատանքի առաջին ամիսների փորձը։

Խորհրդակցությունում նշվեց, որ շրջկոմի ապարատի վերակառուցումից հետո հրահանգիչների օգնությունը պարտիական սկզբնական կազմակերպություններին դարձել է ավելի կոնկրետ։ Սակայն կան նաև թերություններ։ Շրջկոմի հաստիքային հրահանգիչ ընկ. Մ. Սիմոնյանը իր ելույթում ասաց, որ շրջկոմի աշխատողները և, հատկապես, հրահանգիչները հիմնականում զբաղվում են տնտեսական հարցերով։ Քաղաքական-դաստիարակչական, ագիտացիոն-մասսայական աշխատանքի հարցերը առանձին դեպքերում դրեթե աչքաթող են արվ[ում]։

Հրահանգիչ Գ. Թամազյանն ասաց, որ ապարատի վերակառուցումը հնարավորություն տվեց վերացնելու միջանկյալ օղակը՝ բաժինը։ Նախկինում հրահանգչի նախապատրաստա[ծ] այս կամ այն հարցի մասին շրջկոմի բյուրոյում զեկուցում էր բաժնի վարիչը, իսկ այժմ ինքը՝ հարց նախապատրաստողը։ Դա մեծ չափով նպաստում է հարցերի ավելի ճիշտ լուծմանը և հրահանգիչների դերի բարձրացմանը։

Խորհրդակցությունում խոսվեց նաև արտահաստիքային հրահանգիչների աշխատանքի մասին։ Շրջկոմն ունի 17 արտահաստիքային հրահանգիչ. հրահանգիչների աշխատանքն ավելի արդյունավետ դարձնելու համար որոշվեց նրանց սիստեմատիկաբար իրազեկ դարձնել շրջկոմի և վերադաս օրգանների որոշումներին, հրավիրել համատեղ խորհրդակցություններ, սեմինարներ և ձեռնարկել այլ կոնկրետ միջոցառումներ։

---


Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04 66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր),
ԱՌԱՔԵԼՅԱՆ Ս. Վ., ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Գ. Ա., ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ Գ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.:

ՎՖ 04053 Պատվեր 1021 Տիրաժ 9450
Տպ. 8 մամուլ, մամուլում 68,840 նիշ: Ստորագրված է տպագրության 23/V 1959 թ.։




ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։

Գինը 2 ռ. 50 կ.